ՊՐՈԼԵՏԱՐՆԵՐ ԲՈԼՈՐ ԵՐԿՐՆԵՐԻ, ՄԻԱՑԵ՛Ք

# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

ՀԿՊ ԿԵՆՏԿՈՄԻ ԱՄՍԱԳԻՐ

6

ՀՈՒՆԻՍ

ԵՐԵՎԱՆ 1957

ՊՐՈԼԵՏԱՐՆԵՐ ԲՈԼՈՐ ԵՐԿՐՆԵՐԻ, ՄԻԱՑԵ՛Ք

# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

№ 6
ՀՈՒՆԻՍ
1957 Թ.

★

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ՊԱՐՏԻԱՅԻ ԿԵՆՏԿՈՄԻ
ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

ЛЕНИНЯН УГИОВ — ТЕОРЕТИЧЕСКИЙ И
ПОЛИТИЧЕСКИЙ ЖУРНАЛ ЦК КП АРМЕНИИ

ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅԱՆ
XXXIV
ՏԱՐԻ

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

Էջ



### ԿՈՆՍՈՒԼՏԱՑԻԱ



### ՀՈՒՇԵՐ ՌԵՎՈԼՅՈՒՑԻՈՆ ԱՆՑՅԱԼԻՑ



### ՄԱՄՈՒԼԻ ՏԵՍՈՒԹՅԱՆ ՓՈԽԱՐԵՆ



### ՔՆՆԱՐԿՈՒԹՅՈՒՆ ԵՎ ՎԻՃԱԲԱՆՈՒԹՅՈՒՆ

## СОДЕРЖАНИЕ



# ԿԵՆՍԱԳՈՐԾԵՆՔ ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ ԿԱՌԱՎԱՐՄԱՆ ՆՈՐ ՕՐԵՆՔԸ

*Մեր անծայրածիր երկրի աշխատավորները մեծ խանդավառությամբ ու անհուն բերկրանքով ընդունեցին ՍՍՌՄ Գերագույն Սովետի յոթերորդ սեսիայի օրենքներն ու որոշումները, որոնք զարգացման լայն հեռանկարներ են բացում ժողովրդական տնտեսության նոր, հզոր վերելքի համար, մեր երկրում կոմունիստական շինարարության խնդիրների հաջող լուծման համար։*

*Քննության առնելով Սովետական Միության Կոմունիստական պարտիայի Կենտրոնական Կոմիտեի և ՍՍՌՄ Մինիստրների Սովետի կողմից ներկայացված արդյունաբերության և շինարարության կառավարման կազմակերպումը է՛լ ավելի կատարելագործելու հարցը, սեսիան միահամուռ հավանություն տվեց պարտիայի ու կառավարության մշակած ու համաժողովրդական քննարկման ընթացքում լիակատար հավանության արժանացած միջոցառումներին և ընդունեց Օրենք՝ «Արդյունաբերության և շինարարության կառավարման կազմակերպումը է՛լ ավելի կատարելագործելու մասին»։*

*Գերագույն Սովետի ընդունած Օրենքը արտահայտում է մեր ամբողջ ժողովրդի կամքը, նրա ձգտումներն ու իղձերը։ Դա վառ կերպով դրսևորվեց «Արդյունաբերության ու շինարարության կառավարման կազմակերպումն է՛լ ավելի կատարելագործելու մասին» ՍՄԿՊ Կենտկոմի առաջին քարտուղար Ն. Ս. Խրուշչովի զեկուցման թեզիսների համաժողովրդական քննարկման ընթացքում։ Երկրում անցկացված 514 հազարից ավելի ժողովներին մասնակցեցին 40,820 հազար աշխատավորներ, որոնցից ավելի քան 2 միլիոն 300 հազարը ընկ. Խրուշչովի զեկուցման թեզիսների առթիվ հանդես եկան իրենց դիտողություններով ու առաջարկություններով։ Բացի այդ, ավելի քան 68 հազար բանվորներ, կոլտնտեսականներ, գիտության ու տեխնիկայի գործիչներ, պարտիական, սովետական, տնտեսական, արհմիութենական աշխատողներ արտահայտվեցին մամուլում՝ թերթերի ու ամսագրերի էջերում։ Հենց միայն մեր ռեսպուբլիկական «Սովետական Հայաստան» թերթում տարբեր պրոֆեսիայի տեր աշխատավորներ հանդես եկան ավելի քան 500 առաջարկությամբ։*

*Այս թվերը ցույց են տալիս սովետական լայն դեմոկրատիզմը, նրա իրոք համաժողովրդական բնույթը։ «Դա համոզիչ կերպով հաստատում է այն փաստը,— իր զեկուցման մեջ ասաց ընկ. Խրուշչովը,— որ Սովետական Միությունում ոչ թե խոսքով, այլ գործով ապահովվում է միլիոնավոր աշխատավոր մասսաների ամենալայն մասնակցությունը երկրի ժողովրդական տնտեսության զարգացման արմատական հարցերի լուծմանը։ Այդքան կարևոր պետական հարցի համաժողովրդական քննարկումը կոլեկտիվ ղեկավարման և ժողովրդի հետ ղեկավարության անխզելի կապի լենինյան սկզբունքի կենսագործման կոնկրետ օրինակն է, երբ պարտիան ու կառավարությունը կոմու-*

նիստական շինարարության հասունացած խնդիրները քննարկելիս խորհուրդ-
են անում ժողովրդի հետ, որի կոլեկտիվ միտքը օգնում է առավել ճիշտ լու-
ծումներ գտնել»։

Ժողովրդական տնտեսության ու կուլտուրայի զարգացման բնագավառ-
ներում ձեռք բերած հոյակապ, վիթխարի նվաճումների պայմաններում սովե-
տական ժողովուրդը ամբողջ աշխարհի պրոգրեսիվ մարդկության հետ միա-
սին այս տարի տոնելու է Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի
քառասնամյակը։ Հոկտեմբերյան ռևոլյուցիայի հաղթանակի շնորհիվ մեր
երկրի աշխատավորները պատմության մեջ առաջին անգամ իրենց երկրի խո-
կական տերը դարձան, մեկընդմիշտ վերջ տվին մեր երկրի տնտեսական ու
կուլտուրական դարավոր հետամնացությանը և բռնեցին կոմունիզմի լուսա-
վոր ուղին։

Սովետական ամբողջ էկոնոմիկայի հիմքերի հիմքը կազմող ծանր ին-
դուստրիայի առավել զարգացման լենինյան գլխավոր գիծը անշեղորեն կեն-
սագործելու շնորհիվ, սովետական ժողովուրդը Կոմունիստական պարտիայի
ղեկավարությամբ պատմականորեն ամենակարճ ժամանակամիջոցում ստեղ-
ծեց սոցիալիստական հզոր ինդուստրիա, խոշոր մեքենայացված գյուղատըն-
տեսություն, հասավ գիտության, տեխնիկայի ու կուլտուրայի ծաղկման։ Սո-
ցիալիստական կարգերի առավելության շնորհիվ Սովետական Միությունը
տնտեսական զարգացման բնագավառում առաջ անցավ կապիտալիստական
զարգացած շատ երկրներից և արդյունաբերության արտադրության մակար-
դակով աշխարհում գրավեց երկրորդ տեղը։ Նախառևոլյուցիոն ժամանակա-
շրջանի համեմատությամբ արդյունաբերության արտադրանքի ծավալը մինչև
1957 թվականն աճեց ավելի քան 30 անգամ, իսկ մետաղաշինության ու
մետաղամշակման ասպարեզում՝ 180 անգամ, էլեկտրաէներգիայի արտադրու-
թյունն աճեց գրեթե 100 անգամ։ Ժողովրդական տնտեսության շատ ճյուղեր
հագեցվեցին ժամանակակից տեխնիկայով, մեծ չափով հեշտացավ աշխա-
տանքը և բարձրացավ նրա արտադրողականությունը։ Վերջին տարիներս խո-
շոր հաջողություններ ձեռք բերվեցին սոցիալիստական գյուղատնտեսության
զարգացման գործում։ Խամ և խոպան հողերի յուրացման հաշվին ընդարձակ-
վեցին գյուղատնտեսական կուլտուրաների ցանքատարածությունները, բարձ-
րացավ բերքատվությունն ու անասնաբուծության մթերատվությունը։ Այդ բո-
լորի հիման վրա անշեղորեն բարձրանում է ժողովրդի կենսամակարդակը։

Կոմունիստական պարտիայի լենինյան ազգային քաղաքականության կի-
րառման շնորհիվ ժողովրդական տնտեսությունը խոշոր չափերով զարգացել է
միութենական և ավտոնոմ ռեսպուբլիկաներում, երկրամասերում ու մարզե-
րում։ Դրա լավագույն ապացույցը կարող է լինել մեր՝ Հայկական ՍՍՌ-ն,
ուր 1913 թվականի համեմատությամբ արդյունաբերության համախառն ար-
տադրանքը 1956 թվականին ավելացավ 45 անգամ, իսկ նախապատերազմյան՝
1940 թվականի համեմատությամբ՝ 5,2 անգամ։

Կոմունիստական պարտիայի կողմից դաստիարակված սովետական մար-
դիկ երբեք չեն հանգստանում ձեռք բերված նվաճումներով և համառ ու լար-
ված աշխատանք են կատարում ՍՄԿԿ XX համագումարի առաջադրած հոյա-
կապ խնդիրների կենսագործման համար։ Նրանք խորապես գիտակցում են,
որ անհրաժեշտ է ծանր արդյունաբերության առավել զարգացման, տեխնի-
կական անընդհատ պրոգրեսի և աշխատանքի արտադրողականության բարձ-



րացման բազայի վրա ապահովել ժողովրդական տնտեսության բոլոր ճյու-
ղերի հետագա հզոր աճ, իրագործել գյուղատնտեսական արտադրության շեշ-
տակի վերելք և դրա հիման վրա հասնել սովետական ժողովրդի նյութական
բարեկեցության ու կուլտուրական մակարդակի նշանակալի բարձրացման։ Դա
հնարավորություն կտա, որպեսզի խաղաղ տնտեսական մրցության միջոցով
պատմական ամենակարճ ժամկետներում լուծել ՍՍՌՄ-ի տնտեսական հիմ-
նական խնդիրը՝ բնակչության մեկ շնչին ընկնող արտադրանքի քանակու-
թյամբ հասնել և անցնել կապիտալիստական առավել զարգացած երկրներից։

Այդ հիմնական խնդրի ամենաարագ լուծումը պահանջում է կատարելա-
գործել արդյունաբերության ու շինարարության կառավարումը, գործի դնել
մեր երկրում եղած անսպառ ռեզերվները, ամեն կերպ բարձրացնել աշխատա-
վորական մասսաների ակտիվությունն ու նախաձեռնությունը։ Հենց այդ
նպատակն է հետապնդում «Արդյունաբերության ու շինարարության կառա-
վարման կազմակերպումն է՛լ ավելի կատարելագործելու մասին» ՍՍՌՄ Գե-
րագույն Սովետի յոթերորդ սեսիայի ընդունած Օրենքը։

ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության աննախընթաց վերելքը, սոցիալիս-
տական հզոր ինդուստրիայի ստեղծումը, շինարարության ուժեղ թափը, տե-
ղերում փորձված բարձրորակ մասնագետների և գիտնականների մեծաթիվ
կադրերի առկայությունը, հրամայաբար առաջ քաշեցին արդյունաբերության
ու շինարարության կառավարման կազմակերպման ձևերի հետագա կատարե-
լագործման անհրաժեշտությունը, տնտեսական շինարարության բնագավառում
միութենական ռեսպուբլիկաների իրավունքներն էլ ավելի ընդլայնելու, ժողո-
վրդական տնտեսության ղեկավարությունն ավելի գործնական ու ավելի
կոնկրետ դարձնելու հարցը։

Ղեկավարվելով Վ. Ի. Լենինի ցուցումներով, մեր պարտիան տնտեսու-
թյան կառավարման ձևերն ու մեթոդները երբեք չի դիտել որպես քարացած,
անփոփոխ մի ինչ որ բան։ Զարգացման տարբեր շրջաններում հաշվի առնելով
կյանքի առաջադրած նոր հարցերը, երկրի արտադրողական ուժերի աճը, գի-
տության ու տեխնիկայի զարգացումը, և ելնելով դեմոկրատական ցենտրա-
լիզմի և ժողովրդական տնտեսության պլանային ղեկավարման լենինյան
դրույթներից, պարտիան միշտ էլ կատարելագործել է տնտեսական շինարա-
րության կազմակերպական ղեկավարման ձևերն ու մեթոդները։ Տնտեսական
շինարարության կազմակերպական ձևերի կատարելագործման կարիքը զգաց-
վում էր նաև ներկայումս, երբ երկրում եղած ավելի քան 200 հազար պետա-
կան արդյունաբերական ձեռնարկությունների և 100 հազարից ավելի կառուց-
ների կենտրոնից՝ մինիստրություններից ու գերատեսչություններից գործա-
րար, կոնկրետ ղեկավարումը գնալով դժվարանում էր։ Բացի այդ, գոյություն
ունեին գերատեսչական պատնեշներ, որոնք հանգեցնում էին տարբեր մինիս-
տրություններին պատկանող ձեռնարկությունների արտադրական նորմալ կա-
պերի թուլացման, իսկ հաճախ նաև խախտման։ Արդյունաբերության և շինա-
րարության ղեկավարության նախկին կառուցվածքի դեպքում երկար ժամա-
նակ ձգձգվում էր մի շարք կարևոր հարցերի լուծումը, ժամանակին ու լրիվ
գործի չէին դրվում եղած ռեզերվները, կատարվում էին ավելորդ ծախսում-
ներ, փոխադրումներ և այլն։ Ահա թե ինչու երկրի էկոնոմիկայի հետագա
զարգացման շահերը պահանջում են է՛լ ավելի կատարելագործել արդյունա-
բերության ու շինարարության կառավարման ձևերն ու մեթոդները։

«Այդ նպատակով անհրաժեշտ է,— ասված է Գերագույն Սովետի Օրենքում,— արդյունաբերությունն ու շինարարությունը ճյուղային մինիստրությունների և գերատեսչությունների միջոցով կառավարելուց, որոնք իրենց դրական դերը խաղացին տնտեսական շինարարության մեջ, անցում կատարել դեպի արդյունաբերական ձեռնարկությունների ու կառույցները տերիտորիալ սկզբունքով ղեկավարելու նոր ձևերը, պահպանելով դրանց մասնագիտացումն ըստ ճյուղերի, ստեղծված տնտեսական շրջանների հիման վրա։ Արդյունաբերության ու շինարարության կառավարման նոր ձևերին անցնելը հնարավորություն կտա բարելավել տնտեսական շինարարության ղեկավարումը, վերացնելով բազմաթիվ գերատեսչական պատնեշները, որոնք խանգարում են արդյունաբերության մասնագիտացման, կոոպերացման հետագա զարգացմանը, եղած ռեզերվների առավել լրիվ օգտագործմանը։ Արդյունաբերության ու շինարարության կառավարման կազմակերպական հիմնական ձևը պետք է լինեն ժողովրդական տնտեսության խորհուրդները, որոնք կազմվում են ըստ տնտեսական վարչական շրջանների»։ Այդ նույն Օրենքի համաձայն վերացվում են մի շարք ընդհանուր միութենական և միութենական ռեսպուբլիկական մինիստրություններ, որոնց տնօրինությանը ենթակա ձեռնարկություններն ու կազմակերպությունները հանձնվում են տնտեսական վարչական շրջանների ժողտնտխորհների անմիջական ենթակայությանը։

ՍՍՌՄ Մինիստրների Սովետի կողմից հաստատված ցուցակով տնտեսական վարչական շրջանների ժողտնտխորհների անմիջական ենթակայության են հանձնվում այն ձեռնարկությունները, որոնք գտնվում են ընդհանուր միութենական ավիացիոն արդյունաբերության, պաշտպանական արդյունաբերության, ռադիոտեխնիկական արդյունաբերության, նավաշինական արդյունաբերության, քիմիական արդյունաբերության և էլեկտրակայանների մինիստրությունների տնօրինության ներքո։ Վերոհիշյալ մինիստրությունների համար սահմանված է արդյունաբերության համապատասխան ճյուղերի պլանավորման ֆունկցիաներ և արտադրության զարգացման տեխնիկական բարձր մակարդակի ապահովում։ Այդ ֆունկցիաները մինիստրությունները իրականացնելու են տնտեսական վարչական շրջանների ժողտնտխորհների միջոցով։

Արդյունաբերության և շինարարության կառավարման կազմակերպումը վերակառուցելու շնորհիվ ղեկավարության ծանրության կենտրոնը փոխադրըվում է տեղերը՝ ձեռնարկություններին ու կառույցներին մոտիկ։ Դա լիակատար հնարավորություն է տալիս տնտեսության սոցիալիստական սիստեմի ներսում թաքնված վիթխարի հնարավորություններն ու ռեզերվները լրիվ օգտագործելու և ապահովելու երկրի էկոնոմիկայի բոլոր ճյուղերի, և ամենից առաջ արդյունաբերության հետագա հզոր վերելքը։

Ձեռնամուխ լինելով արդյունաբերության և շինարարության կառավարման վերակառուցման, պարտիան ու կառավարությունը հատուկ ուշադրություն են նվիրում ժողովրդական տնտեսության պլանային սկզբունքի հետագա զարգացմանը, կենտրոնում և տեղերում պլանային օրգանների աշխատանքի բարելավմանը։ Մեր երկրի ժողովրդական տնտեսության զարգացման կարևորագույն սկզբունքը՝ պլանավորումն է։ Վ. Ի. Լենինը ուսուցանում էր, որ «Միայն այն շինարարությունն է արժանի սոցիալիստական կոչվելու, որը կկատարվի խոշոր ընդհանուր պլանի համաձայն, ձգտելով հավասարաչափ օգտագործել էկոնոմիկական և տնտեսական արժեքները» (Երկեր, հատ. 28, էջ 27)։ Ահա թե ինչու Գերագույն Սովետի Օրենքի մեջ լուրջ միջոցառումներ են նշված պլանավորման ու հաշվառման օրգանների աշխատանքի վերակառուցման մասին։ ՍՍՌՄ Գերագույն Սովետի սեսիայի ընդունած Օրենքի մեջ ասված է, որ Պետպլանը պետք է լինի երկրի ժողովրդական տնտեսության պլանային տնտեսական գիտական օրգան։ Նրա վրա է դրվում «...ժողովրդական տնտեսության պահանջմունքների համակողմանի ուսումնասիրությունը և ժողովրդական տնտեսության զարգացման ընթացիկ ու հեռանկարային պլանների մշակումը, հաշվի առնելով գիտության ու տեխնիկայի նվաճումները, ժողովրդական տնտեսության կարևորագույն ճյուղերի զարգացման ասպարեզում միասնական կենտրոնացված քաղաքականություն վարելը և դրա հիման վրա՝ երկրի արտադրողական ուժերի ճիշտ տեղաբաշխման ու ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերի համամասնական զարգացման ապահովումը, ինչպես նաև ժողովրդական տնտեսության նյութա-տեխնիկական մատակարարման պլանների մշակումը և արդյունաբերական արտադրանքի մատակարարումների ասպարեզում պետական կարգապահության անշեղ պահպանման վերահսկողության ապահովումը»։



Հայրենական և արտասահմանյան գիտության ու տեխնիկայի նվաճումները, ինչպես նաև առաջավոր փորձը ուսումնասիրելու, պրոպագանդելու և արտադրության մեջ արմատավորելու նկատմամբ վերահսկողություն իրականացնելու նպատակով ստեղծվում է ՍՍՌՄ Մինիստրների Սովետի Պետական գիտա-տեխնիկական կոմիտե, վերացնելով նոր տեխնիկայի պետական կոմիտեն (ՍՍՌՄ Պետտեխնիկան)։

Օրերս տեղի ունեցած Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի սեսիան նույնպես Օրենք ընդունեց արդյունաբերության և շինարարության կառավարման կազմակերպումն էլ ավելի կատարելագործելու մասին և որոշեց՝ Հայկական ՍՍՌ-ն համարել տնտեսական միասնական մի շրջան։

Արդյունաբերության և շինարարության կառավարման վերակառուցումը նոր, խոշոր քայլ է լենինյան ազգային քաղաքականության իրականացման գործում։ Այն տնտեսական շինարարության ղեկավարման բնագավառում ընդլայնում է միութենական ռեսպուբլիկաների իրավունքները, բարձրացնում է նրանց դերը։ Ռեսպուբլիկական օրգանները մշակելու են ժողովրդական տնտեսության հետագա զարգացման պլանները և կազմակերպական աշխատանքի միջոցով ապահովելու են դրանց լրիվ կատարումը։ Ռեսպուբլիկական կազմակերպությունները ակտիվորեն կմասնակցեն արտադրողական ուժերի ռացիոնալ տեղաբաշխման, բնական հարստությունների ավելի լավ օգտագործման և տվյալ ռեսպուբլիկայի տնտեսության ճիշտ մասնագիտացման հարցերի լուծմանը։

Ռեսպուբլիկաների իրավունքների հետագա ընդլայնումը լայն հնարավորություն է տալիս նրանց աշխարհագրական, տնտեսական և յուրահատուկ պայմանները լավ հաշվի առնելու, տնտեսական-վարչական շրջանների տընտեսության կոմպլեքսային զարգացման հարցերը ավելի արագ ու ավելի ճիշտ լուծելու։ Դա միաժամանակ նպաստելու է մասսաների նախաձեռնության ու ստեղծագործական ակտիվության հետագա զարգացմանը, մեր երկրի բոլոր ազգերի ու ժողովուրդների նյութական և հոգևոր ուժերի ծաղկմանը, բարեկամական ու եղբայրական կապերի հետագա ամրապնդմանը։

*Սովետական Միության էկոնոմիկան միասնական, մի հզոր սիստեմ է։ Ուստի ամեն մի ռեսպուբլիկայի տնտեսության ու կուլտուրայի զարգացումն անհնարին է առանց ամբողջ երկրի ժողովրդական տնտեսության արագ աճի։ ՍՍՌՄ Գերագույն Սովետի սեսիայում տված իր զեկուցման մեջ ընկ. Խրուշչովը նշեց, որ «...արդյունաբերության և շինարարության ղեկավարման իրենց աշխատանքում ռեսպուբլիկական օրգանները առաջին պլանի վրա պետք է դնեն ընդհանուր-միութենական նշանակություն ունեցող հարցերը։ Նախ և առաջ նրանք պետք է իրենց ուշադրությունը կենտրոնացնեն ռեսպուբլիկայի արդյունաբերության այն ճյուղերի զարգացման վրա, որոնք կարևորագույն դեր են խաղում ամբողջ երկրի էկոնոմիկայում։ Անհրաժեշտ է ընդլայնել ռեսպուբլիկաների տնտեսական կապերը՝ աշխատանքի հասարակական բաժանման հիման վրա, ապահովել ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման համապետական պլանից բխող առաջադրանքների ժամանակին և ճիշտ կատարումը»։*

*Արդյունաբերության և շինարարության կառավարման կազմակերպումն է՛լ ավելի կատարելագործելու ուղղությամբ պարտիայի ու կառավարության ձեռնարկած միջոցառումները բխում են ժողովրդական տնտեսության ղեկավարման մեջ դեմոկրատական ցենտրալիզմի լենինյան սկզբունքից, որը նշանակում է՝ կենտրոնացված պլանային ղեկավարման հիման վրա տեղերի նախաձեռնության, ժողովրդական մասսաների ստեղծագործական ակտիվության զարգացումը։ Ժողովրդական տնտեսության ղեկավարության վերակառուցման կապակցությամբ տնտեսական շինարարության կարևորագույն հարցերի լուծման գործում ավելի է բարձրանում սովետների, արհմիությունների և կոմերիտմիության դերը։*

*Սովետական Միության բոլոր աշխատավորները, այդ թվում և մեր ռեսպուբլիկայի աշխատավորները ջերմորեն ընդունեցին արդյունաբերության և շինարարության կառավարման կազմակերպումն է՛լ ավելի կատարելագործելու մասին ՍՍՌՄ Գերագույն Սովետի յոթերորդ սեսիայի Օրենքը, որը լայն ասպարեզ է բացում սոցիալիստական էկոնոմիկայի հետագա ծաղկման, մեր երկրում կոմունիզմի կառուցման համար։*

*Պարտիական կազմակերպությունների խնդիրն է՝ բոլոր աշխատավորներին լայնորեն պարզաբանել ՍՍՌՄ և Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետների ընդունած օրենքներն ու որոշումները և ապահովել ժողովրդական տնտեսության հետագա զարգացման ուղղությամբ Կոմունիստական պարտիայի և Սովետական Կառավարության առաջադրած բոլոր խնդիրների անթերի լուծումը։*

---

# ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ՊԱՐՏԻԱՅԻ ԱԶԳԱՅԻՆ ՔԱՂԱՔԱԿԱՆՈՒԹՅԱՆ ՀԱՂԹԱՆԱԿԸ

Գ. ԽԱՉԱՏՐՅԱՆ, Ս. ՊԵՏՐՈՍՅԱՆ

*Այս տարի լրանում է Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյու-
ցիայի փառապանծ 40 տարին։ Անցած հերոսական դարաշրջանի մեր մեծա-
գույն նվաճումներից մեկը՝ Կոմունիստական պարտիայի լենինյան ազգային
քաղաքականության հաղթանակն է։ Պատմության համար այդ կարճ ժամա-
նակամիջոցում Սովետական Միությունը էկոնոմիկայի ու կուլտուրայի զար-
գացման բնագավառում ձեռք է բերել համաշխարհային պատմական հաղթա-
նակներ։ ՍՍՌՄ սոցիալիստական մեծ ընտանիքում համախմբված մեր երկրի
բոլոր ժողովուրդները իրավամբ հասել են ազգային վերածնության։ Եվ դա
շնորհիվ նրան, որ Կոմունիստական պարտիան հավատարիմ մնալով մեծ
Լենինի ռևոլյուցիոն ուսմունքին, վարել ու վարում է ազգային ճիշտ քաղաքա-
կանություն։*

*ՍՄԿՊ XX համագումարը և ՍՄԿՊ Կենտկոմի վերջին պլենումները իրենց
պատմական որոշումներով նոր էտապ են նշանավորում ազգային հարցի հե-
տագա զարգացման մեջ։ Ժողովրդական տնտեսության ղեկավարման բարե-
լավման, ազգային ռեսպուբլիկաների իրավունքների ընդլայնման ուղղությամբ
ՍՄԿՊ Կենտկոմի և Սովետական Կառավարության որոշումները թեորիական
և գործնական հսկայական նշանակություն ունեն։ Դրանք բխում են ազգային
քաղաքականության լենինյան սկզբունքներից, մեծ հեռանկարներ են բացում
ՍՍՌՄ ժողովուրդների ազատ զարգացման, նրանց փոխադարձ համագործակ-
ցության և եղբայրական բարեկամության ամրապնդման համար։*

*Մեր պարտիայի լենինյան ազգային քաղաքականության անշեղ իրագոր-
ծումը կյանքում, նրա համաշխարհային պատմական փորձը ապահովեց ոչ
միայն սոցիալիստական երկրների անխորտակ միասնությունը, այլև միջազ-
գային պրոլետարիատի ինտերնացիոնալ համախմբումը մարքսիզմ-լենինիզմի
ամենահաղթ դրոշի ներքո։*

❋❋❋

*Վ. Ի. Լենինի հանճարով ստեղծված Կոմունիստական պարտիան իր գոր-
ծունեության հենց սկզբից ազգային քաղաքականության հիմքում դրեց ազ-
գերի և ժողովուրդների հավասարության և պետական ինքնուրույնության
սկզբունքը։ 1903 թվականին պարտիայի II համագումարում ընդունված ծրա-
գրով սահմանվեց «պետության կազմի մեջ մտնող բոլոր ազգերի ինքնորոշ-
ման իրավունքը»։*

*Դա ցույց է տալիս, որ մեր պարտիայի ծրագիրը սկզբից ևեթ տվել է ազգային հարցի լուծման միակ ճիշտ ուղին։ 1905 թվականի ռևոլյուցիայի և նրան հաջորդած ժամանակաշրջանում Վ. Ի. Լենինը հաշվի առնելով պրոլետարիատի դասակարգային պայքարի փորձը, բազմակողմանիորեն մշակեց և տեսականորեն հիմնավորեց ազգերի ինքնորոշման իրավունքի հարցը։ Մարքսիզմի հակառակորդները չէին ընդունում, որ ազգերի ինքնորոշման իրավունքի էությունն է «...նրանց պետական անջատումն օտարազգի կոլեկտիվներից... ինքնուրույն ազգային պետության գոյացումը» (Վ. Ի. Լենին, հ. 20, էջ 493)։ Այս պարզ և խորիմաստ դրույթը տրամաբանորեն բխել է Ռուսաստանի իրական զարգացումից և հանդիսացել է այդ զարգացման կոնկրետ արտահայտությունը։ Ճիշտ է նկատել Լենինի զինակից Ստ. Շահումյանը, գրելով, որ «...ազգային հարցը մարքսիզմը լուծում է ամեն մի առանձին դեպքում իր ուրույն և կոնկրետ պատմական արտահայտությունների մեջ և ոչ «ընդհանրապես», անկախ ժամանակի և տեղի պայմաններից» (Ստ. Շահումյան, Ընտիր երկեր, էջ 372, Հայպետհրատ, 1948)։*

*Ռուսաստանի պատմական զարգացման կոնկրետ պայմանների խոր վերլուծության հիման վրա Վ. Ի. Լենինը հանդեց բոլոր ազգերի «ինքնորոշման իրավունքի» ճանաչման անհրաժեշտությանը՝ ընդհուպ մինչև ինքնուրույն ազգային պետության ստեղծումը։ Պրոլետարիատի դասակարգային պայքարի և ռուսաստանյան ժողովուրդների ազգային ազատագրական շարժումների փորձը լիովին հաստատեց «ազգերի ինքնորոշման իրավունքի» լենինյան գաղափարի ճշտությունը, որը բոլշևիկների պարտիային հնարավորություն տվեց բոլոր ազգությունների պրոլետարներին ու աշխատավորներին համախմբելու մեկ ընդհանուր պայքարի հունի մեջ՝ ընդդեմ ցարական ինքնակալության և ռուսական ռեակցիոն բուրժուազիայի։ Աշխատավոր մասսաների ինտերնացիոնալ միավորումը և Հոկտեմբերյան մարտերում նրանց հաղթանակը հնարավոր դարձավ շնորհիվ Վ. Ի. Լենինի գլխավորած Կոմունիստական պարտիայի այն վճռական պայքարի, որ նա մղեց ազգային հարցի բուրժուական թեորիաների և նրանց կրողների դեմ։ Պրոլետարական ռևոլյուցիան ոչնչացրեց շահագործող դասակարգերի քաղաքական տիրապետությունը, փշրեց ազգային ճնշման կապանքները, լիկվիդացրեց ազգերի միջև եղած հին թշնամանքը և հող ստեղծեց ժողովուրդների եղբայրական համագործակցության ու զարգացման համար։*

*Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիան լայն ասպարեզ բացեց ՍՍՌՄ-ում բնակվող բոլոր ազգությունների քաղաքական, կուլտուրական ու տնտեսական զարգացման համար, նրանց պետական սուվերենության հաստատման և ձևով ազգային, բովանդակությամբ սոցիալիստական կուլտուրայի ծաղկման համար։ Հաղթանակ տարավ լենինյան ազգային քաղաքականությունը՝ բոլոր ժողովուրդների և ազգերի իրավահավասարության, բարեկամության ու եղբայրության քաղաքականությունը։*

*Սովետական իշխանությունը վերացրեց ազգային ամեն տեսակի արտոնությունները, սահմանափակումները և պայմաններ ստեղծեց ազգերի ազատ զարգացման համար։ Ռևոլյուցիայի հաղթանակից հետո պարտիայի առաջ ամբողջ հասակով ծառացան նոր պետության կառուցման հարցերը։ Անհրաժեշտ էր հին, ցարական պետության փլատակների տեղը կառուցել նոր, սոցիալիստական պետություն, որը կարողանար զուգակցել երկրի բոլոր ժողո-*



*վուրդների արմատական շահերը։ Ձեռնամուխ լինելով սովետական բազմազգ պետության կառուցմանը՝ Վ. Ի. Լենինը բացահայտեց սովետական ֆեդերացիայի նշանակությունը որպես ժողովուրդների պետական կազմակերպման լավագույն ձև, տեսականորեն հիմնավորեց մեկ միասնական միութենական պետության մեջ սովետական ռեսպուբլիկաների ավելի սերտ համախմբման անհրաժեշտությունը։ Լենինը առաջ քաշեց, հիմնավորեց և զարգացրեց ՍՍՌՄ-ի ստեղծման գաղափարը, որպես իրավահավասար և սուվերեն ազգերի կամավոր միություն, դա համարելով սոցիալիստական շինարարության, սովետական բոլոր ժողովուրդների բազմակողմանի զարգացման և երկրի պաշտպանության ամրապնդման կարևորագույն պայմանը։ Լենինի անմիջական նախաձեռնությամբ և ղեկավարությամբ ստեղծվեց ՌՍՖՍՌ-ն, Անդրֆեդերացիան և ապա 1922 թվականին՝ ՍՍՌՄ-ը։*

*Վ. Ի. Լենինը պահանջում էր, որ Միության կենտրոնական օրգանները կառուցելիս ապահովվի առանձին ռեսպուբլիկաների իրավունքների ու պարտականությունների հավասարությունը ինչպես նրանց փոխադարձ հարաբերությունների մեջ, այնպես էլ Միության կենտրոնական իշխանության վերաբերմամբ։ Լենինը գտնում էր, որ Միության բարձրագույն օրգանների սիստեմում պետք է հիմնել բոլոր ազգային ռեսպուբլիկաների ու ազգային մարզերի ներկայացուցչության հատուկ օրգան՝ հավասարության հիմունքներով, հաշվի առնելով այդ ռեսպուբլիկաների կազմի մեջ մտնող բոլոր ազգությունների ներկայացուցչությունը։ Ընդսմին Միության գործադիր օրգանները պետք է կառուցվեին այնպիսի հիմունքներով, որոնք ապահովեին ռեսպուբլիկաների ներկայացուցիչների ռեալ մասնակցությունն այդ օրգաններում և պայմաններ ստեղծեին Միության բոլոր ժողովուրդների կարիքների ու պահանջների բավարարման համար։ Ազգային ռեսպուբլիկաները պետք է ստանային ֆինանսական ու բյուջետային լայն իրավունքներ, որոնք ապահովեին նրանց սեփական պետական-վարչական, կուլտուրական և տնտեսական նախաձեռնության դրսևորման հնարավորություն։ Իրագործվեցին Լենինի այդ ցուցումները։ Միաժամանակ Լենինը պարտիային զգուշացնում էր թույլ չտալ չափից ավելի կենտրոնացում և կենտրոնական օրգանների կողմից հնարավոր բյուրոկրատական խեղաթյուրումներ, որոնք կխանգարեին ռեսպուբլիկաների նախաձեռնության զարգացմանը։ Ընթանալով Լենինի գծած ուղիով, մեր պարտիան ազգային քաղաքականության ասպարեզում ունեցավ վիթխարի հաջողություններ։*

*Անխնա արմատախիլ անելով ազգային թշնամանքի ու ատելության, նացիոնալիզմի ու շովինիզմի բոլոր արմատները՝ մեր երկրի ժողովուրդները կազմեցին մի համերաշխ ընտանիք։ Պարտիան գործնականորեն ապացուցեց, որ սոցիալիզմ կառուցող ժողովուրդների ազգային և ինտերնացիոնալ շահերը համընկնում են։*

*Սակայն ազգային ճնշման վերացումը, ժողովուրդների իրավական ու քաղաքական հավասարության հաստատումը գործի սկիզբն էր։ Սոցիալիզմի շինարարության համար մղվող պայքարում ազգային հարցի էությունն այն էր, որ լիկվիդացվեր անցյալի ծանր ժառանգությունը, ճնշված ժողովուրդների տնտեսական, քաղաքական և կուլտուրական հետամնացությունը։ Այդ խնդրի իրագործման կոնկրետ ուղիներն ու ձևերն արտահայտվեցին Վ. Ի. Լենինի վերջին աշխատություններում ու նամակներում, պարտիայի X և XII համա-*

գումարների որոշումներում: Պարտիան հրատապ հարց համարեց ազգային ծայրամասերում ինդուստրիալ օջախներ ստեղծելը, արտադրողական ուժերի պլանաչափ տեղաբաշխման միջոցով գյուղատնտեսության վերելքն ապահովելը, ժողովուրդների ձևով ազգային, բովանդակությամբ սոցիալիստական կուլտուրայի զարգացումը:

ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման հնգամյա պլանները կազմելիս պարտիայի տնտեսական քաղաքականության հիմքում դրվեց երկրի բոլոր ազգերի տնտեսական ու կուլտուրական արագ զարգացման կարևորագույն խնդիրը: Հնգամյա պլանների իրագործման շնորհիվ ՍՍՌՄ բոլոր ազգային ռեսպուբլիկաներում հսկայական հաջողություններ ձեռք բերվեցին ինդուստրացման, գյուղատնտեսության կոլեկտիվացման և ժողովրդի նյութական-կուլտուրական մակարդակի վերելքի բնագավառներում:

Միութենական ռեսպուբլիկաների ազգային էկոնոմիկայի զարգացման բարձր տեմպերի համար բնորոշ են հետևյալ տվյալները.

1913 թվականի համեմատությամբ ՌՍՖՍՌ-ի տերիտորիայում գտնվող ամբողջ արդյունաբերության համախառն արտադրանքը 1955 թվականին ավելացել է 27 անգամ, Ուկրաինական ՍՍՌ-ում՝ 16 անգամ, Բելոռուսական ՍՍՌ-ում՝ 19 անգամ, Ուզբեկական ՍՍՌ-ում՝ 14 անգամ, Ղազախական ՍՍՌ-ում՝ 33 անգամ, Վրացական ՍՍՌ-ում՝ 27 անգամ, Ադրբեջանական ՍՍՌ-ում՝ 12 անգամ, Կիրգիզական ՍՍՌ-ում՝ 38 անգամ, Տաջիկական ՍՍՌ-ում՝ 24 անգամ, Թուրքմենական ՍՍՌ-ում՝ 17 անգամ:

Բուռն թափով ծաղկեց ՍՍՌՄ ժողովուրդների ձևով ազգային, բովանդակությամբ սոցիալիստական կուլտուրան: Այդ բանի վառ ցուցանիշը ժողովրդական կրթության վիճակն է ազգային ռեսպուբլիկաներում: Նախառևոլյուցիոն Տաջիկստանում ընդամենը կար 10 դպրոց, 200 բնակչին ընկնում էր մեկ գրագետ: Ներկայումս Տաջիկական ՍՍՌ-ում կա մոտ 2600 դպրոց, որոնցում սովորում են ավելի քան 300 հազար երեխա: Դպրոցում սովորող երեխաների թիվը 1914 թվականի համեմատությամբ աճել է Կիրգիզական ՍՍՌ-ում՝ 46 անգամ, Թուրքմենական ՍՍՌ-ում՝ 34 անգամ:

Ցարիզմի օրոք չկար բարձրագույն կրթություն ունեցող ոչ մի թուրքմեն: Այժմ Սովետական Թուրքմենիայում աշխատում են բարձրագույն կրթությամբ 7 հազարից ավելի թուրքմեն մասնագետներ: Բարձրագույն կրթությամբ մասնագետների թիվը նախապատերազմյան 1940 թվականի մակարդակի համեմատությամբ Ուկրաինական, Բելոռուսական, Ադրբեջանական և Վրացական ռեսպուբլիկաներում աճել է ավելի քան 2 անգամ, Ուզբեկական, Տաջիկական, Մոլդավական և Հայկական ՍՍՌ-ներում՝ ավելի քան 3 անգամ, իսկ Ղազախական և Կիրգիզական ռեսպուբլիկաներում՝ ավելի քան 4 անգամ:



Մարդկության պատմությունը երբևիցե չի իմացել հետամնացությունից դեպի պրոգրես, խավարից ու տգիտությունից դեպի բարձր կուլտուրա, ժողովուրդների այնպիսի սրընթաց առաջխաղացում, ինչպիսին կատարեցին ՍՍՌՄ ազգությունները:

Կոմունիստական պարտիայի լենինյան ազգային քաղաքականության հաղթանակը դրսևորող կենդանի օրինակ է Սովետական Հայաստանը:



Ազատության ու անկախության համար, ազգային կուլտուրայի զարգացման համար հայ ժողովրդի դարավոր պայքարը, շնորհիվ Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի, 1920 թվականի նոյեմբերի 29-ին պսակվեց պատմական հաղթանակով:

Անհամար փորձություններ ու դառը զրկանքներ է տեսել հայ ժողովուրդը այլազգի բռնակալների և ներքին կեղեքիչների տիրապետության օրոք: «Գտնըվելով երկու աշխարհների, երկրագնդի մայր ցամաքների՝ Եվրոպայի ու Ասիայի սահմանագծի վրա,— գրել է «Պրավդան»,— Հայաստանը եղել է անվերջ ճակատամարտերի ու արշավանքների թատերաբեմ: Մեկ նվաճողներին փոխարինում էին մյուսները... Ժողովուրդը հազիվ էր կարողանում ուշքի գալ մեկ ավերիչ փոթորիկից, երբ վրա էր հասնում նորը և նորից ավերվում էին գյուղերն ու քաղաքները, կործանվում էր կուլտուրան, կոտորվում էին հայ աշխատավորները» («Պրավդա», 1935 թ., 28 նոյեմբեր):

Հայ ժողովրդի պատմության ամենամռայլ էջերից մեկը բուրժուա-նացիոնալիստական դաշնակցական պարտիայի տիրապետության ժամանակաշրջանն էր: Իր հայրենադավ քաղաքականությամբ դաշնակցական կառավարությունը Հայաստանի էկոնոմիկան ու կուլտուրան հասցրեց քայքայման և կործանման: Երկրի սակավաթիվ մանր-մունր գործարաններն ու ֆաբրիկաները փակվել էին, քաղաքներն ու գյուղերը՝ ամայացել: Ազգամիջյան անընդհատ պատերազմների և ամենուրեք մոլեգնող համաճարակների հետևանքով ազգաբնակչությունը խիստ պակասել էր: Հայաստանը կանգնած էր անդունդի եզրին: Հայ ժողովրդին սպառնում էր ֆիզիկական բնաջնջում: «Հայաստանը,— ասել է Ա. Ի. Միկոյանը,— դաշնակցականների օրոք որբերի երկիր էր, արցունքի երկիր էր, թշվառության և վայրի կամայականության երկիր էր»:

Սովետական իշխանությունը տանջված ու խոշտանգված, սովի ու գաղթի մատնված հայ ժողովրդին ապահովեց ազգային վերածննդի լիակատար հնարավորություն: Սովետական իշխանության հաստատումով սկսվեց հայ ժողովրդի նոր, լուսավոր պատմության դարագլուխը:

Սովետական իշխանության տարիներին հայ ժողովուրդը ՍՍՌՄ ժողովուրդների մեծ ընտանիքում, ռուս ժողովրդի եղբայրական օգնությամբ ստեղծեց բարձր զարգացած արդյունաբերություն, որը հնարավորություն տվեց ընդմիշտ վերացնելու ռեսպուբլիկայի տնտեսական դարավոր հետամնացությունը: Նախապատերազմյան հնգամյակները արմատապես փոխեցին Հայկական ՍՍՌ-ի տնտեսական ու կուլտուրական դեմքը, նրա քաղաքների ու գյուղերի տեսքը: Երկրի կյանքում տեղի ունեցած սոցիալ-տնտեսական արմատական փոփոխությունների, արդյունաբերության ու գյուղատնտեսության բուռն զարգացման շնորհիվ Հայաստանը դարձավ ինդուստրիալ-կոլտնտեսային զարգացած ռեսպուբլիկա:

Հայաստանը այժմ Սովետական Միության արդյունաբերական կենտրոններից մեկն է: Ռեսպուբլիկայում ստեղծվել են մետաղաձուլական, քիմիական, մեքենաշինական, էներգետիկ, լեռնահանքային, շինանյութերի, տեքստիլ-տրիկոտաժի, սննդի արդյունաբերության ճյուղեր: Առաջնակարգ տեխնիկայով հագեցված խոշոր գործարաններ ու արդյունաբերական ձեռնարկություններ են կառուցվել ոչ միայն մայրաքաղաք Երևանում, այլև Լենինականում, Կիրովականում, Ալավերդում, Ղափանում և այլուր:

Ռեսպուբլիկայի արդյունաբերությունը բուռն թափով զարգացավ հետ-

պատերազմյան տարիներին։ Այդ ժամանակամիջոցում կառուցվեցին և շահագործման հանձնվեցին ավելի քան 100 նոր խոշոր արդյունաբերական ձեռնարկություններ։ 1956 թվականին արդյունաբերության համախառն արտադրանքը 1913 թվականի համեմատությամբ ավելացավ 45 անգամ։

Սովետական Հայաստանի ինդուստրիալ աճի համար հիմք ծառայեց էլեկտրաէներգետիկ բազայի արագ զարգացումը։ Այժմ Հայկական ՍՍՌ-ում էլեկտրաէներգիայի արտադրությունը 440 անգամ ավելի է, քան 1913 թվականին և 1200 անգամ ավելի, քան 1919 թվականին։ Բնակչության մեկ շնչին ընկնող էլեկտրաէներգիայի քանակով Հայաստանը շատ առաջ է անցել արդյունաբերական տեսակետից զարգացած այնպիսի կապիտալիստական երկրներից, ինչպիսիք են Ֆրանսիան, Հոլանդիան և Ճապոնիան։

Սովետական իշխանության տարիներին ծաղկեց հայ ժողովրդի ձևով ազգային, բովանդակությամբ սոցիալիստական կուլտուրան։ Մեր ռեսպուբլիկան, որի բնակչության 2/3-ը մինչև ռևոլյուցիան անգրագետ էր, այժմ դարձել է համատարած գրագիտության, զարգացած գիտության ու կուլտուրայի երկիր։ Ներկայումս Հայկական ՍՍՌ-ում գործում են 1184 դպրոց՝ 281 հազար աշակերտով, 1919 թվականի 166 դպրոցի և 18 հազար աշակերտի դիմաց։

Նախասովետական Հայաստանը չուներ ոչ մի բարձրագույն ուսումնական հաստատություն։ Այժմ ռեսպուբլիկան ունի 12 բարձրագույն ուսումնական հաստատություն, 48 տեխնիկում, որտեղ սովորում են մի քանի տասնյակ հազար ուսանող։ Բնակչության 10 000 շնչին ընկնող ուսանողների թիվը Սովետական Հայաստանում մոտ 7 անգամ ավելի է քան Ֆրանսիայում, մոտ 13 անգամ ավելի, քան Անգլիայում և 16 անգամ ավելի, քան Թյուրքիայում։ Ռեսպուբլիկայում աշխատում են 2500-ից ավելի գիտական և գիտամանկավարժական կադրեր, որոնցից 135-ը դոկտորներ են, 1193-ը՝ գիտությունների թեկնածուներ։

Սովետական Հայաստանը ծածկվել է կուլտուր-լուսավորական հիմնարկների խիտ ցանցով։ 1956 թվականին ռեսպուբլիկայում գործում էին 1662 մասսայական գրադարան, ավելի քան 5 միլիոն գրքով, 1191 ակումբ, 20 թանգարան, 10 թատրոն, հեռուստատեսային կայան, 369 կինոսարքավորում և այլն։

1956 թվականին Մոսկվայում կայացած Հայկական արվեստի և գրականության տասնօրյակը, որը հայ ժողովրդի կուլտուրայի հիասքանչ տոնն էր, վառ կերպով ցուցադրեց Սովետական Հայաստանի կուլտուրայի զարգացման հաջողությունները, որոնք ձեռք են բերվել ՍՍՌՄ ժողովուրդների եղբայրական ընտանիքում։ Բարձր կուլտուրա, պրոֆեսիոնալ վարպետություն, կենսուրախ ստեղծագործություն, հիասքանչ ու սրտաբուխ արվեստ, ահա այն գնահատականը, որին արժանացան տաղանդներով հարուստ հայ ժողովրդի արվեստն ու գրականությունը։

***

ՍՄԿՊ XX համագումարը նոր վճռական քայլ կատարեց բազմազգ սոցիալիստական պետության ամրապնդման ուղղությամբ, կոնկրետացրեց և զարգացրեց լենինյան ազգային քաղաքականության հիմնական հարցերը՝ կոմունիստական շինարարության ժամանակակից էտապի խնդիրներին ու պահանջներին համապատասխան։



Ղեկավարվելով Լենինի ցուցումներով՝ Կոմունիստական պարտիան իր պրակտիկ աշխատանքում ամենաուշադիր կերպով հաշվի է առնում ազգային տարբերություններն ու առանձնահատկությունները, անշեղորեն բարձրացնում է տեղերի ինքնուրույնությունը, զարգացնում է նրանց նախաձեռնությունը տնտեսական և կուլտուրական շինարարության խնդիրների լուծման գործում։ Այդ նպատակով վերջին տարիներս պարտիայի Կենտրոնական Կոմիտեն և Սովետական Կառավարությունը կիրառեցին կարևորագույն կազմակերպական միջոցառումներ, որոնք պետք է բարելավեն պետական պլանավորման գործը, վերացնեն արդյունաբերության կառավարման չափից դուրս կենտրոնացումը և բարձրացնեն միութենական ռեսպուբլիկաների դերը ժողովրդական տնտեսության կառավարման ասպարեզում։

Պետք է շեշտել, որ միութենական ռեսպուբլիկաներում բուռն վերելք ապրող էկոնոմիկայի հետ միասին աճել ու կոփվել են ազգային կադրեր, որոնք գործիմացությամբ կարող են լուծել արտադրական, տնտեսական և գիտա-տեխնիկական ամենաբարդ հարցերը, բարձր արդյունքների հասնել աշխատանքի, միջոցների ու նյութերի նվազագույն ծախսումներով։ Այդ տեսակետից խոշոր նշանակություն ունի ՍՄԿՊ Կենտկոմի և ՍՍՌՄ Մինիստրների Սովետի «Ժողովրդական տնտեսության մի շարք ճյուղերի ձեռնարկություններ միութենական ռեսպուբլիկաների տնօրինությանը հանձնելու և դրա հետ կապված կազմակերպական միջոցառումներ կիրառելու մասին» որոշումը։

Անցած երեք տարում միութենական ենթակայությունից ռեսպուբլիկական մինիստրությունների իրավասությանը հանձնվեցին մոտ 15 հազար արդյունաբերական ձեռնարկություններ։ Դա զգալիորեն բարձրացրեց միութենական ռեսպուբլիկաներին ենթակա արդյունաբերության տեսակարար կշիռը, որի բաժինն այժմ կազմում է երկրում թողարկվող ամբողջ արդյունաբերական արտադրանքի 55 տոկոսը՝ 1953 թվականի 31 տոկոսի դիմաց։ Այս ամենը նպաստեց տեղերում ստեղծագործական նախաձեռնության է՛լ ավելի ծավալմանը, միութենական ռեսպուբլիկաների էկոնոմիկայի հետագա ամրապնդմանը, ՍՍՌՄ ժողովուրդների բարեկամության ու եղբայրական համագործակցության զարգացմանը։ Գործարկվող միջոցառումների հիմքում ընկած է լենինյան այն ցուցումը, որ տնտեսական ու կուլտուրական շինարարության մեջ պետք է ավելի մեծ չափով հաշվի առնել ազգային ռեսպուբլիկաների առանձնահատկությունների և յուրահատուկ պայմանների ամբողջ բազմազանությունը։

Պարտիայի ու կառավարության կողմից կիրառվող ձեռնարկումները լիովին համապատասխանում են սոցիալիստական տնտեսավարման լենինյան սկզբունքին, որի անսասան հիմքը դեմոկրատական ցենտրալիզմն է։

Դեմոկրատական ցենտրալիզմը միաժամանակ նշանակում է ամենաուշադիր և բազմակողմանի կերպով հաշվի առնել տեղական փորձն ու պայմանները, ակտիվորեն պաշտպանել ու խրախուսել տեղական կազմակերպությունների ու միլիոնավոր մասսաների ստեղծագործական նախաձեռնությունն ու ակտիվությունը։

Այդ իմաստով բացառիկ նշանակություն ունի ազգային ռեսպուբլիկաների իրավունքների ընդլայնումը և տնտեսական ղեկավարման գործում նրանց դերի բարձրացումը, որ հնարավորություն է տալիս անշեղորեն իրականացնել

լենինյան ազգային քաղաքականությունը տնտեսական շինարարության գործում, արագացնել երկրի արտադրողական ուժերի զարգացումը:

Միութենական ռեսպուբլիկաների իրավունքների ընդլայնման գործում քաղաքական մեծ նշանակություն ունեն Գերագույն Սովետի ընդունած օրենսդրական ակտերը՝ «Մարզային, երկրամասային, վարչա-տերիտորիալ կառուցվածքի հարցերի լուծումը միութենական ռեսպուբլիկաների իրավասությանը հանձնելու մասին» և «Միութենական ռեսպուբլիկաների դատարանակազմության օրենսդրությունը, քաղաքացիական, քրեական ու դատավարական օրենքների ընդունումը միութենական ռեսպուբլիկաների իրավասությանը հանձնելու մասին»:

Այս օրենքները սերտորեն կապված են պարտիայի ազգային քաղաքականության իրականացման հետ և նպատակ ունեն է՛լ ավելի ամրապնդելու մեր սովետական բազմազգ պետությունը և ՍՍՌՄ ժողովուրդների բարեկամությունը:

Կոմունիստական պարտիայի և Սովետական Կառավարության այս նոր միջոցառումները կապահովեն միութենական ռեսպուբլիկաների սուվերեն իրավունքների ամրապնդումը, նրանց էկոնոմիկայի ու կուլտուրայի բուռն զարգացումը: Նրանք ուղղված են տնտեսական ղեկավարության և պլանավորման բնագավառում գոյություն ունեցող լուրջ թերությունները վերացնելու նպատակին:

Միաժամանակ չի կարելի աչքաթող անել այն հանգամանքը, որ ինչպես ՍՍՌՄ-ի, նույնպես և յուրաքանչյուր ռեսպուբլիկայի հաջող զարգացման կարևորագույն պայմանը մեր երկրի բոլոր ժողովուրդների կուռ համագործակցությունն է՝ կոմունիստական շինարարության մեծ խնդիրները լուծելու համար: Անհրաժեշտ է, որ տնտեսական և պլանային օրգաններն անդուլ կերպով կատարելագործեն ժողովրդական տնտեսության պլանային ղեկավարությունը, ուշադիր կերպով հաշվի առնեն մեր երկրի տնտեսական պահանջմունքներն ամբողջովին և յուրաքանչյուր միութենական ռեսպուբլիկայինը առանձին, հաշվի առնեն տնտեսության և կուլտուրայի զարգացման հեռանկարները, իր ժամանակին նկատեն և ակտիվ աջակցություն ցույց տան այն նորին ու առաջավորին, որը ծագում է ռեսպուբլիկաների կյանքում:

ՍՄԿՊ XX համագումարը անդրադառնալով ազգային քաղաքականության զարգացման հարցերին, ընդգծելով ազգային ռեսպուբլիկաների տնտեսական և կուլտուրական շինարարության բնագավառում նրանց իրավունքների ընդարձակման անհրաժեշտությունը, միաժամանակ բացահայտեց ազգային քաղաքականության պրակտիկայի թերությունները և նշեց դրանց վերացման ուղիները: ՍՄԿՊ ԿԿ-ի 1957 թվականի Փետրվարյան պլենումը միանգամայն ճիշտ նշեց, որ «Արդյունաբերության ու շինարարության օպերատիվ կառավարման ծանրության կենտրոնը պետք է փոխադրվի տեղերը»:

Ինչպես նշված է ՍՍՌՄ Գերագույն Սովետի յոթերորդ սեսիայում ընկ. Ն. Ս. Խրուշչովի տված զեկուցման մեջ, արդյունաբերության ու շինարարության կառավարման վերակառուցումն ունի հսկայական նշանակություն միութենական ռեսպուբլիկաների տնտեսական շինարարության ղեկավարման իրավունքների ընդլայնման գործում: Ռեսպուբլիկաների իրավունքների ընդլայնումը թույլ կտա ավելի ճիշտ լուծել յուրաքանչյուր տնտեսական-վարչական շրջանի տնտեսության կոմպլեքսային զարգացման հարցերը:



Հսկայական տնտեսական նշանակության հետ մեկտեղ, նախատեսվող միջոցառումներն ունեն նաև առաջնակարգ քաղաքական նշանակություն, քանի որ դրանք նշանակում են լենինյան ազգային քաղաքականության կիրառման մի նոր խոշոր քայլ, որը նախապատրաստված է սոցիալիստական շինարարության ամբողջ ընթացքով: Տնտեսական շինարարության ասպարեզում ռեսպուբլիկաներին տրվող լայն իրավունքները կնպաստեն մասսաների նախաձեռնության ու ստեղծագործական ակտիվության էլ ավելի ուժեղ զարգացմանը, Սովետական Միության բոլոր ազգերի և ժողովուրդների նյութական ու հոգևոր ուժերի ծաղկմանը, մեր երկրի ժողովուրդների ու բարեկամության հետագա ամրապնդմանը:

ՍՄԿՊ ազգային քաղաքականությունը ելակետ ունի լենինյան այն դրույթը, որ բոտամենայնի պետք է զարգացնել ժողովուրդների ձևով ազգային, բովանդակությամբ սոցիալիստական կուլտուրան: Պարտիայի քաղաքականության հետևողական կիրառումն ապահովեց կուլտուրայի ծաղկումը ազգային ռեսպուբլիկաներում: Հայ ժողովրդի ռևոլյուցիոն բոցաշունչ գործիչները՝ Ստ. Շահումյանը, Ս. Սպանդարյանը, Ա. Մյասնիկյանը և շատ ուրիշներ, մըշտապես հաղորդակից են եղել ռուսական առաջադեմ կուլտուրային, սիրել են նրա լեզուն, ընդօրինակել են բոլոր այն լավագույնը, որ տվել է ռուս ժողովուրդը: Սակայն, նրանք միաժամանակ ներարկել են հայ ժողովրդին լենինիզմի գաղափարները նրան հասկանալի՝ հայերեն լեզվով: Այդ նրանք էին, որ լինելով մեծ ինտերնացիոնալիստներ, հայ ժողովրդի բախտն առհավետ կապեցին ռուս ժողովրդի հետ: Մեզանից յուրաքանչյուրը պետք է հետևի նրանց օրինակին: Երբեք չպետք է մոռանալ Վ. Ի. Լենինի իմաստուն ցուցումն այն մասին, որ «...հարկավոր է մտցնել խստագույն կանոններ ազգային լեզուն մեր Միության մեջ մտնող այլազգի ռեսպուբլիկաներում գործադրելու նկատմամբ...» (Վ. Ի. Լենին, «Ազգությունների կամ «Ավտոնոմիզացիայի» հարցի շուրջը», Հայպետհրատ, 1956 թ., էջ 28): Մինչդեռ որոշ հիմնարկձեռնարկություններում հաճախ խախտվում է պետական լեզվի կիրառումը:

Կարևոր է ոչ միայն ճիշտ ըմբռնել պարտիական որոշումները, այլև դրանք ժամանակին և վճռականորեն կիրառել կյանքում, հավատարիմ մնալ լենինյան ազգային քաղաքականությանը, որն ամրապնդում է սովետական բազմազգ պետությունը և ՍՍՌՄ ժողովուրդների բարեկամությունը: Նա ապահովում է աշխատավորների սովետական հայրենասիրության և ինտերնացիոնալիզմի ոգով դաստիարակությունը, անհաշտ պայքարը բուրժուական նացիոնալիզմի դեմ:



ՍՍՌՄ-ում հաղթանակած Կոմունիստական պարտիայի լենինյան ազգային քաղաքականությունը, նրա ուսանելի փորձը ներկայումս չի կարելի անջատել ամբողջ աշխարհի և հատկապես սոցիալիզմի լագերի ժողովուրդների հետ ունեցած եղբայրական համագործակցության ու ինտերնացիոնալիստական կապերի ամրապնդման ընդհանուր հարցից:

Սովետական Միության և ժողովրդական դեմոկրատիայի երկրների միջև հաստատվել է ժողովուրդների համագործակցության նոր տիպ, որը խարսխվում է սուվերենության, անկախության, տերիտորիալ անձեռնմխելիու-

*թյան, իրավահավասարության փոխադարձ հարգանքի և ներքին գործերին չմիջամտելու սկզբունքների վրա:*

*Սոցիալիզմի երկրների եղբայրական բարեկամությունը նրանց ամենահաղթ ուժի աղբյուրն է: Այդ բարեկամության սկզբունքներն են նպատակների ընդհանրությունը, այդ նպատակներին հասնելու համար կիրառվող տնտեսական-քաղաքական և կուլտուրական համագործակցությունը:*

*Աշխարհի ժողովուրդները ՍՍՌՄ-ն համարում են մարդկության առաջընթացը լուսավորող փարոս: Նրանք Սովետական Միության մեջ տեսնում են ազգերի իսկական համագործակցության և իրավահավասարության մարմնացումը, ժողովուրդների բարեկամության, խաղաղության ու ամենաբարձր հումանիստական իդեաների դրոշակակիրն ու նեցուկը, ժողովուրդների ազատության և ազգային անկախության անառիկ ամրոցը:*

*Մեր երկրի քառասունամյա պատմությունը լիովին հաստատեց, որ ՍՍՌՄ ժողովուրդների անխախտ բարեկամությունը սովետական պետական կարգի հզորության հիմքն է, պրոլետարական ինտերնացիոնալիզմի մարմնացումը, Կոմունիստական պարտիայի լենինյան ազգային քաղաքականության խոշորագույն նվաճումը:*

---

# ՍՍՌՄ ԷԼԵԿՏՐԻՖԻԿԱՑՄԱՆ ԼԵՆԻՆՅԱՆ ՊԼԱՆԻ ԻՐԱԿԱՆԱՑՈՒՄԸ

*ԱԼ. ՀՈՎՍԵՓՅԱՆ*

*Մեր ամբողջ ժողովրդական տնտեսության զարգացման առաջին պետական պլանը Սովետների VIII համամիութենական համագումարում (1920 թվականի դեկտեմբերի 29-ին) հաստատված ԳՈԷԼՌՈ-ի պլանն էր, որի մեջ մարմնացել էին սովետական էներգետիկայի զարգացման վերաբերյալ լենինյան վսեմ գաղափարները:*

*ԳՈԷԼՌՈ-ի պլանով նախատեսվում էր վերակառուցել եղած էլեկտրակայանները և կառուցել 30 նոր շրջանային էլեկտրակայաններ՝ 1750 հազար կիլովատ ընդհանուր հզորությամբ: Բայց ԳՈԷԼՌՈ-ի պլանը սոսկ սովետական էներգետիկայի զարգացման ընդհանուր պլանը չէր: Այնտեղ տրված էին երկրի տեխնիկական վերազինման գիտական հիմունքները: Վ. Ի. Լենինի ցուցումով այդ վերազինումը պետք է տեղի ունենար էլեկտրիֆիկացման հիման վրա:*

*ԳՈԷԼՌՈ-ի պլանը Սովետների համամիութենական համագումարում քըննարկելու օրերին, այսինքն Սովետական Ռուսաստանի ժողովրդական տնտեսության էլեկտրիֆիկացման արշալույսին, Լենինն ասում էր. «Կոմունիզմը — դա Սովետական իշխանությունն է պլյուս ամբողջ երկրի էլեկտրիֆիկացիան... միայն այն ժամանակ, երբ էլեկտրիֆիկացվի ամբողջ երկիրը, երբ արդյունաբերությունը, գյուղատնտեսությունն ու տրանսպորտը դրվեն ժամանակակից խոշոր արդյունաբերության տեխնիկական բազայի վրա, միայն այն ժամանակ մենք կհաղթենք վերջնականապես» (Երկեր, հատ. 31, էջ 654):*

*Վ. Ի. Լենինը ուսուցանում էր, որ «Էլեկտրիֆիկացիան կվերածնի Ռուսաստանը: Էլեկտրիֆիկացիան սովետական կարգի հիման վրա կստեղծի մեր երկրում կոմունիզմի հիմունքների, առանց շահագործողների, առանց կապիտալիստների, առանց կալվածատերերի, առանց վաճառականների կուլտուրական կյանքի հիմունքների վերջնական հաղթանակը» (Վ. Ի. Լենին, Երկեր, հատ. 30, էջ 468):*

*Էլեկտրիֆիկացման լենինյան պլանի էությունը հետևյալն է՝*

*1. Բարձրագույն տեխնիկայի և էլեկտրիֆիկացման բազայի վրա արտադրողական ուժերի հզոր զարգացումը որոշող վճռական ուժը այն նոր արտադրական հարաբերություններն են, որ առաջացել են սովետական կարգերի հաստատումից հետո:*

*2. Մեքենայական խոշոր արդյունաբերության ստեղծումը, որն ընդունակ լինի վերակազմելու նաև գյուղատնտեսությունը, սոցիալիստական կարգերի հաղթանակի անհրաժեշտ պայմանն է:*

*3. Էլեկտրիֆիկացումը սոցիալիստական ինդուստրացման, մեքենայական*

*խոշոր արդյունաբերական բազայի տեխնիկական հիմքն է, ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերի տեխնիկական նորագույն հիմքը:*

*Սոցիալիստական շինարարության հարուստ փորձը փայլուն կերպով արդարացրեց էլեկտրիֆիկացման տեխնիկական պրոգրեսի վերաբերյալ Վ. Ի. Լենինի մշակած պլանը:*

*1957 թվականին լրանում է ԳՈԷԼՌՈ-ի պլանի ընդունման 37-րդ տարեդարձը: 1920 թվականին, երբ կազմվեց և հաստատվեց այդ պլանը, երկրի էլեկտրակայանների հզորությունը հաշվվում էր կես միլիարդ կիլովատ ժամով: Ընթացիկ տարում կարտադրվի 212,2 միլիարդ կիլովատ ժամ էլեկտրաէներգիա, այսինքն՝ 425 անգամ ավելի, քան 1920 թվականին: Էլեկտրաէներգիայի արտադրության տեսակետից ցարական Ռուսաստանը աշխարհում գրավում էր 13-րդ տեղը, իսկ 1929 թվականին Սովետական Միությունը դեռևս գրավում էր 11-րդ տեղը:*

*Նախապատերազմյան տարիներին Սովետական Միությունը էլեկտրաէներգիայի արտադրության գծով գրավեց 3-րդ տեղը, իսկ այժմ գրավում է 2-րդ տեղը, զիջելով միայն ԱՄՆ-ին: Էներգետիկայի զարգացման տեմպերի տեսակետից Սովետական Միությունը հաստատուն կերպով գրավում է առաջին տեղը ամբողջ աշխարհում:*

*Սովետական Միությունը կարողացավ ձեռք բերել այդ հաջողությունները, հաղթահարելով այն ծանր հետևանքները, որ հասցրել էր պատերազմը սովետական էներգետիկային: Բավական է ասել, որ թշնամու կողմից ժամանակավորապես օկուպացված շրջաններում ոչնչացված էլեկտրակայանների ընդհանուր կարողությունը շուրջ 5 միլիոն կիլովատ էր, որը կազմում էր 1940 թվականին գործող էլեկտրակայանների ամբողջ հաստատված կարողության մոտ 45 տոկոսը:*

*ՍՍՌՄ-ում էլեկտրիֆիկացիայի զարգացման հետևանքով մեծ վերափոխություններ տեղի ունեցան ժողովրդական տնտեսության տեխնիկայում և էկոնոմիկայում, առաջին հերթին ծանր արդյունաբերության մեջ: Անհամեմատ բարձրացավ աշխատանքի արտադրողականությունը, բնակչության նյութական և կուլտուրական կյանքի մակարդակը:*

*Վ. Ի. Լենինը ուսուցանում էր, որ երկրի էլեկտրական հզորության զարգացումն ապահովելու համար հարկավոր է շարունակ ընդլայնել էլեկտրակայանների էներգետիկ բազան:*

*Հետևելով Վ. Ի. Լենինի ցուցումներին, սովետական էներգետիկները հսկայական աշխատանք կատարեցին տեղական ցածրորակ վառելանյութի զանազան տեսակները յուրացնելու ուղղությամբ: Վառելանյութի այդ տեսակները երկար ժամանակ չէին օգտագործվում, որովհետև մինչև վերջերս էլ մշակված չէր ցածրորակ վառելանյութի այրման տեխնիկան:*

*Ներկայումս մշակված և յուրացված են վառելանյութի ավելի քան 60 տեսակների այրման ռացիոնալ մեթոդները: Վառելանյութի այդ տեսակները ունեն տարբեր հատկություններ՝ մեծ խոնավություն (մինչև 55 տոկոս), մեծ մոխրայնություն (մինչև 60 տոկոս չոր մասսա), ծծմբի մեծ պարունակություն և այլն:*

*Սովետական էներգետիկները հասան այն բանին, որ էլեկտրաէներգիայի մոտ երեք քառորդը արտադրվում է տեղական վառելանյութի բազայի վրա:*

*Յուրացնելով ցածրորակ վառելանյութի տեղական տեսակները, սովետական էներգետիկները զգալիորեն ընդլայնեցին ջերմաէներգետիկայի զարգացման էներգետիկ բազան, որը հսկայական նշանակություն ունի ժողովրդական տնտեսության համար: Կարելի է այսպիսի մի օրինակ բերել. անտրացիտի հանույթի ժամանակ ստացվում է մինչև 20 տոկոս մանրածուխ, որը կոչվում է անտրացիտային շտիբ: Երկար ժամանակ այդ մանրածուխը չէր օգտագործվում և նրա հսկայական կույտերը մեծ տարածություններ էին զբաղեցնում:*

*Արդեն առաջին հնգամյակում սովետական էներգետիկները գտան այդ անտրացիտային շտիբի այրման եղանակը, որի շնորհիվ այդ մանրածուխը, որն անցյալում հսկայական վնաս էր պատճառում ժողովրդական տնտեսությանը, այժմ դարձավ էներգիայի խիստ օգտակար մի աղբյուր: Անտրացիտային շտիբը ավելորդ նյութից դարձավ վառելանյութի հիմնական տեսակներից մեկը Հարավի, Կենտրոնի և Պովոլժյեի էլեկտրակայաններում:*

*Սովետական Միության էներգետիկ բազայի ընդլայնումը գործի դեռ միայն մի կողմն է: Գործի մյուս կողմը, ինչպես ուսուցանում էր Վ. Ի. Լենինը, վառելանյութի առավելագույն խնայողական օգտագործումն է էլեկտրաէներգիայի արտադրության ժամանակ: Ջերմային էլեկտրակայանները հանդիսանում են էլեկտրաէներգիայի հիմնական արտադրողները մեր երկրում: Այդ էլեկտրակայանների խնայողաբերության բարձրացման հզոր գործոն է հանդիսանում սկզբնական բարձր ճնշումների և ջերմաստիճանների գոլորշու արմատավորումը: Սովետական էներգետիկները մեծ հաջողությունների են հասել այդ բնագավառում: Առաջին հնգամյակին նախորդող տարիներին սովետական գործարաններում պատրաստած տուրբինների և էլեկտրագեներատորների հզորությունը չէր անցնում 10 հազար կիլովատից: Սարքավորումը ուներ 13—16 մթնոլորտային ճնշման սկզբնական պարամետրեր՝ գոլորշու ջերմաստիճանն էլ 325—350 աստիճան էր ցելսիուսով:*

*Հետպատերազմյան տարիներին սովետական գործարաններում սերիական արտադրության հանձնվեցին մեկ ժամում 230 տոննա գոլորշի արտադրող կաթսաներ: Կոնդենսացիոն տուրբոգեներատորների հզորությունը կազմում է 100 հազար կիլովատ (գոլորշու սկզբնական 90 մթնոլորտային ճընշումով, 480—500° ջերմաստիճանով):*

*Մոսկվայի էներգետիկ սիստեմի մեջ մտնող Չերեպետսկի էլեկտրակայանում ագրեգատների հզորությունը կազմում է յուրաքանչյուրինը 150 հազար կիլովատ, գոլորշու սկզբնական պարամետրերը 170 մթնոլորտային ճնշում ունեն և 550° ջերմաստիճան:*

*Ջերմային էլեկտրակայաններում լայնորեն ավտոմատացում է կիրառվում: Կաթսաների երեք քառորդից ավելին (ըստ կարողության) սարքավորված է այդպիսի ավտոմատներով, 90 տոկոսից ավելին՝ ջուր մատակարարող ավտոմատներով: Ջերմային էլեկտրակայաններում սկզբնական բարձր ճընշումների գոլորշու ու ջերմաստիճանների արմատավորումը, ինչպես նաև արտադրական պրոցեսների ավտոմատացումը զգալիորեն բարձրացրին այդ էլեկտրակայանների արտադրողականությունը: Բավական է ասել, որ ներկայումս մեկ կիլովատ ժամ էլեկտրաէներգիա արտադրելու վրա երկու անգամ ավելի քիչ վառելանյութ է ծախսվում, քան 1913 թվականին:*

*Վեցերորդ հնգամյակի դիրեկտիվներում սովետական էներգետիկների առջև խնդիր է դրված տուրբոգեներատորների արտադրության բնագավառում*

հասնել արտասահմանյան լավագույն օրինակներին։ Այսպես, ԱՄՆ-ում 150 հազար կիլովատանոց բազմաթիվ տուրբինների կողքին աշխատում են նաև 200 հազար կիլովատ հզորություն ունեցող մի քանի տուրբոգեներատորներ։ Ներկայումս պատրաստվում է 250 հազար կիլովատանոց տուրբին։ ՍՄԿՊ XX համագումարի դիրեկտիվների համաձայն վեցերորդ հնգամյակում պետք է յուրացվեն և արդյունաբերական շահագործման հանձնվեն 200 հազար կիլովատ հզորություն ունեցող տուրբինային բլոկներ, որոնցում գոլորշու ճնշումը կկազմի 220 մթնոլորտ՝ 600° ջերմաստիճանի դեպքում։ Նույն այս վեցերորդ հնգամյակում պետք է շահագործման հանձնվեն 300 հազար կիլովատ հզորությամբ տուրբինային բլոկներ, որոնցում գոլորշու ճնշումը կկազմի մինչև 300 մթնոլորտ՝ 650° ջերմաստիճանով։

Լենինգրադի Մետաղագործական գործարանը արդեն Համամիութենական արդյունաբերական ցուցահանդես է հանել նոր, հզոր գործող տուրբինների մակետներ։ Հատկապես հետաքրքրաշարժ է Բրատսկի ԳԷՍ-ի համար պատրաստված հիդրոտուրբինը և «ПВК—200» շոգետուրբինը։ Բրատսկի հիդրոտուրբինը ամբողջ աշխարհում կլինի ամենամեծը. նրա հզորությունը կազմելու է 204 հազար կիլովատ։ Այդ կերպ սառած այդպիսի մեքենան երկու անգամ հզոր է լինելու, քան Կույբիշևգէսի տուրբինը և իր հսկայական հզորությամբ հանդերձ, իր ընդհանուր չափերով նույնպիսի մեծություն կունենա, ինչ որ Դնեպրոգէսի տուրբինը։

Հայրենական էներգամեքենաշինական նորություններից է նաև «200» ջերմատուրբինը, որի հզորությունը հավասար է 200 հազար կիլովատի։ «ПВК—200» տուրբինի պատրաստումն արդեն սկսվել է։

Ջերմաէներգետիկայի տնտեսական էֆեկտիվության բարձրացման մյուս եղանակը արդյունաբերության և քաղաքների ջերմաֆիկացման զարգացումն է։ Ջերմաֆիկացումը — դա էլեկտրաէներգիայի և ջերմության կոմբինացված արտադրությունն է տեխնիկական կարիքների ու ջեռուցման համար։ Ջերմային էլեկտրակայանների ամբողջ կարողության մեջ ջերմաֆիկացիոն մեքենաների տեսակարար կշիռը արդեն հասել է մոտ 30 տոկոսի։

Վ. Ի. Լենինը նշում էր նաև ածխի ստորերկրյա գազիֆիկացման լայն արմատավորման անհրաժեշտությունը։ Ածխի ստորերկրյա գազիֆիկացումը բազմաթիվ լեռնագործներին կազատի քարածխի հանույթի շատ ծանր աշխատանքներից։ Ստորերկրյա գազիֆիկացման գործը մի փոքր ուշանում է։ Գազով աշխատող տուրբինների յուրացումից հետո նշանակալիորեն կբարձրանա ածխի ստորերկրյա գազիֆիկացման նշանակությունը։ Գազատուրբինային առաջին էլեկտրակայանները կսկսեն աշխատել վեցերորդ հնգամյակում։

Մեր երկիրն ունի աշխարհում ամենահարուստ ջրային էներգիայի պաշարներ։ Բավական է ասել, որ ՍՍՌՄ ջրային էներգիայի պոտենցիալ ռեսուրսների հզորությունը 300 միլիոն կիլովատից ավելի է, այսինքն՝ 3,5 անգամ ավելի, քան ԱՄՆ-ինը։ Վ. Ի. Լենինը մատնանշում էր այդ էներգետիկ ռեսուրսների, այսինքն՝ սպիտակ ածխի լայն յուրացման անհրաժեշտությունը։ Նա ուսուցանում էր, որ մշտապես վերանորոգվող անսպառ էներգետիկ ռեսուրսների օգտագործումը սոցիալիստական էներգետիկայի զարգացման օրինաչափություններից մեկն է, որովհետև հիդրոկայանները ամենից ավելի համապատասխանում են սոցիալիստական և կոմունիստական հասարակության տեխնիկային առաջադրած պահանջներին։ Հիդրոկայանների մյուս մեծ



առավելությունն այն է, որ նրանք անհամեմատ ավելի հեշտորեն են կոմպլեքսային ավտոմատացման ենթարկվում։ Ներկայումս ավտոմատացված են գրեթե բոլոր հիդրոկայանները։ Հիդրոկայանների երկու երրորդը հեռուստային կառավարում ունի։ Տարեց-տարի բարձրանում է հիդրոէներգիայի տեսակարար կշիռը էլեկտրական էներգիայի ընդհանուր արտադրության մեջ։ Հիդրոկայանների այդ տեսակարար կշիռը 1913 թվականին զրոյի էր հավասար։ 1940 թվականին այն կազմեց 10,5 տոկոս, իսկ ընթացիկ 1957 թվականին կկազմի 16,2 տոկոս։ Վեցերորդ հնգամյակի վերջերին հիդրոէներգիայի արտադրությունը երկրում կկազմի 59 միլիարդ կիլովատ ժամ, այսինքն՝ երկրի ընդհանուր էներգետիկ բալանսի 18,5 տոկոսը։

Հիդրոէներգիայի արտադրության աճման հետ մեկտեղ, աճում են նաև կառուցվող հիդրոէլեկտրակայանների հզորությունները, ինչպես նաև կատարելագործվում են հիդրոագրեգատները։ Սովետական հիդրոէներգետիկայի առաջնեկի՝ Վոլխովի հիդրոէլեկտրակայանի հզորությունը կազմում էր 64 հազար կիլովատ, իսկ մեկ ագրեգատինը՝ 16 հազար կիլովատ։

Ստալինգրադի հիդրոկայանի հզորությունը կազմում է 2300 հազար կիլովատ, իսկ մեկ ագրեգատինը՝ 105 հազար կիլովատ։ Վեցերորդ հնգամյակում նախագծվում է սկսել Կրասնոյարսկի հիդրոկայանի կառուցումը, որի հզորությունը կկազմի 3200 հազար կիլովատ, իսկ մեկ ագրեգատինը՝ 250—300 հազար կիլովատ։

Հիդրոագրեգատների հզորության ավելացումը զգալիորեն իջեցնում է կապիտալ ներդրումների և շահագործման ծախսերի գումարը, նպաստում է հիդրոէլեկտրակայանի օգտակար գործողության գործակցի բարձրացմանը։

Սոցիալիստական պլանային տնտեսությունը ստեղծել է բոլոր պայմանները մեր երկրի ջրային ռեսուրսների ռացիոնալ օգտագործման համար։ Մեր ջրային ռեսուրսների ռացիոնալ օգտագործումը ապահովվում է այն բանով, որ հիդրոտեխնիկական բոլոր կառուցումները (ամբարտակները, ջրաբաշխիչ հարմարանքները, ջրամբարները, ջրանցքները) կոմպլեքսային կերպով են օգտագործվում և միաժամանակ սպասարկում են ժողովրդական տնտեսության տարբեր ճյուղերը (էներգետիկան, տրանսպորտը, ոռոգումը և ջրամատակարարումը)։

Ջրերի կոմպլեքսային օգտագործումը կապահովի ժողովրդատնտեսական մեծ էֆեկտի ստացումը հիդրոտեխնիկական կառուցումներից, և այն էլ ոչ թե մեկ, այլ մի ամբողջ շարք ճյուղերում։ Դեռևս ԳՈԷԼՌՈ-ի պլանում Վ. Ի. Լենինը մատնանշել է սոցիալիստական պլանային տնտեսության պայմաններում միացյալ էներգետիկ սիստեմի, այն է՝ տարբեր տեղերում տեղավորված էլեկտրակայանների միավորման անվիճելի առավելությունները։

Էներգետիկ սիստեմների միավորումը տնտեսական մեծ էֆեկտ է տալիս։ Հիդրոկայանների ու ջերմային կայանների համատեղ աշխատանքի դեպքում բարենպաստ պայմաններ են ստեղծվում ժողովրդական տնտեսության կարիքները ամենախնայողական կերպով բավարարելու համար։ Էներգետիկ սիստեմների միավորումը առավել մեծ տնտեսական էֆեկտ է տալիս այն ժամանակ, երբ մի միասնական էներգետիկ սիստեմի մեջ միավորվում են հիդրոլոգիական տարբեր ռեժիմներ ունեցող գետերի վրա տեղավորված հիդրոկայանները, այդ դեպքում նվազում են ջրամբարների կառուցման ծախսերը։ Էներգե-

տիկ սիստեմների միավորումը պայմաններ է ստեղծում առանձին ագրեգատների հզորության բարձրացման համար։

Վերջապես, էներգետիկ սիստեմների միավորումից հետո էներգամատակարարումը շատ ավելի հուսալի է դառնում, իսկ հաստատուն հուսանելի էլեկտրական հոսանքը նվազեցնում է միավորված էներգետիկ սիստեմի անհրաժեշտ վթարային ռեզերվի մեծությունը։ Դրա շնորհիվ նվազում են էներգետիկ սիստեմի զուգահեռ հզորությունները, իսկ դա էլ անխուսափելիորեն և մեծ չափով խնայում է կապիտալ ներդրումները։

Մեր երկրի հիմնական շրջաններում դեռ նախապատերազմյան տարիներին սկսվել էր մի շարք էներգետիկ սիստեմների միավորումը։ Պատերազմից հետո էներգետիկ հզոր միավորումներ ստեղծվեցին Ուրալում, Կենտրոնում և Հարավում։ ՍՍՌՄ Եվրոպական մասի միասնական էներգետիկ սիստեմի առաջին հերթը, ՍՄԿՊ XX համագումարի որոշման համաձայն, շահագործման կհանձնվի արդեն այս հնգամյակում։ Կույբիշևի և Ստալինգրադի հիդրոկայանները կմիացվեն Կենտրոնի, Հարավի և Ուրալի էներգետիկ սիստեմների հետ։ Աշխատանքներ են տարվելու Կենտրոնական Սիբիրի (Նովոսիբիրսկից մինչև Իրկուտսկ) մեկ միասնական էներգետիկ սիստեմ ստեղծելու ուղղությամբ։ Կմիացվեն նաև Անդրկովկասի էներգետիկ սիստեմները։

Վ. Ի. Լենինը ուսուցանում էր, որ սոցիալիստական իրավակարգի արդյունաբերության առաջավոր տեխնիկայի զարգացման գործում բացառիկ նշանակություն ունի ամբողջ ժողովրդական տնտեսության էլեկտրիֆիկացումը։ Ներկայումս Սովետական Միության արդյունաբերությունը սպառում է երկրում արտադրվող ամբողջ էլեկտրաէներգիայի մոտ 70 տոկոսը։ Վեցերորդ հնգամյակի վերջում արդյունաբերությունը կրկնակի չափով էլեկտրաէներգիա կսպառի, այսինքն՝ մոտավորապես 250 միլիարդ կիլովատ ժամ։

Տեխնիկայի զարգացման արդի մակարդակը ստեղծել է այնպիսի դրություն, որ ամեն տեսակ արդյունաբերական արտադրանքի արտադրության գործում վճռական նշանակությունը պատկանում է էլեկտրական էներգիային։ Այսպես, օրինակ, մեկ տոննա քարածուխ ստանալու համար անհրաժեշտ է մոտ 25 կիլովատ ժամ էլեկտրական էներգիա, մեկ տոննա նավթի համար՝ 30 կիլովատ ժամ, մեկ տոննա պողպատ արտադրելու համար՝ մոտ 200, մեկ տոննա ցեմենտի համար՝ ավելի քան 100, մեկ մարդատար մեքենա արտադրելու համար՝ ավելի քան 1500, մեկ տրակտոր արտադրելու համար՝ 5000, ջերմաքարշ արտադրելու համար՝ 6000, մեկ քառամատոռ ինքնաթիռ արտադրելու համար՝ ավելի քան 100 հազար կիլովատ էլեկտրական էներգիա։

Արդյունաբերության տեխնիկական պրոգրեսի որոշիչ ուղղությունը էլեկտրատեխնոլոգիայի զարգացումն է։ Էլեկտրատեխնոլոգիայի բազայի վրա հնարավոր է դառնում առավելագույն ինտենսիֆիկացիայի ենթարկել արտադրական պրոցեսները և ստանալ արտադրանքի այնպիսի որակ, որպիսին անհնարին է ստանալ այլ էներգետիկ բազայի վրա։

Ժողովրդական տնտեսության զարգացման հնգամյա պլանի վերաբերյալ դիրեկտիվներում մեծ նշանակություն է տրված ժողովրդական տնտեսության համար կարևոր նշանակություն ունեցող մետաղագործական և քիմիական արդյունաբերության զարգացմանը։ Բայց այդ դիրեկտիվը կենսագործելու համար պահանջվում է տասնյակ միլիարդավոր կիլովատ ժամ էլեկտրական էներգիա։ Այսպես, օրինակ, մեկ տոննա երկաթաձուլվածք արտադրելու համար պահանջվում է մոտ 5000, մեկ տոննա կալցիումի կարբիդ արտադրելու համար՝ 2700, էլեկտրոլիզային ամիակի համար՝ 12 հազար, ալյումինի համար՝ 18 հազար, մագնիումի համար՝ 30 հազար կիլովատ ժամ էլեկտրական էներգիա։



Տեխնիկական պրոգրեսը սերտորեն առնչված է մեխանիկական արագությունների, բարձր ճնշումների, մեխանիկական ու էլեկտրական բարձր լարումների, բարձր ջերմաստիճանների և քիմիական ռեակցիաների արագացումների հետ։ Դրա համար պահանջվում են թեթև և հազվագյուտ մետաղներ, որակյալ պողպատ, հատուկ ձուլվածքներ։ Բայց արտադրանքի այդ նոր տեսակները բացառիկ չափով շատ էլեկտրական էներգիա են սպառում, որոշ դեպքերում մեկ տոննա արտադրանքի համար տասնյակ հազարավոր կիլովատ ժամեր։

ՍՄԿՊ XX համագումարը արդյունաբերության առջև դրեց հսկայական կարևորություն ունեցող մի նոր խնդիր՝ ամեն կերպ զարգացնել ցեխերի և ձեռնարկությունների տեխնոլոգիական պրոցեսների ավտոմատացումը։

Տեխնիկայի զարգացման արդի մակարդակը մաթեմատիկական բարդ հաշվումների համար պահանջում է արագ հաշվող ավտոմատիկ մեքենաներ, իսկ արտադրական պրոցեսի ավտոմատիկ ղեկավարման համար՝ հաշվող մաթեմատիկական մեքենաներ։ Ավտոմատ մեքենաների ստեղծման բնագավառում էլեկտրիֆիկացումը հսկայական դեր ունի։ Ավտոմոբիլի շարժիչների պոմպեր պատրաստող ավտոմատ գործարանում, միայն մեկ շարքում դրված են մոտ 1500 էլեկտրական մեքենա և ապարատ։ Աշխատանքի մեկ ժամում էլեկտրական շղթայի միացումների թիվը կազմում է մի քանի հարյուր հազար։ Բլյումինգի կառավարումը պահանջում է մեկ ժամում հազարից մինչև երկու հազար միացում մոտ 6000 կիլովատտ հզորություն ունեցող շարժիչում։ Պտտատակահատ և ակոսող հաստոցները երբեմն պահանջում են մեկ ժամում երեք հազար միացում և վերամիացում։ Էլեկտրաավտոմատիկայի վիթխարի առավելությունն այն է, որ նա հնարավորություն է տալիս հեռու տարածությունից կառավարել ցանկացած հզորության ագրեգատները։

Արտադրական պրոցեսների հետագա ավտոմատացման հնարավորությունները զգալիորեն ավելացել են էլեկտրատեխնիկայի նոր ճյուղի՝ էլեկտրոնիկայի զարգացման կապակցությամբ։ Էլեկտրոնային տեխնիկան հնարավորություն է տալիս արտադրությունը վերահսկելու ու կառավարելու համար օգտագործել նաև ջերմային ու լուսային էֆեկտները։

Ինչպես տեսնում ենք, արդյունաբերության տեխնիկական պրոգրեսը տանում է դեպի էլեկտրական էներգիայի վիթխարի ծախսում և առնչված է էլեկտրակայանների շինարարության արագ տեմպերի հետ։ Հենց այդ բանն էլ նկատի առնելով, ՍՄԿՊ XX համագումարի դիրեկտիվները նախատեսում են արդյունաբերական արտադրանքը 1955 թվականի համեմատությամբ ավելացնել 65 տոկոսով, իսկ էլեկտրական էներգիայինը՝ 88 տոկոսով։

Վ. Ի. Լենինը իր աշխատություններում առանձնապես մեծ նշանակություն է տվել գյուղատնտեսության մեքենայացմանը և էլեկտրիֆիկացմանը։ Վ. Ի. Լենինի ցուցումները իրենց կենսագործումն են գտել ՍՄԿՊ XX համագումարի որոշումներում, որտեղ, ինչպես հայտնի է, մեծ տեղ է տրված նաև գյուղատնտեսության զարգացմանը։ 1960 թվականին հացահատիկի համախառն արտադրանքը պետք է հասցվի 180 միլիոն տոննայի։ Տեխնիկական

կուլտուրաների, կարտոֆիլի, բանջարեղենի և անասնաբուծության մթերքների արտադրությունը պետք է ավելացվի երկու և ավելի անգամ: Գյուղատնտեսության զարգացման այս հոյակապ ծրագիրը կենսագործելու համար անհրաժեշտ է շարունակ բարձրացնել գյուղատնտեսական արտադրության մեքենայացման մակարդակը: Իսկ դա էլ կախված է ծանր արդյունաբերության հետագա հզոր զարգացումից և երկրի էլեկտրիֆիկացումից:

ՍՄԿԿ XX համագումարի դիրեկտիվների համաձայն գյուղատնտեսությունը 1960 թվականին պետք է ունենա ավելի քան երեք միլիոն տրակտոր և մեկ միլիոնից ավելի կոմբայն: Եթե 1950 թվականին գյուղատնտեսության մեջ սպառվել է ավելի քան 3,5 միլիարդ կիլովատ ժամ էլեկտրական էներգիա, ապա 1960 թվականին կպահանջվի շուրջ 8 միլիարդ կիլովատ ժամ:

1960 թվականին մեր սոցիալիստական գյուղատնտեսությունը կունենա ավելի քան 150 միլիոն ձիու ուժի ընդհանուր կարողություն ունեցող շրջիկ և ստացիոնար զանազան շարժիչներ: Այսպիսով, գյուղատնտեսության ամեն մի աշխատողին կընկնի մոտ 5 մեխանիկական ձի:

Ներկայումս գյուղատնտեսության համար արդեն ստեղծված են մոտ 500 տեսակի էլեկտրական մեքենաներ ու ապարատներ: Շատ կոլտնտեսություններում և սովետական տնտեսություններում էլեկտրական շարժիչների և ավտոմատիկայի կիրառման հետևանքով մի քանի տասնյակ անգամով կրճատվել են աշխատանքի ծախսումները:

Վ. Ի. Լենինը նշում էր, որ երկաթուղային տրանսպորտի էլեկտրիֆիկացումը բացառիկ կարևոր նշանակություն ունի մեր հսկայածավալ երկրի համար: Էլեկտրիֆիկացումը գրեթե երեք անգամ կարագացնի գնացքների երթևեկությունը, իսկ դա շատ կարևոր է մեր երկրի համար: Էլեկտրաքարշը շոգեքարշի համեմատությամբ երկու անգամ ավելացնում է երկաթուղիների թողունակությունը: Էլեկտրաքարշը հնարավորություն է տալիս տրանսպորտում օգտագործել նաև ցածրորակ վառելանյութը (գորշ ածուխ, տորֆ, թերթաքարեր և այլն) կամ ջրային էներգիան: Վառելանյութի ցածրորակ տեսակները կարող են այրվել հզոր և տեխնիկապես հագեցված հնոցներում, իսկ այդպիսի հնոցներ կարող են կառուցվել միայն խոշոր ջերմային կայաններում: Էլեկտրական քարշումը 50—60 տոկոսով խնայում է վառելանյութը, երբ էլեկտրականությունը ջերմային կայաններից է մատակարարվում, և 100 տոկոսով, երբ այն մատակարարվում է հիդրոկայաններից: Էլեկտրաքարշը երկաթուղային կազմակերպություններին ազատում է վառելանյութի պահեստներ, ջրհան կայաններ պահելուց: Այլևս անհրաժեշտություն չկա վառելանյութ ու ջուր պարունակող տենդեր պահելու, որը 50 տոննայից ավելի է կշռում: Այդ տենդերը շոգեքարշի հավերժական ուղեկիցն է: Էլեկտրաքարշը ավելի երկարատև է աշխատում, քան շոգեքարշը, ավելի պարզ և հեշտ է կառավարվում ու սպասարկվում: Էլեկտրաքարշերը առանձնապես հուսալի են Հարավի ջրազուրկ շրջաններում և Սիբիրի, Ուրալի խստաշունչ պայմաններում, որտեղ երբեմն հարկ է լինում աշխատել —40, 50° ջերմաստիճանի պայմաններում:

Վեցերորդ հնգամյակում էլեկտրաքարշերի հետ զուգընթաց լայն կիրառության մեջ կդրվեն նաև ջերմաքարշերը: Ջերմաքարշի վրա դրվում է դիզել, որը բանեցվում է գեներատորով: Գեներատորը էլեկտրական հոսանք է տալիս շարժիչներին, որոնք և շարժման մեջ են դնում ջերմաքարշը:



Ջերմաքարշի օգտակար գործողության գործակիցը կազմում է 27—28 տոկոս՝ շոգեքարշի 5—6 տոկոսի դիմաց: Ինչպես տեսնում ենք, ջերմաքարշը շոգեքարշի համեմատությամբ 5—7 անգամ քիչ պայմանական վառելանյութ է ծախսում փոխադրման մեկ միավորի վրա:

Ներկայումս ջերմաքարշերը աշխատում են հեղուկ վառելանյութով, աշխատանքներ են տարվում ջերմաքարշերի մի մասը գազի աշխատանքի փոխադրելու ուղղությամբ, իսկ գազը անմիջականորեն կարելի է ստանալ հենց իր գազագեներատորային սարքավորումից:

ՍՄԿԿ XX համագումարի դիրեկտիվների համաձայն վեցերորդ հնգամյակում էլեկտրական քարշումը կտարածվի 8100 կիլոմետր երկաթգծերի վրա, այսինքն՝ 3,6 անգամ ավելի, քան հինգերորդ հնգամյակում:

Վ. Ի. Լենինը ուսուցանում էր, որ ամեն մի նոր արտադրաեղանակ հաղթանակ է տանում իր նախորդի նկատմամբ հանրային աշխատանքի արտադրողականության ավելի բարձր մակարդակի հիման վրա: Նա գրում էր. «Աշխատանքի արտադրողականությունը, վերջին հաշվով, ամենակարևորը, ամենագլխավորն է նոր հասարակարգի հաղթանակի համար» (Վ. Ի. Լենին, Երկեր, հատ. 29, էջ 523): Ինչպես ցույց տրվեց վերևում, արտադրության գործիքների անընդհատ կատարելագործման, այսինքն՝ տեխնիկական պրոգրեսի հիմքը՝ էլեկտրիֆիկացումն է: Հետևաբար, էլեկտրիֆիկացման զարգացման տեմպերից է կախված աշխատանքի արտադրողականության աճումը՝ կոմունիզմի հաղթանակի գլխավոր պայմանը: Կարելի է բերել այսպիսի մի օրինակ. տվյալ ժամանակում արտադրվող մեկ կիլովատ հզորությունը փոխարինում է 20 բանվորի, իսկ ավտոմատ մեքենաներում՝ գրեթե 40 բանվորի ֆիզիկական աշխատանքը:

Ժողովրդական տնտեսության էլեկտրիֆիկացումը, ինչպես մատնանշում է Վ. Ի. Լենինը, քաղաքի և գյուղի, մտավոր և ֆիզիկական աշխատանքի միջև եղած էական տարբերությունների վերացման կարևորագույն միջոցն է: Էլեկտրիֆիկացման աճման հետ մեկտեղ մարդու դերը ավելի ու ավելի է հանգում մեքենաների ավտոմատիկ սիստեմի կառավարմանը, վերահսկմանը և կարգավորմանը:

Սովետական ժողովրդի նյութական բարեկեցության և կուլտուրական մակարդակի հետագա բարձրացման գործում բացառիկ մեծ նշանակություն ունի նրա կենցաղային սպասարկման էլեկտրիֆիկացումը:

Սովետական Հայաստանում ևս արագ տեմպերով է զարգանում էներգետիկան: Ներկայումս մեր էլեկտրակայանները մեկ ոչ լրիվ օրվա ընթացքում ավելի շատ էլեկտրաէներգիա են արտադրում, քան արտադրվել է Հայաստանում ամբողջ 1913 թվականին: Մեր ռեսպուբլիկայում 1955 թվականին արտադրված էլեկտրաէներգիայի քանակը բնակչության մեկ շնչի հաշվով գերազանցում է Իտալիայից 76 տոկոսով, Ճապոնիայից՝ 80 տոկոսով և Թյուրքիայից՝ ավելի քան 21 անգամ:

Վեցերորդ հնգամյա պլանով նախատեսվում է հիմնականում ավարտել Սևան—Հրազդան կասկադի հիդրոէլեկտրակայանների շինարարությունը և սկսել Որոտան գետի կասկադի էլեկտրակայանների շինարարության աշխատանքները: Որոտան գետի վրա կառուցվելու են 8 էլեկտրակայաններ, որոնցից Տաթևի էլեկտրակայանը լինելու է ամենից հզորը (160 հազար կիլո-

վատ), որի կառուցման աշխատանքները սկսվելու են վեցերորդ հնգամյակի վերջում:

Կառուցվելու և ավարտվելու են նաև մի շարք փոքր հիդրոէլեկտրակայան և բարձր լարման էլեկտրահաղորդման գծեր:

Նախատեսված ծրագրի իրականացումով ռեսպուբլիկայի հիդրոէլեկտրակայանների կարողությունը կավելանա մոտ 2 անգամ:

ՍՄԿՊ XX համագումարը, հաշվի առնելով այդ ամենը, առանձնահատուկ ուշադրություն դարձրեց էլեկտրական էներգիայի նոր աղբյուրների և առաջին հերթին՝ ատոմային էլեկտրական էներգիայի յուրացման վրա: 1954 թվականին շահագործման հանձնվեց աշխարհում առաջին ատոմային էլեկտրական կայանը 5000 կիլովատ հզորությամբ, իսկ ընթացիկ հնգամյակում կգործարկվեն 2—2,5 միլիոն կիլովատ հզորություն ունեցող էլեկտրակայաններ: Այս կապակցությամբ էլ աշխատանքներ պետք է տարվեն մեծ հզորություն ունեցող ատոմային կայանների աշխատանքի տեխնիկան յուրացնելու ուղղությամբ:

Արտադրական պրոցեսների էլեկտրիֆիկացման հիման վրա կատարվող կոմպլեքսային մեքենայացումը և ավտոմատացումը, մեքենաների ավտոմատիկ սիստեմի ստեղծումը, էլեկտրատեխնոլոգիայի հետագա զարգացումը, գյուղատնտեսության և բնակչության կոմունալ կենցաղային կարիքների բազմակողմանի էլեկտրիֆիկացումը, տրանսպորտի լայն էլեկտրիֆիկացումը,— այս ամենը հանդես է գալիս որպես սոցիալիզմի հիմնական տնտեսական օրենքի իրականացման և սոցիալիզմից դեպի կոմունիզմը կատարվող աստիճանական անցման մի կարևորագույն միջոց:

Արդյունաբերության ու շինարարության կառավարումը վերակառուցելու ուղղությամբ պարտիայի և կառավարության՝ այժմ իրականացվող միջոցառումները նպատակ ունեն անշեղորեն բարձրացնել մեր երկրի ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերը, բարձրացնել սովետական մարդկանց բարեկեցությունը: ՍՍՌՄ Գերագույն Սովետի յոթերորդ սեսիայի ընդունած Օրենքի իրագործումը էլ ավելի լայն ասպարեզ կբացի սոցիալիստական էկոնոմիկայի նոր հզոր վերելքի համար, մեր Հայրենիքի հետագա համակողմանի ծաղկման, կոմունիզմի մեծ գործի հաղթանակի համար:

———

# ԱՌԱՎԵԼ ՈՒՇԱԴՐՈՒԹՅՈՒՆ ՈՉԽԱՐԱԲՈՒԾՈՒԹՅԱՆ ԶԱՐԳԱՑՄԱՆԸ

Ռ. ԱԲՐԱՀԱՄՅԱՆ

Ոչխարաբուծությունն է՛լ ավելի զարգացնելու և բրդի արտադրությունն ավելացնելու համար ՍՄԿՊ Կենտրոնական Կոմիտեն և ՍՍՌՄ Մինիստրների Սովետը նամակով դիմել են պարտիական, սովետական և գյուղատնտեսական օրգաններին, ՄՏ կայանների, կոլտնտեսությունների և սովետական տնտեսությունների աշխատողներին ու գյուղատնտեսության մասնագետներին: Դիմումի մեջ վեր են հանված ոչխարաբուծության զարգացման բնագավառում գոյություն ունեցող թերությունները, սխալները, չօգտագործված հնարավորությունները և կոնկրետ միջոցառումներ են նշված երկրում ոչխարաբուծության հետագա զարգացման ու բրդի արտադրության ավելացման համար:

Հայկական ՍՍՌ կոլտնտեսությունները վերջին մի քանի տարիների ընթացքում որոշ հաջողություններ են ձեռք բերել ինչպես ոչխարների գլխաքանակի աճի, այնպես էլ բրդի արտադրության ավելացման և նրա որակի բարելավման բնագավառում: Նրանք զգալիորեն ավելացրել են նաև ոչխարի մսի արտադրությունը: Ռեսպուբլիկայի բազմաթիվ կոլտնտեսություններում ոչխարաբուծությունը դարձել է կոլտնտեսային արտադրության առաջատար ճյուղ և ունի հետագա զարգացման հեռանկարներ: Ոչխարների խնամքն ու կերակրումը բարելավելու, ինչպես նաև յուրաքանչյուր 100 մայր ոչխարից ավելի շատ գառներ ստանալու և անկումները կրճատելու շնորհիվ ռեսպուբլիկայի կոլտնտեսություններում 1956 թվականին, 1950 թվականի համեմատությամբ, ոչխարների գլխաքանակը ավելացավ 35 տոկոսով:

Ոչխարների գլխաքանակի ավելացման գործում աչքի ընկնող աշխատանք են կատարել Ախտայի շրջանի կոլտնտեսությունները, որոնք նույն ժամանակամիջոցում ոչխարների գլխաքանակն ավելացրել են 74 տոկոսով, Աղինի շրջանինը՝ 72 տոկոսով, Սպիտակի շրջանինը՝ 60 տոկոսով, Թալինի շրջանինը՝ 40 տոկոսով և այսպես ուրիշ շրջանների կոլտնտեսություններ, որոնք ոչխարաբուծությունից մեծ եկամուտ են ստանում:

Ռեսպուբլիկայի կոլտնտեսություններում 1956 թվականի հոկտեմբերի մեկի դրությամբ, յուրաքանչյուր 100 հեկտար հողատարածության դիմաց պահպանվում էր 93 գլուխ, իսկ Հոկտեմբերյանի, Էջմիածնի, Շահումյանի, Մեղրու շրջանների կոլտնտեսություններում՝ 145—199 գլուխ ոչխար:

Գորիսի շրջանի Խնձորեսկ և Տեղ գյուղերի, Ն. Բայազետի շրջանի շրջկենտրոնի Բաղիկի անվան և Նորադուզ գյուղի, Իջևանի շրջանի Կույբիշևի, Էջմիածնի շրջանի Միկոյանի անվան կոլտնտեսությունները խոշորացրել են

ոչխարաբուծական ֆերմաները, որոնցից յուրաքանչյուրում կա 5—10 հազար ոչխար։

Ոչխարների գլխաքանակի ավելացման հետ մեկտեղ զգալիորեն ավելացել է նաև ոչխարի մսի արտադրությունը։ Եթե 1950 թվականին ռեսպուբլիկայի կոլտնտեսությունները պետությանը մթերման դիմաց հանձնել և վաճառել են ընդամենը 170 հազար գլուխ ոչխար, ապա 1956 թվականին հանձնել ու վաճառել են 350 հազար գլուխ։ Կոլտնտեսություններում արտադրված մսի համախառն արտադրանքի մեջ ոչխարի միսը կազմում է մոտ 42 տոկոս։

Ոչխարների գլխաքանակի ավելացման հետ միասին որոշակի աշխատանք է կատարված նաև ոչխարների ցեղական կազմի բարելավման ուղղությամբ։ Եթե մինչև 1950 թվականը կոլտնտեսությունների ոչխարաբուծական ֆերմաներում նրբաբուրդ ոչխարների խառնածինները չնչին քանակ էին կազմում և հիմնականում բուծվում էին տեղական կոպտաբուրդ ցածր մթերատու ոչխարներ, ապա վերջին տարիների ընթացքում դրանց նրբաբուրդ ցեղերի տոհմային արտադրող խոյերի հետ տրամախաչելու միջոցով ոչխարների ցեղը հիմնականում վերափոխվել է։ Այժմ կոլտնտեսություններում բուծվող ոչխարների ավելի քան 75 տոկոսը կազմում են խառնածին նրբաբուրդ, կիսանրբաբուրդ և կիսակոպտաբուրդ ոչխարներ։ Ոչխարների ցեղի բարելավման նպատակով յուրաքանչյուր տարի հարևան ռեսպուբլիկաներից ներմուծվում և ռեսպուբլիկայի կոլտնտեսություններին վաճառվում է 1000—12000 գլուխ նրբաբուրդ ցեղերի տոհմային լավագույն արտադրող խոյեր։ Տրամախաչման աշխատանքները բարելավելու և լավագույն արտադրող խոյերին ռացիոնալ օգտագործելու նպատակով կոլտնտեսություններում ստեղծվել է ոչխարների արհեստական սերմնավորման կայանների լայն ցանց։ 1956 թվականին ռեսպուբլիկայի մոտ 600 կոլտնտեսություններում գործում էին ոչխարների արհեստական սերմնավորման սեփական կայաններ, որտեղ սերմնավորվեց մոտ 600 հազար գլուխ ոչխարներ և շիշակներ։

Ոչխարների ցեղի բարելավման աշխատանքներն առանձնապես լավ են կազմակերպված Թալինի, Սպիտակի, Ն. Բայազետի, Նոյեմբերյանի, Իջևանի, Աղինի, Ալավերդու և մյուս շրջանների կոլտնտեսություններում, որտեղ տեղական կոպտաբուրդ ցածր մթերատու ոչխարներն արդեն հիմնականում վերափոխվել են նրբաբուրդ, կիսանրբաբուրդ և կիսակոպտաբուրդ ոչխարների, որոնք տեղական ոչխարների համեմատությամբ տալիս են երկու և ավելի անգամ թանկարժեք բուրդ։

Ոչխարների գլխաքանակի ավելացումը և ցեղի բարելավումը ռեսպուբլիկայի կոլտնտեսություններին հնարավորություն տվեց վերջին տարիների ընթացքում զգալիորեն ավելացնելու բրդի արտադրությունը։ Վերջին հինգ տարվա ընթացքում բրդի համախառն արտադրությունն ավելացել է ավելի քան երկու անգամ, իսկ մեկ ոչխարի բրդատվությունը՝ 1,7 անգամ։ 1956 թվականին ռեսպուբլիկայի կոլտնտեսությունները յուրաքանչյուր 100 հեկտար հողատարածության դիմաց արտադրեցին 190 կիլոգրամ բուրդ։ Բրդի արտադրությունը զգալիորեն ավելացրել են Հոկտեմբերյանի, Գորիսի, Շամշադինի, Մեղրու, Նոյեմբերյանի, Աղինի, Էջմիածնի և մյուս շրջանների շատ կոլտնտեսություններ, որոնք 1956 թվականին յուրաքանչյուր 100 հեկտար հողատարածության դիմաց արտադրեցին 235—348 կիլոգրամ բուրդ։

Ոչխարների ցեղի բարելավման շնորհիվ զգալիորեն բարձրացել է ար-



տադրվող բրդի որակը։ Եթե 1951 թվականին ռեսպուբլիկայի կոլտնտեսություններում արտադրված բրդից միայն 6 տոկոսն էր կազմում նուրբ ու կիսանուրբ բուրդ, ապա 1956 թվականին այն հասավ 25 տոկոսի։ Այս ուղղությամբ հաջողությունները զգալի են Ն. Բայազետի, Թալինի, Սպիտակի, Ախուրյանի, Ախտայի, Սևանի և ուրիշ շրջաններում, ուր բրդի համախառն արտադրանքի 35—40 տոկոսը կազմում է նուրբ և կիսանուրբ բուրդը։

Ոչխարների գլխաքանակի, բրդի և ոչխարի մսի ավելացման, ինչպես նաև պետության կողմից բրդի և մսի մթերումների և գնումների գների բարձրացման շնորհիվ վերջին տարիների ընթացքում խիստ բարձրացել են կոլտնտեսությունների դրամական եկամուտները։ Այսպես՝ 1956 թվականին, 1953 թվականի համեմատությամբ, ոչխարաբուծությունից կոլտնտեսությունների ստացած դրամական եկամուտը ավելացավ 4 անգամ և կազմեց անասնապահության բոլոր ճյուղերից ստացած եկամուտների 47 տոկոսը։ Միայն բրդի հանձնումների և վաճառքի դիմաց ռեսպուբլիկայի կոլտնտեսությունները 1956 թվականին պետությունից ստացան ավելի քան 53 միլիոն ռուբլի։

Ոչխարների գլխաքանակի աճի և բրդի արտադրության ավելացման գործում արմատավորելով առաջավորների փորձը, ռեսպուբլիկայի շատ հովիվներ ավելի բարձր ցուցանիշների են հասել։ Այսպես՝ Ն. Բայազետի շրջանի Բատիկի անվան կոլտնտեսության ավագ հովիվ Ս. Գալոյանը անցյալ տարի յուրաքանչյուր ոչխարից ստացավ 5,2 կգ բուրդ, Սպիտակի շրջանի Մեծ Պարնի գյուղի կոլտնտեսության հովիվ Թ. Փիլոյանը, Նոյեմբերյանի շրջանի Կողբ գյուղի կոլտնտեսության հովիվներ՝ Կ. Խաչիկյանը, Ա. Աբովյանը, Ա. Սիմոնյանը, Բասարգեչարի շրջանի Կարակոյուն գյուղի կոլտնտեսության հովիվ Բ. Դունաֆարովը և ուրիշներ յուրաքանչյուր ոչխարից ստացան 4,7—5 կգ բուրդ։

1956 թվականին ռեսպուբլիկայի ավելի քան 150 հովիվներ իրենց խնամած ոչխարներից յուրաքանչյուրի բրդատվությունը հասցրին ավելի քան 3,5 կիլոգրամի։ Դրանցից 58 անվանի հովիվների, որոնք յուրաքանչյուր ոչխարից ստացել են 4 և ավելի կգ բուրդ, շնորհվել է «Ռեսպուբլիկայի լավագույն հովիվ»-ի պատվավոր կոչում։

Բրդի արտադրության ավելացմանը մեծ չափով օգնում է ոչխարների էլեկտրա-մեխանիկական խուզը, որի ուղղությամբ ռեսպուբլիկայի ՄՏ կայանները զգալի աշխատանք են կատարել։ Բավական է ասել, որ յուրաքանչյուր տարի կոլտնտեսությունների ոչխարների ավելի քան 95 տոկոսի խուզը կատարվում է էլեկտրա-մեխանիկական ագրեգատների միջոցով։

Այս հաջողությունները նախնական են։ ՍՄԿՊ Կենտրոնական Կոմիտեն և ՍՍՌՄ Մինիստրների Սովետն իրենց նամակում իրավամբ նշում են, որ Հայկական ՍՍՌ կոլտնտեսությունները և սովետական տնտեսությունները կարող էին ավելի շատ ոչխարներ ունենալ և ավելի շատ մթերքներ արտադրել, եթե ինչպես հարկն է զբաղվեին ոչխարաբուծության զարգացման հարցերով։ Հիրավի, ռեսպուբլիկայի պարտիական, սովետական, գյուղատնտեսական օրգանները, ՄՏ կայանների և կոլտնտեսությունների ղեկավարներն ու մասնագետները դեռևս անհրաժեշտ միջոցառումներ չեն ձեռնարկել ոչխարաբուծությունն ինչպես հարկն է զարգացնելու և այդ բնագավառում եղած թերությունները լիկվիդացնելու համար։ Նրանք բոլոր ռեզերվները գործի չեն դրել ոչ-

*խարների գլխաքանակի աճեցման և բրդի արտադրության շեշտակի վերելք ստեղծելու, որի համար լայն պայմաններ ու հնարավորություններ կան։*

*Ինչպես հայտնի է Աշտարակի, Կալինինոյի, Կիրովականի, Ստեփանավանի, Կոտայքի, Սիսիանի և ուրիշ շատ շրջանների կոլտնտեսություններ լայն հնարավորություն ունեն ոչխարաբուծության զարգացման համար։ Սակայն այդ շրջանների կոլտնտեսություններում ոչխարաբուծության զարգացման գործը անմխիթար վիճակումն է։ Բավական է ասել, որ վերոհիշյալ շրջանների կոլտնտեսությունները յուրաքանչյուր 100 հեկտար հողային տարածության դիմաց ունեն 55—73 գլուխ ոչխար, և դա այն դեպքում, երբ ռեսպուբլիկայի կոլտնտեսություններում այն միջին հաշվով կազմում է 93 գլուխ։ Նման դրությունը հետևանք է այն բանի, որ այդ շրջանների շատ կոլտնտեսություններում բարձր է ոչխարների անկումը, ստերջությունը և 100 մայր ոչխարից ստացվող գառների քանակը։ Աշտարակի շրջանի կոլտնտեսությունները 1956 թվականի ընթացքում 100 մայր ոչխարից ստացան և պահպանեցին (մինչև մորից անջատելը) 66 գառ, Կոտայքի շրջանի կոլտնտեսությունները՝ 63 գառ, Կիրովականի շրջանի կոլտնտեսությունները՝ 60 գառ և այլն։*

*Վատ կերակրման ու վատ խնամքի հետևանքով ռեսպուբլիկայի շատ կոլտնտեսություններ անցյալ տարի կորստի մատնեցին ոչխարների մոտ 6,9 տոկոսը, իսկ Կիրովականի շրջանի կոլտնտեսությունները՝ 10,7 տոկոսը, Ալավերդու շրջանինը՝ 13 տոկոսը, Կոտայքի շրջանինը՝ 7,6 տոկոսը, Նոր Բայազետի շրջանինը՝ 9,9 տոկոսը։*

*Ռեսպուբլիկայի շատ կոլտնտեսություններ, որոնք ոչխարաբուծության զարգացման համար լայն հնարավորություններ ունեն, պահում են աննշան քանակությամբ ոչխարներ։ Այդպիսի կոլտնտեսություններից են Կիրովականի շրջանի Լերմոնտովո, Դարբաս, Ֆիոլետովո, Սիսիանի շրջանի Մուրխուզ, Սոֆլու, Ախլաթյան, Շաղաթ, Բորիսովկա, Աշտարակի շրջանի Արագյուղ, Եղվարդ, Կարբի, Կոտայքի շրջանի Գեղարդ, Գողթ, Ջրվեժ գյուղի կոլտնտեսությունները, որոնք յուրաքանչյուր 100 հեկտար հողատարածությունների դիմաց ունեն 16—50 գլուխ ոչխար։ Այդ քանակի ոչխար ունեցող կոլտնտեսություններում ոչխարաբուծությունից ստացվող եկամուտը աննշան է։*

*Հայտնի է, որ տեղական ոչխարների ցեղի, ինչպես նաև կերակրման ու խնամքի բարելավման միջոցով շատ կոլտնտեսություններ խիստ բարձրացրել են բրդի համախառն արտադրանքը և նրա որակը։ Բայց, չնայած դրան, ռեսպուբլիկայի մի շարք շրջաններում և առաջին հերթին Արարատյան դաշտավայրի, ինչպես նաև Աշտարակի, Կոտայքի, Կիրովականի, Սիսիանի շրջանների շատ կոլտնտեսություններում նրբագեղմ խոյերով ոչխարների տրամախաչման գործը վատ կազմակերպելու հետևանքով կոպտաբուրդ և կիսակոպտաբուրդ ոչխարների գլխաքանակը դեռևս մեծ տեսակարար կշիռ է կազմում, իսկ ոչխարների բրդատվությունը ցածր է։ Այսպես, օրինակ, Կոտայքի շրջանի կոլտնտեսություններում անցյալ տարի մեկ ոչխարի բրդատվությունը կազմել է 1,6 կգ, Աշտարակում՝ 1,9 կգ։ Յուրաքանչյուր 100 հեկտար հողային տարածության դիմաց Կիրովականի շրջանի կոլտնտեսություններում ստացվել է 141 կգ բուրդ, Սիսիանում՝ 128 կգ, Կոտայքում՝ 102 կգ, Աշտարակում՝ 92 կգ բուրդ։*

*Ռեսպուբլիկայում ինչպես անասնապահության մյուս ճյուղերի, նույնպես և ոչխարաբուծության ետ մնալը առաջին հերթին հետևանք է այն բանի, որ*



*կոլտնտեսություններում անբավարար վիճակում է գտնվում կերի կուտակման գործը։ Բազմաթիվ կոլտնտեսություններում կուտակված կերը մսուրային շրջանում չի ապահովում անասունների պահանջը, որի հետևանքով ոչ միայն իջնում է անասունների մթերատվությունը, այլև նվազում է նրանց գիրությունը, լինում են անկման դեպքեր։*

*Շատ կոլտնտեսություններում գոյություն ունի այն սխալ հասկացողությունը, որ մսուրային շրջանում ոչխարը կարող է պահվել քիչ կերով։ Մի շարք կոլտնտեսություններում հենց այդպես էլ արվում է, որի հետևանքով ոչխարները հյուծվում են և տեղիք է տրվում զգալի կորուստների։ Մսուրային շրջանում ոչխարների խնամքի գործում լուրջ թերություն է նաև այն, որ առանձին տեղերում ոչխարները չեն ապահովվում ջրով։ Ոչխարները ջուր են ստանում լավագույն դեպքում օրը մեկ անգամ, իսկ շատ դեպքերում երկու օրը մեկ անգամ և նույնիսկ ավելին։ Այդ բոլորի հետևանքով մսուրային շրջանում ոչխարները հյուծվում են և խիստ պակասում է նրանց քաշը։*

*Ոչխարաբուծության ցածր մթերատվության պատճառներից մեկն էլ այն է, որ շատ շրջաններում ոչխարների գլխաքանակն ապահովված չէ համապատասխան բարեկարգ շենքերով, վատ են նրանց խնամքի և պահպանման պայմանները, ժամանակին չեն կիրառվում զոոտեխնիկական և անասնաբուժական մի շարք միջոցառումներ՝ պայքար հիվանդությունների դեմ, արոտների հերթափոխ օգտագործում, ոչխարների գիրացման աշխատանքների կազմակերպում և այլն։*

*ՍՄԿՊ XX համագումարը նշեց, որ գործի շահերը պահանջում են ամեն կերպ զարգացնել նրբագեղմ և կիսանրբագեղմ ոչխարաբուծությունն այն հաշվով, որպեսզի ունենանք ավելի շատ լավորակ բրդյա գործվածքներ։ Ռեսպուբլիկայի պարտիական, սովետական և գյուղատնտեսական օրգաններն ու կոլտնտեսությունները ելնելով պարտիայի XX համագումարի Դիրեկտիվներից, ինչպես նաև ՍՄԿՊ Կենտրոնական Կոմիտեի և ՍՍՌՄ Մինիստրների Սովետի՝ ոչխարաբուծությունն էլ ավելի զարգացնելու և բրդի արտադրությունն ավելացնելու մասին նամակից, պետք է մեկ անգամ ևս մանրակրկիտ ուսումնասիրեն ոչխարաբուծության վիճակը և կոնկրետ միջոցառումներ մշակեն նրա հետագա զարգացումն ապահովելու համար։*

*Առաջին հերթին լուրջ ուշադրություն պետք է դարձնել ոչխարների գըլխաքանակի ավելացման վրա, մանավանդ այն շրջաններում և կոլտնտեսություններում, որտեղ 100 հեկտար հողային տարածությունների դիմաց ունեն 100 ոչխարից պակաս։ Պետք է հասնել այն բանին, որպեսզի ռեսպուբլիկայի բոլոր կոլտնտեսությունները յուրաքանչյուր 100 հեկտար հողային տարածության դիմաց պահեն ոչ պակաս, քան 120—130 գլուխ ոչխար, իսկ այն կոլտնտեսությունները, որոնք ոչխարաբուծության զարգացման համար ավելի նպաստավոր պայմաններ ունեն, յուրաքանչյուր 100 հեկտար հողատարածության դիմաց պետք է պահեն 180—200 գլուխ ոչխար։*

*Ոչխարների գլխաքանակի ավելացումն ապահովելու համար անհրաժեշտ է, որպեսզի 100 մայր ոչխարից ստացվեն և պահպանվեն ավելի շատ գառներ, լիկվիդացվի ոչխարների ստերջությունը։ Եթե նախորդ տարիներում յուրաքանչյուր 100 մայր ոչխարից ստացված 72—75 գառի դիմաց ստացվի ու պահպանվի 93—95 գառ, ապա միայն այդ ճանապարհով կարելի է լրացուցիչ ստանալ 100 հազար գառ։*

Անհրաժեշտ է պայքար ծավալել անասունների վարակիչ և ոչ վարակիչ հիվանդությունների դեմ։ Անասունների անկման յուրաքանչյուր դեպք, ինչպես նշված է ՍՄԿՊ Կենտրոնական Կոմիտեի և ՍՍՌՄ Մինիստրների Սովետի Նամակում, պետք է քննության առնվի կոլտնտեսության վարչությունում և միջոցներ ձեռք առնվի անմիջապես կանխելու անկումները։

Հոտի նորմալ վերարտադրությունն ապահովելու համար մեծ նշանակություն ունի ոչխարների սերմնավորման խնամքով կազմակերպումն ու անցկացումը։ Դրա համար անհրաժեշտ է, որպեսզի յուրաքանչյուր կոլտնտեսություն ժամանակին կահավորի և պատրաստի արհեստական սերմնավորման կայանը, կոմպլեկտավորի մայրական կազմի հոտերը և նրանց ամրացնի ցեղական նրբագեղմ խոյերը։ Նախօրոք պետք է կազմակերպել խոյերի ռացիոնալ կերակրումը և նրանց նախապատրաստել սերմնավորման համար։

Որպես առաջավոր մեթոդ պետք է լայն չափով կիրառել ոչխարների ձմեռային և վաղ գարնանային ծնի կազմակերպումը։ Ոչխարների բուծման այդ առաջավոր մեթոդը գարնանային սովորական ծնի համեմատությամբ ունի մի շարք առավելություններ. 100 մայրից ստացվում են ավելի շատ գառներ, որոնք ավելի առողջ են լինում, ավելի լավ են աճում, ամառային արոտներն օգտագործում են լրիվ չափով, աշնանը ունենում են բարձր կենդանի քաշ և տալիս են շատ բուրդ։ Գորիսի, Սիսիանի շատ կոլտնտեսությունների ոչխարաբույծների փորձը ցույց է տալիս, որ ոչխարների վաղ ծնի միջոցով բարձրանում է ոչխարաբուծության մթերատվությունը։

Գյուղատնտեսության մինիստրությունը, ՄՏ կայաններն ու նրանց մասնագետները ընթացիկ տարվանից պետք է ուսումնասիրեն և լայն չափով կիրառեն այդ առաջավոր մեթոդներն այն կոլտնտեսություններում, որտեղ դրա համար անհրաժեշտ պայմաններ կան։

Բրդի արտադրության ավելացման, ինչպես նաև նրա որակի բարձրացման համար լուրջ ուշադրություն պիտի դարձնել ոչխարների ցեղի բարելավման վրա։ Բազմաթիվ կոլտնտեսությունների փորձը ցույց է տվել, որ 2—3 տարվա ընթացքում ոչխարների ցեղը կարելի է հիմնականում վերափոխել և ոչխարներին դարձնել միատարր բրդով խառնածիններ։ Ռեսպուբլիկայում բոլոր պայմանները ստեղծված են կարճ ժամանակամիջոցում ոչխարների ցեղը հիմնովին փոխելու համար։ Կոլտնտեսությունների ոչխարաբուծական ֆերմաներն ապահովված են անհրաժեշտ քանակությամբ նրբագեղմ խոյերով, արհեստական սերմնավորման կայանները լրիվ կահավորված են անհրաժեշտ գործիքներով, տեղերում կան համապատասխան քանակությամբ տեխնիկ-սերմնավորողներ։ Մնում է միայն, որ Գյուղատնտեսության մինիստրությունը, շրջանային պարտիական, սովետական և գյուղատնտեսական օրգանները գլխավորեն այդ կարևոր աշխատանքը և ժամանակին ու կազմակերպված ձևով անցկացնեն ոչխարների սերմնավորումը։

Բրդի արտադրության ավելացումն ապահովելու համար լուրջ ուշադրություն պետք է դարձնել ոչխարների խնամքի ու պահպանման վրա։ Որպես կանոն խուզից հետո բոլոր ոչխարներին պետք է ենթարկել հակաքոսային լողացման, ժամանակին կազմակերպել ճիճվաթափման աշխատանքները, ախտահանման ենթարկել բոլոր ոչխարանոցներն ու նստավայրերը, նրանց կանգառման տեղերը։ Ոչխարների խուզը պետք է կատարել ժամանակին։



Կոլտնտեսությունները պետք է պատրաստեն որակյալ խուզողներ, ագրեգատի պետեր և ապահովեն բոլոր ոչխարների էլեկտրախուզը։

Ոչխարների գլխաքանակի աճի և բրդի արտադրության ավելացման համար մեծ նշանակություն ունի մսուրային շրջանում ոչխարներին կերով ապահովելը։ Ինչպես հայտնի է, ռեսպուբլիկան հարուստ է ամառային ընդարձակ արոտներով, որոնք լայն հնարավորություն են տալիս զգալիորեն ավելացնելու ոչխարների գլխաքանակը։ Սակայն այդ հնարավորությունները սահմանափակվում և լրիվ գործի չեն դրվում՝ ոչխարներին մսուրային շրջանում անհրաժեշտ կերով չապահովելու հետևանքով։ Ահա թե ինչու պետք է լուրջ ուշադրություն դարձնել կերի կուտակման վրա և մսուրային շրջանում ոչխարներին ապահովել պահանջվող կերով։ Դրա համար անհրաժեշտ է լայնացնել ցանվող բազմամյա խոտաբույսերի տարածությունները, բարձրացնել նրանց բերքատվությունը, ամառային արոտների մի մասը վերածել խոտհարքների։ Ոչխարաբուծության կերի բազան ամրապնդելու նպատակով անհրաժեշտ է արմատավորել ոչխարների կերակրումը սիլոսով։

Առաջավոր կոլտնտեսությունների փորձը ցույց է տվել, որ սիլոսով կերակրումը բարձրացնում է ոչխարների պտղատվությունը, բրդատվությունը, մայրերի կաթնատվությունը։ Ուստի հենց այժմվանից, առանց ձգձգելու ոչխարանոցների մոտ պետք է կառուցել խրամատներ և նրանցում պատրաստել սիլոս՝ յուրաքանչյուր հասակավոր ոչխարի համար 1—1,5 ցենտների չափով։ Դրա համար անհրաժեշտ է ոչխարանոցներին մոտիկ տարածություններում սիլոսային կուլտուրաների ցանք կատարել, ինչպես նաև ոչխարանոցների մոտ եղած բնական խոտհարքներից առանձնացնել, այն խնամել և ստացված մասսայից նույնպես սիլոս պատրաստել։

Արոտային շրջանում առանձնապես լուրջ ուշադրություն պետք է դարձնել ոչխարների գիրացման վրա։ Անհրաժեշտ է պետությանը հանձնվող ոչխարները առանձնացնել և դնել արոտային գիրացման տակ, որպեսզի նրանցից ոչ մեկը միջակից ցածր գիրությամբ չլինի։ Ավելին, նրանց մեծ մասը պետք է պետությանը հանձնվի միջակից բարձր և ճարպային գիրությամբ։ Եթե մսամթերման և գնման դիմաց հանձնվող ոչխարի քաշը հասցնենք միջինը 40—43 կիլոգրամի, ապա այդ ճանապարհով հնարավոր է պետությանը հանձնվող մսի քանակը ավելացնել մոտ 20—21 հազար ցենտներով։ Այս բանին հասնելու համար անհրաժեշտ է գիրացման համար առանձնացվող ոչխարների խնամքը հանձնել ամենաբարեխիղճ կոլտնտեսականներին և նրանց համար սահմանել նյութական խրախուսիչ միջոցներ։

Ոչխարաբուծության զարգացման համար լուրջ նշանակություն ունեն ոչխարանոցները։ Մինչև այժմ կոլտնտեսություններում ոչխարանոցների շինարարությունն ընթանում է խիստ անբավարար։ Դրա հիմնական պատճառներից մեկն այն է, որ ոչխարանոցների կառուցումը շատ թանկ է նստում։ Բավական է նշել, որ մեկ ոչխարատեղի արժեքը կազմում է մոտ 500 ռուբլի։ Շինարարության այդպիսի բարձր արժեքը շատ կոլտնտեսությունների հնարավորություն չի տալիս անհրաժեշտ չափով ոչխարանոցներ կառուցելու։

Անհրաժեշտ է ընթացիկ տարվանից լայն թափով ձեռնարկել ոչխարանոցների շինարարությունն այն հաշվով, որպեսզի առաջիկա 1—2 տարվա ընթացքում կոլտնտեսությունների ոչխարների ամբողջ գլխաքանակն ապահովված լինի բարեկարգ շենքերով։

*Ոչխարանոցների շինարարության էժանացման համար անհրաժեշտ է լայն չափով օգտագործել տեղական էժան շինանյութերը։ Պետք է հասնել այն բանին, որ մեկ ոչխարատեղի շինարարության արժեքը կոլտնտեսությունների վրա շատ էժան նստի։ Գյուղատնտեսության մինիստրությունը պարտավոր է վերանայել ոչխարանոցների մինչև այժմ գոյություն ունեցող նախագծերը, որոնք շատ ավելորդություններ ունեն։ Պետք է բոլոր միջոցները ձեռնարկել և անմիջապես սկսել պահանջվող քանակությամբ ոչխարանոցների կառուցումը, ինչպես նաև նրանց մոտ կերի անհրաժեշտ պաշարի կուտակումը։*

*Ոչխարաբուծության զարգացման գործում ամենահիմնական հարցերից է կադրերի հարցը։ Անասնապահության այս կարևոր ճյուղում աշխատում են ավելի քան 15—16 հազար կոլտնտեսական։ Չի կարելի ասել, որ նրանց համար ստեղծված են կուլտուր-կենցաղային անհրաժեշտ պայմաններ. շատ ոչխարանոցների կողքին ոչխարապահների համար հանրակացարաններ, կուլտ-կենցաղային համապատասխան շենքեր դեռ չեն կառուցված, իսկ եղածների մեծ մասում չկան ռադիոբարձրախոսներ ու անհրաժեշտ հարմարություններ։ Ոչխարաբույծ կոլտնտեսականները օրվա թերթերը, նոր գրականություն ժամանակին չեն ստանում, լավ չի կազմակերպվում նրանց բուժսպասարկումը, համապատասխան ապրանքների վաճառքը և այլն։*

*Կոլտնտեսությունների վարչությունները, պարտիական կազմակերպությունները, առողջապահության, կուլտուրայի, կապի մինիստրությունները և Հայկոոպը իրենց բաժինն ունեն ոչխարաբուծության բնագավառում աշխատողների սպասարկումը կազմակերպելու գործում։ Նրանցից յուրաքանչյուրը պետք է համապատասխան աշխատանք ձեռնարկի և օրինակելիորեն կազմակերպի ոչխարաբույծների սպասարկումը, ժամանակին հոգա նրանց պահանջներն ու կարիքները։ Չպետք է մոռանալ, որ ոչխարաբուծության բնագավառում աշխատողները կատարում են համաժողովրդական շատ կարևոր գործ, որոնց նկատմամբ պետք է ջերմ հոգատարություն ցուցաբերել։*

*Պարտիայի Կենտկոմի և Մինիստրների Սովետի նամակում ոչխարաբուծության զարգացման բնագավառում առաջադրված պահանջները մեր ռեսպուբլիկայում հնարավոր է կատարել առաջիկա 2—3 տարվա ընթացքում։ Դրա համար էլ անհրաժեշտ է ավելի ծավալել գործարար սոցիալիստական մրցությունը։ Յուրաքանչյուր հովիվ, ֆերմա, կոլտնտեսություն, մեքենա-տրակտորային կայան այժմ պետք է մրցության դուրս գա պարտիայի ու կառավարության պահանջները ժամանակին և անթերի կատարելու համար։ Մենք բոլոր հնարավորություններն ունենք 1—2 տարվա ընթացքում յուրաքանչյուր 100 հեկտար հողային տարածության դիմաց ունենալու 135—140 գլուխ ոչխար, ստանալու 290—300 կիլոգրամ բուրդ, իջեցնելով արտադրվող բրդի և մսի վրա ծախսվող աշխատանքի ու միջոցների քանակը։*

*Ռեսպուբլիկայի պարտիական, սովետական և գյուղատնտեսական օրգանները, ՄՏ կայանների, սովետական տնտեսությունների, կոլտնտեսությունների ղեկավարներն ու մասնագետները, ֆերմաների վարիչներն ու հովիվները պետք է ապահովեն ոչխարաբուծության զարգացման պետական առաջադրանքները։*

---

# ԳՐԱԿԱՆ ԱԶԴԵՑՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՊՐՈԲԼԵՄԻ ՇՈՒՐՋԸ

*Վ. ՄՆԱՑԱԿԱՆՅԱՆ*

*Վահան Տերյանի կյանքի և ստեղծագործության մասին Կամսար Գրիգոր-
յանի երկասիրությունը կարդալիս («Վահան Տերյան», 1956 թ., Երևան) մեր
ուշադրությունը գրավեց հետևյալ նախադասությունը. «Տերյանի կապը իրա-
կանության հետ, ավելի ճիշտ այն իրական հողը, որի վրա բուսել և աճել են
նրա քնարերգության նուրբ ծաղիկները, նրա, եթե կարելի է այսպես անվա-
նել, «ռեալիզմը» (ընդգծումը մերն է—Վ. Մ.) բացահայտվել է նաև նրա բնու-
թյան երգերում» (էջ 51)։ Սկզբում մեզ թվաց, թե այդ չակերտները բոլորովին
պատահականորեն են օղակել ռեալիզմ բառը։ Սակայն գիրքն ընթերցելուց
հետո համոզվեցինք, որ այդ չակերտները ունեն որոշակի նշանակություն, հե-
տևանք են խոր արմատներ ձգած գրականագիտական սխալ մի համոզմունքի,
որի կողմնակիցներից է նաև Գրիգորյանը։*

*Ամբողջ գրքում Տերյանի ռեալիզմի մասին խոսվում է մեկ անգամ, այն
էլ առնված է չակերտների մեջ։ Ինչո՞ւմն է բանը։ Չէ՞ որ հեղինակի հիմնա-
կան նպատակն է եղել ցույց տալ, որ Տերյանը հայ պոեզիայի խոշորագույն
ներկայացուցիչներից է, որի ստեղծագործությունն իր արժեքավոր մասով խո-
րապես կապված է հայ իրականության հետ, ճշմարտացի է արտացոլում հայ
ժողովրդի կյանքը, նրա ապրումներն ու խոհերը պատմական կոնկրետ ժամա-
նակաշրջանում։ Նախապես նշենք, որ վերջերս իր հոդվածներից մեկում Կամ-
սար Գրիգորյանը ինքն է որոշ լույս սփռել իր չակերտների վրա, պըն-
դելով, թե «իզուր են այն փորձերը, որ արվում են Տերյանին ինչ գնով էլ
լինի հայ պոեզիայում քննադատական ռեալիզմի ներկայացուցիչ դարձնելու
համար։ Բանաստեղծի անցած ստեղծագործական ուղին ավելի բարդ է»։ Ինչ-
պես տեսնում ենք, գրականագետի առարկության միակ հիմքն այն է, որ
Տերյանի ուղին ավելի բարդ է եղել, որի հետևանքով էլ չի կարելի նրան ռեա-
լիստ համարել։ Իսկ այդ ո՞ր գրողն է հեշտ ու խաղաղ կյանք ունեցել ար-
վեստի մեջ. Պատկանյա՞նը, թե՞ Րաֆֆին, Իսահակյա՞նը, թե՞ Վարուժանը։
Միայն զարմանալ կարելի է, որ գրականագետներից ոմանք չեն կարողա-
նում դուրս գալ սիմվոլիզմի կախարդական սավերից կամ, ընդհակառակը,
չեն ուզում նկատել այն, որը և խանգարում է նրանց Տերյանին տեսնել վե-
րածնված նաև պոեզիայի մեջ, ռեալիստական արվեստի համար պայքարողի
դերում։*

*Հայտնի է, որ հեռավոր անցյալում փորձեր են արվել կասկածի տակ առ-
նելու Տերյանի պոետական ժառանգության պիտանիությունը սովետահայ
պոեզիայի զարգացման գործում, դիտելով այն որպես անկումայնության ու*

հուսալքման գոլք, որպես մանր-բուրժուական անհատապաշտական ապրումների արտահայտություն։ Եվ այդ ամենը կատարվում էր սիմվոլիզմի խարանով։ Էսթետիկական տգիտությունն ու «գաղափարական» չարամտությունը գործում էին այնքան համերաշխ, որ ժխտվում էր Տերյանի նույնիսկ լեզուն։ Ազգային նիհիլիզմի դիրքերից եկող այդ ոտնձգություններին առաջինը հակահարված տվեց ինքը՝ ժողովուրդը, ընթերցող հասարակայնությունը, երախտագիտության զգացումով պահպանելով հայրենիքի դառն անցյալի ու նրա կյանքի արշալույսի երգչի ազնիվ հոգու վաստակը։

Հայ իրականության մեջ Տերյանին սիմվոլիստական դպրոցի հիմնադիր հռչակելը երկրորդ փորձն էր, որը նույնպես սնանկ դուրս եկավ ճշմարտության հանդեպ։ Թվում էր, թե այդ ամենից հետո զգալիորեն դյուրին պետք է դառնար անսխալ գնահատել Տերյանի պոեզիան, պատկերել պոետի անցած բարդ ու դժվարին ուղին իր բոլոր վայրէջքներով ու վերելքներով, առանց գունազարդման կամ սևացման որևէ տենդենցի։ Ցավոք սրտի Տերյանի պոետական ժառանգությունը դեռևս չի ստացել իր լիարժեք գնահատականը, մասնավորապես չի պարզաբանվել նրա ստեղծագործական մեթոդի հարցը. ավելին, շատ դեպքերում Տերյանի պոեզիան փորձում են դիտել ռեալիստական գրականության պատմությունից դուրս։

Այսպես, օրինակ, հայ գրականության պատմության դասագրքում կարդում ենք, որ «Սիմվոլիզմի հետ Տերյանի ունեցած ստեղծագործական կապը ցայտուն կերպով արտահայտված է նրա բանաստեղծությունների առաջին գրքում, զգալի չափով նաև 1912 թ. ժողովածուում»։ Այնուհետև նշվում է, որ «ինչպես այդ բնորոշ է սիմվոլիստ բանաստեղծների համար, «Մթնաշաղի անուրջներում» Տերյանի լիրիկական հերոսը ծայրահեղ ինդիվիդուալիստ է, ինքն իր մեջ ամփոփված, առանձնացած աշխարհից ու մարդկանցից, խորթացած, օտարացած ամենքին, հասարակական կյանքին ու պայքարին»։ Թվում էր, որ նման ծանր որակումներից հետո այլևս անհնար է գտնել գաղափարական որևէ առողջ ծիլ, որը հետագայում պետք է աճի ու գերիշխող դառնա Տերյանի պոեզիայում։ Այնուամենայնիվ մենագրության հեղինակը (Ստ. Ասատրյան) գտնում է այդ ծիլը. դա պասիվ երազանքն է, որի մեջ է իբր վառ մնացել Տերյանի՝ ժողովրդի վշտով լի սիրտը, և այդ երազանքի թևերով էր, որ «բանաստեղծը Հոկտեմբերի նախօրյակին մտավ բոլշևիկյան պարտիայի շարքերը», դարձավ «սովետահայ գրականության ու կուլտուրայի սկզբնավորողներից մեկը»։

Կարդում ես այս ամենը և մտածում. արդյո՞ք շատ չէին տկար այդ պասիվ երազանքի թևերը, որ կարողանային պահել ժողովրդի վշտով լի Տերյանի սիրտը, տանել նրան դեպի բոլշևիկյան պարտիայի շարքերը։ Չէ՛, ա՛յլ ավելի երկրային ու պայծառ երազանք է Տերյանին դուրս բերել մենության խավար գնդանից, կապել նրա բախտը ռևոլյուցիա կատարող մարդկանց հետ։

Տերյանի լիրիկական հերոսը, սկսած «Մթնաշաղի անուրջներ»-ից մինչև «Հոկտեմբերյան երգեր»-ը անցել է բարդ ու դժվարին ճանապարհ։ Դարի սկզբին, հատկապես 1905 թվականի ռևոլյուցիայի պարտության և դրան հաջորդած ռեակցիայի տարիներին, նա հաճախ է սրտի կսկիծով հիշում իր պատանեկան մաքուր երազանքները, որոնք փշուր-փշուր եղան իրականության հետ ունեցած առաջին իսկ թեթև շփումից։ Դա չէր կարող հուսահատության, անկումային տրամադրություններ չծնել անփորձ պատանու հոգում։ Որքան



ավելի է նա մոտենում կյանքին, այնքան խորն է ակոսվում նրա վիշտը, այնքան ավելի են սաստկանում նրա սրտի ցավերը։ Սկզբում հերոսը չի հասկանում, թե ով և ինչու է այդքան դաժան վարվում իր հոգու հետ. (Ինձ ո՞վ է մատնել այս մառախուղին)։ Այդ նույն դաժան, անհյուրընկալ իրականությունը միաժամանակ ստիպում է նրան գիտակցել իր ապրումների ակունքները և ձգտել մի նոր, այս անգամ արդեն իրական երազանքի, որի արմատները ոչ թե կապույտ եթերների, այլ երկրի մեջ են։ Իր կենսասեր, բայց և կյանքից խոցված սիրտը բացելով նոր հուզումների մրրիկներին՝ Տերյանի հերոսը անվիճող համառությամբ ձգտում է կողմնորոշվել բարդ իրադարձությունների մեջ, որոշել իր տեղն ու դերը կյանքի ալեկոծումներում։ Նա մեկ խենթանում է մենության չար բեռից, անհուն կարոտով վառված ելք որոնելով ուղիների լաբիրինթոսում, մեկ վհատված հեկեկում, ցանկանալով հեռանալ աշխարհից և մոռանալ ամենքին։ Լինում են պայծառ պահեր, երբ հերոսին թվում է, թե արդեն գտել է իրեն տանջող հարցերի պատասխանը, բայց հետո նորից թանձրանում է խավարը և դարձյալ նույն հարցերը հանգիստ չեն տալիս նրան. «Ով է իր հոգու լույսերը մարել», «Ինչո՞ւ է բոլոր կողմերում թախիծ», ի՞նչ ճանապարհով և ո՞վ է փրկություն բերելու իր տանջահար հայրենիքին։ Այս հարցերի ոչ սպառիչ պատասխանը մենք գտնում ենք «Ոսկե հեքիաթ»-ում։ Այն թախիծը, որ նա երգում էր երեկ, այսօր արդեն խորթ, օտար է թվում նրա սրտին։ Օտար է թվում ոչ թե այն պատճառով, որ վերացել է այդ թախիծը, այլ նրա համար, որ նա սկսել է ճանաչել աշխարհը, մարդկանց, համոզվել է, որ մենակ ինքը չէ տառապում, որ իր արցունքը լոկ մի կաթիլ է ժողովրդի ծով վշտի մեջ։ Ինքնագիտակցության այդ ճանապարհին հերոսը լալիս է իր մենավոր սրտի վերջին արցունքը և արտասվում իր ժողովրդի բախտի համար, ապրում նրան պատած խոր վիշտը։ Եթե երեկ նրա ձայնը կերկերում էր մահվան հանդեպ, ապա այսօր նա չի վախենում մահից, «հավատով է նայում գալիքին», որովհետև այլևս մենակ չէ իր երազանքների ու վշտերի մեջ։

Այնպիսի բանաստեղծություններում, ինչպիսին են՝ «Իմ երգերին», «Հատված», «Վերադարձ», «Գարնանամուտ», «Արշալույս», «Այնպես անխինդ են և նման լացին», Տերյանը պատկերում է իր պոետական անցած ուղին, նշում է իր մոլորությունները, հպարտությամբ է խոսում իր նոր, պայծառ հավատքի մասին։ Ինչպես վերը նշեցինք, Տերյանի մոլորությունները հատկապես ուժեղ են արտահայտվել նրա վաղ շրջանի երգերում։ Այդ փաստը միշտ էլ նշվել է, բայց կուզենայինք ավելացնել հետևյալը. դրանք, այդ մոլորություններն ու անկումային տրամադրությունները հետևանք են ոչ թե իրականությունից որոնեփախչելու, այլ առաջացել են այդ իրականության ճշմարտությունը լու և ռեալիստորեն պատկերելու ճանապարհին։ Նրան միշտ էլ տանջել է հայրենիքի վիշտը. այդ վշտի համար էլ նա ավելի խորն է սիրել։ Իր մի բանաստեղծության մեջ Տերյանն ասում է, որ «իր հեռավոր որոնումներում ու մոլորումներում» միշտ էլ հայրենի եղերքն է եղել։ Եվ դա է ճշմարիտը, որովհետև անաղարտ է եղել նրա վիշտը, և ինչ տառապանքներ էլ որ կրել է, նորից ու նորից սիրելու համար է եղել։ Որ Տերյանի հոգին նույնպես վաղ մտերմացավ վշտի հետ, այդ երևում է նաև նրա նամակներից ու հոդվածներից, նրա մեծ ժամանակակիցների հուշերից։ Տերյանը տեսել է հայ գյու-

ղացու տխուր աչքերը, նրա մտահոգ դեմքը՝ արևով, անձրևով այրված ու բովված, տեսել է, թե ինչ դառն աղքատություն է կաթում նրա վրայից։

Երբ Տերյանն իր պոեզիայի հերոս է ընտրում աշխատավոր մարդուն, դառնալով նրա բողոքի ու ցասման թարգմանը, ավելի մարտական է հնչում նրա քնարը, ավելի խորն ու ռեալիստական է դառնում նրա արտահայտած ճշմարտությունը։ Հետզհետե ձևակերպվում, միս ու արյուն է ստանում նրա ռևոլյուցիոն երազանքը, որը և բերում է Տերյանին բոլշևիկյան պարտիայի շարքերը։

Տերյանը մեծ բանաստեղծ է և որպես այդպիսին նա ևս տեսել ու պատկերել է ժողովրդի սոցիալական կյանքի մի քանի էական կողմերը։ Խնդիրը միայն այն չէ, թե մինչև այդ էական կողմերը նկատելը ինչպիսի մոլորություններ ու սայթաքումներ է ունեցել Տերյանը, այլև այն, թե ինչպես է նա կարողացել հաղթահարել դրանք և կանգնելով իրականության ռեալիստական պատկերման ուղու վրա, դարձել «հայ ժողովրդի ազգային ճնշված վիճակի մեծատաղանդ արտահայտիչը» (Ավ. Իսահակյան), ստեղծել «պայքարի ու ցասման երգեր», փառաբանել «սրբազան ատելությամբ հին աշխարհը քանդողներին» (Կ. Գրիգորյան)։ Ակամա ուզում ես բացականչել. էլ ի՞նչ պետք է կատարեր Տերյանը ռեալիստ կոչվելու համար։ Եթե խսկական գրականությունների պատմությունը հիմնականում ռեալիզմի և առաջադեմ ռոմանտիզմի պատմություն է, ապա որտե՞ղ է Տերյանի տեղը. այդ պատմության մե՞ջ, թե՞ նրանից դուրս։ Այս մասին դասագրքերում ասված է հետևյալը.

«Տերյանի սիրո լիրիկան թեև ռոմանտիկական է, բայց իր օբյեկտիվ նշանակությամբ նա միաժամանակ և քննադատական է՝ օժտված ռեալիզմի տարրերով»: Դժվար չէ նկատել, որ այս այն տարրերն են, որոնք Գրիգորյանի մոտ չակերտների տեսք են ընդունել։ Այս ոլորապտույտ գնահատականը վերծանելու դեպքում կարելի է կռահել, որ ճշմարտության ուժ ստացած նույն մտայնությունը Իսահակյանին ևս խանգարել է առանց վարանելու խոսել Տերյանի ռեալիզմի մասին, որը դրսևորվել է նրա հատկապես վերջին տարիների և սիրային, և մանավանդ պայքարի ու հաղթանակի երգերում։

Տերյանն ամեն ինչ է, բացի ռեալիստ լինելուց։ Ահա այն տխուր եզրակացությունը, որին հանգում ես, կարդալով Տերյանի մասին գրված բազմաթիվ հոդվածներն ու ուսումնասիրությունները։ Ըստ երևույթին շատերին խրտնեցնում է սիմվոլիզմի ստվերը, որը, ի դեպ, անզոր գտնվեց ուղեկցել Տերյանին նրա պոետական զարգացման բոլոր էտապներում։

Այսքանից հետո բնավ էլ զարմանալի չէ, որ Միհրան Քրաչյանը, Վրաստանի հայ գրողների սեկցիայի «Ալմանախում» տպված իր հոդվածում Տերյանին համարում է «պարտիական քնարերգության ռահվիրան», «ռևոլյուցիայի մարքսիստ բանաստեղծ» և այլն։ Այսպիսով, ծայրահեղությունների նժարների հավասարակշռությունից տուժել է պատմական ճշմարտությունը։ Այս ամենն արդյունք են այն բանի, որ մինչև այսօր երկչոտ կամ ոչ ճիշտ է մեկնաբանվել սիմվոլիզմի հետ ունեցած Տերյանի կապը, համոզիչ վերլուծությամբ ցույց չի տրվել, թե գրական-գաղափարական ինչպիսի պայքարով է Տերյանը հաղթահարել սիմվոլիզմի ազդեցությունը։ Այդ բացը շատ դեպքերում խանգարել է հստակ պատկերացում կազմելու այն արժեքավորի, մնայունի մասին, որով Տերյանը ապրում է սերունդների կյանքում։

Տերյանի պոեզիան խոշոր, շատ կողմերով բարդ երևույթ է հայ գրակա-



նության պատմության մեջ։ Դրա ուսումնասիրման և գնահատման ճանապար-
հին անխուսափելի են նաև սխալները։ Պոեզիան նույնպես կյանք է, կեն-
դանի իրականություն, որը կարևորի, խսկականի հետ միասին ունի նաև երկ-
րորդական, ոչ մնայուն երևույթներ։ Գրականագետը պետք է կարողանա ճիշտ
կողմնորոշվել գրական փաստերի մեջ, եթե չի ցանկանում շատացնել սխալ-
վելու հնարավորությունները։ Այդ պահանջի անտեսումը, օրինակ, գրականա-
գետ Ս. Սարինյանին սիմվոլիզմի գնահատման հարցում հանգեցրել է բավա-
կանին կոպիտ սխալի։

Իր հոդվածում (տես «Սովետական Հայաստան» թերթ, 1957 թ., № 20)
նա այն համոզմունքն է հայտնում, թե մեզ մոտ «միակողմանի վերաբերմունք
է նկատվում նաև սիմվոլիզմի գնահատման հարցում»։ Առարկելով Մ. Հյուս-
յանի՝ Մեծարենցի մասին գրած հոդվածի որոշ դրույթներին՝ Սարինյանն այն
կարծիքն է հայտնում, թե հոդվածագիրը փաստորեն անտեսում է սիմվոլիզմի
գրական-պատմական նշանակությունը, որ նա անվերապահորեն է նշում, թե
սիմվոլիզմը իմպերիալիզմի դարաշրջանի բուրժուազիայի հետադիմական գա-
ղափարների և տրամադրությունների արտահայտություն է։ Ըստ Սարինյանի՝
սիմվոլիզմը գրական դեր է խաղացել Մեծարենցի և Տերյանի ստեղծագոր-
ծական կյանքում և հարկ չկա «փրկել» որևէ մեկին սիմվոլիզմից։ Սիմվոլիզմի
ռեակցիոն էությունը վաղուց է մերկացվել և դատապարտվել մարքսիստական
էսթետիկայի կողմից։ Պնդել հակառակը՝ կնշանակի արժեքազրկել այն հաղ-
թանակը, որ ռեալիզմը տարել է դեկադենտականության, սիմվոլիզմի, բուր-
ժուական մեռնող արվեստի այլ հոսանքների դեմ վերջին հարյուրամյակի ըն-
թացքում մղվող պայքարում։

Սարինյանը, ըստ երևույթին, չի կարողանում պատկերացնել, որ սիմ-
վոլիզմին տված գնահատականը ո՛չ բոլոր դեպքերում կարող է վերաբերել
այդ հոսանքին հարած գրողի կոնկրետ ստեղծագործությանը, ուրեմն և ման-
կամտություն է այս կամ այն խոշոր գրողի ծառայությունը վերագրել սիմվո-
լիզմի «պատմական դերին»։ Սիմվոլիզմը, որպես իմպերիալիզմի դարաշրջանի
նեխող գրականության ուղղություն, ունի որոշակի գաղափարական պլատ-
ֆորմա։

«Արվեստը արվեստի համար» պահանջով հանդես գալով ռեալիզմի դեմ՝
սիմվոլիզմը իրականում պաշտպանում էր արվեստը բուրժուական իրականու-
թյանը ծառայեցնելու սկզբունքը։ Ձևականորեն փախուստ տալով կյանքից՝
սիմվոլիզմը իրականում ձգտում էր մասսաներին հեռու պահել ռևոլյուցիոն
իրականությունից, ստեղծել հիվանդագին երազանքների ու կրոնա-միստիկա-
կան իդեալների մի խաբուսիկ աշխարհ, որին հավատացողը երբեք չի կարող
զգալ իր սոցիալական շղթաների ծանրությունը։ Սա է սիմվոլիզմի գրական-
պատմական նշանակությունը։

Փորձեք այդ տեսանկյունից դիտել և գնահատել ոչ միայն Տերյանի, այլև
ռուսական սիմվոլիզմի հիմնադիրներ Բրյուսովի և Բլոկի ստեղծագործություն-
ները և կտեսնեք, որ դրանք իրենց լավագույն մասով ժխտում են սիմվոլիզմը։
Ճշմարտություն որոնելու ճանապարհին հաղթահարելով անկումային տրա-
մադրությունների ու գաղափարական մոլորությունները՝ նրանք վերջ ի վերջո
կանգնում են հարազատ ժողովրդի կողմը, երգում նրա ազնիվ ու վեհ երա-
զանքները։ Այնպես որ Տերյանը դարձել է գեղարվեստական խոսքի խոշորա-

գույն վարպետ ոչ թե սիմվոլիզմի ազդեցության շնորհիվ, այլ այդ ազդեցու-
թյունը հաղթահարելու ճանապարհով:
Սարինյանը, ըստ երևույթին, ենթադրում է, որ եթե գրականությունների
պատմության մեջ եղել է առաջավոր և հետադիմական ռոմանտիզմ, ապա
նույնը կարելի է ասել նաև սիմվոլիզմի կապակցությամբ: Դա խոր մոլորու-
թյուն է: Մոլեռանդ սիմվոլիստ Գիպիուսին ուղղած իր նամակում (1918 թ.)
Բլոկը գրել է. «Մեզ բաժանել է ոչ միայն 1917 թվականը, այլև 1905 թվակա-
նը, երբ ես դեռևս անփորձ էի և քիչ բան էի հասկանում կյանքից»: Բլոկը,
ուրեմն, վաղուց էր գիտակցել, որ իր, որպես արվեստագետի, փրկությունը
սիմվոլիզմից սահմանազատվելու մեջ է, որ «դարը կարող է ներել արվեստա-
գետի բոլոր մեղքերը, բացի մեկից՝ ժամանակի ոգուն դավաճանելուց»:
Անկախ նրանից, թե ինչ չափի ու խորության են Տերյանի սիմվոլիստա-
կան «մեղքերը», ճշմարտության դեմ կլիներ պնդել, թե նա դավաճանել է
ժամանակի ոգուն: Իսկ սիմվոլիզմը իր ողջ էությամբ դավաճանություն էր
ժամանակի ոգուն, արշավանք էր արվեստի գաղափարայնության ու ժողովըր-
դայնության դեմ:
Կամսար Գրիգորյանի գրքի նախնական պաթոսը կարծես թե պետք է
հաստատեր այդ ճշմարտությունը: Բայց երբ խորանում ես սիմվոլիզմի շուրջը
կատարած նրա երկար ու ձիգ դատողությունների մեջ, զգում ես, որ հեղի-
նակը երկչոտությամբ, հազար ու մի վերապահումներով է խոսում Տերյանի
կրած սիմվոլիստական ազդեցությունների մասին, որը վերջ ի վերջո հանգեց-
նում է երկճյուղ սիմվոլիզմի գոյության հայտարարմանը:
Նախ ավելորդ է գրականագետի այն պնդումը, թե Տերյանի ստեղծագոր-
ծական զարգացման առաջին շրջանի շուրջը ծավալված վիճաբանություննե-
րում կարծես հաղթանակել է այն տեսակետը, թե «Տերյանը սիմվոլիզմի հիմ-
նադիրն է հայ պոեզիայում»: Սովետական գրականագիտությունը վաղուց է
մերժել այդ տեսակետը, և հարկ չկար արհեստականորեն հարություն տալու
դրան՝ առաջին հերքողի պատվին արժանանալու համար: Չի կարելի համա-
ձայնել հեղինակի նաև մյուս տեսակետի հետ: Մի քանի առիթով զուգահեռ-
ներ անցկացնելով Բլոկի և Տերյանի միջև՝ հեղինակն ամեն կերպ փորձում է
մեղմել, համարյա աննշան դարձնել Տերյանի սիմվոլիստական «մեղքերը»:
Երբեմն այն տպավորությունն ես ստանում, որ Գրիգորյանը համեմատություն-
ներ է կատարում ոչ թե ճշմարտությունը պարզելու, այլ այդ գրողներին իրար
հակադրելու, մեկը մյուսից բարձր դասելու նպատակով: Ապացուցելու համար
այն թեզը, թե Տերյանն իր հոգեկան խառնվածքով, գաղափարական ակունք-
ներով, պատմական տրադիցիաներով կանգնած է եղել ստեղծագործական այլ
դիրքերի վրա, քան Բրյուսովն ու Բլոկը, գրականագետը փորձել է հաստատել
երկճյուղ սիմվոլիզմի գոյությունը, ըստ որում, առաջին ճյուղի «ամենաբնորոշ
գծերն են»՝ անբավարարվածությունը իրական կյանքից, ձգտումը դեպի կա-
տարելագործ մի այլ աշխարհ, բնության և սիրո գովերգումը, տխուր տրամա-
դրություններ, մռայլ խոհեր մահվան շուրջը, երկրորդ ճյուղի «ընդհանուր
հատկանիշ գծերն են»՝ էսթետիզմը, ծայրաստիճան անհատապաշտությունը,
միստիկան, էրոտիկան, պեսիմիզմը, մահի գովերգումը:
Շինծու այս սխեման բավականին դյուրին է դարձրել գրականագետի
խնդիրը, հաստատելու այն միտքը, թե սիմվոլիզմի հետ Տերյանի ունեցած
կապը պետք է որոնել առաջին ճյուղի մեջ: Իսկ եթե հաշվի առնենք նաև այն



(դարձյալ հեղինակի պնդումով), որ այդ ճյուղին վերագրվող մոտիվները հա-
տուկ են նաև համաշխարհային պոեզիայի շատ ներկայացուցիչներին, «սկսած
բանահյուսության նմուշներից մինչև մեր օրերի քնարերգությունը», ապա
դժվար չի լինի համոզվել, որ Գրիգորյանը ավելի հեռուն է գնում, փորձելով
սիմվոլիզմի ամենաբնորոշ գծերը տարածել ռեալիստական գրականություն-
ների պատմության վրա, և այդ ֆոնի վրա Տերյանի ստեղծագործական ըրժ-
վարությունները ու մոլորությունները ներկայացնել որպես «եզակի բանաս-
տեղծություններում» արտահայտած պատահական «տրամադրություններ»:
Մի՞թե ընկ. Գրիգորյանը չգիտե, որ սիմվոլիզմը մերժվել, դատապարտվել է
ոչ թե այն պատճառով, որ երգել է սեր, բնություն, տխուր խոհեր, այլ նրա
համար, որ մարդկային այդ ազնիվ ու վեհ զգացմունքները չարաշահելով
ոտնահարել է դրանք, անտարբեր մնալով մարդու ճակատագրի, նրա հոգե-
կան աշխարհի փոթորիկների նկատմամբ: Ի՞նչ կստացվեր, եթե հավատա-
յինք Գրիգորյանին: Կստացվեր այն, որ համաշխարհային գրականությանը
հատուկ են սիմվոլիզմի ամենաբնորոշ գծերը, իսկ դա բացարձակ գաղափա-
րական ամնիստիա է, որը միայն կարող է թուլացնել պայքարը ռեալիստա-
կան արվեստի համար՝ ընդդեմ անկումային գրականության:
Խոսելով նախառևոլյուցիոն գրողների լավագույն երկերի մասին՝ Ավետիք
Իսահակյանը գրել է. «Դուք նրանցում կգտնեք ոչ քիչ թվով գեղեցիկ բանաս-
տեղծություններ, արձակի ոգեշունչ էջեր, բայց համարյա բոլորն էլ հագե-
ցած են վշտի, թախծի, տխրության տրամադրություններով: Նրանցում վիշտը
շատ է, ուրախությունը քիչ»: Ի՞նչ խոսք, որ վարպետի նշած վիշտը նույնպես
ոչ մի կապ չունի սիմվոլիզմի «բնորոշ գծերի հետ»: Մի երիտասարդ գրողի
այն հարցին, թե ինչպես է Տերյանի սիրտը դիմացել այդքան մեծ վշտին,
Իսահակյանը պատասխանել է. դիմացել է, որովհետև ժողովուրդը հասկացել
է նրան: Հիշենք, ամենաահավորը կյանքում ժողովրդին անճանաչելի լինելն
է: Հարկ կա նշելու, որ սիմվոլիզմը երբեք տեր չի կանգնել ժողովրդի վշտին
ու հոգու երազանքներին, միշտ էլ թշնամի է եղել դրանց, դրա համար էլ
մերժվել է ժողովրդի կողմից:
Նկատվում է հետաքրքրական մի երևույթ. այն խոշոր տաղանդները,
որոնք եղել են սիմվոլիստներ կամ հարել են սիմվոլիզմին, հետագայում գի-
տակցաբար դատապարտել են արվեստի այդ «պղտոր» ջուրը, զայրույթով են
խոսել «այն կույիտ ու մունտառ» խոսքերի մասին, որոնք թշնամի են «ամենից
քնքուշ ու նուրբ ծաղկին՝ արվեստին», իսկ այսօր գրականագետներից ոմանք,
ճգնում են պնդել հակառակը, մեղանչելով պատմական ճշմարտության դեմ:
Մեր նպատակը չէ մանրամասն կանգ առնել Տերյանի անցած պոետական
ճանապարհի վրա: Մեր խնդիրն է նշել, որ Տերյանը թեև կրել է սիմվոլիզմի
ազդեցությունը, սակայն վերջ ի վերջո հաղթանակել է Տերյանի ռեալիզմը:
Անցյալի յուրաքանչյուր մեծ գրող մշտական մենամարտի մեջ է եղել տիրող
իրականության հետ, որովհետև նա, այդ գրողը, ձգտել է ազատ, երջանիկ
տեսնել իր ժողովրդին, մի երազանք, որը չէր կարող իրականանալ առանց
պայքարի, առանց բախման՝ տիրող դասակարգի շահերին: Այդ մենամարտը
յուրովի են վարել Հակոբ Հակոբյանն ու Շուշանիկ Կուրղինյանը, այլ կերպ՝
Հովհ. Թումանյանը, Ավ. Իսահակյանը և Վահան Տերյանը: Սակայն բոլորն էլ
ծառայել են ժողովրդին, արտահայտել նրա սոցիալական հառաչանքը, պաշտ-
պանել նրա արդար դատը: Մենք հեռու ենք նշված գրողների գրական ժառան-

*գության միջև հավասարեցման որևէ նշան դնելու մտադրությունից, բայց և չենք կարող հակադրել իրար։*

*Մենք կարծում ենք, որ պատմական նույն ժամանակաշրջանի խոշոր գրողների ստեղծագործական առանձնահատկությունները քննելիս մեզ պետք է հավասարապես հետաքրքրի և այն, թե ինչով են, ասենք, Հակոբյանին տարբերում Տերյանից և այն, թե ընթանալով գրական տարբեր ուղիներով՝ ինչպես են նրանք ծառայել ժողովրդին, յուրաքանչյուրը նրանցից սոցիալական ինչ խավերի է ոտքի հանել բուրժուական աշխարհի դեմ։*

*Մաքսիմ Գորկին, խոսելով դեկադենտականության հոսանքի վնասակար, հակահասարակական էության մասին՝ միաժամանակ նշել է, որ այդ հոսանքի մեջ եղել են նաև ազնիվ մարդիկ, որոնք ունենալով զգայուն ներվեր և ազնիվ հոգի՝ մոլորվել են խավար կյանքում և նահատակվել խոցված հոգով, գռեհիկ ու ցոփ կյանքի աղմուկներից տանջահար։ Նրանք նահատակվել են, որովհետև եղել են ազնիվ, չեն ցանկացել ծունկի գալ կուռքերի առջև, հավերժական իդեալներ տանելով իրենց սրտում։*

*Տերյանի լիրիկական հերոսն արտահայտել է նաև այդպիսի նահատակների չիրականացած երազանքները, որոնք չկարողանալով գտնել իրենց որոնածը, գերադասել են հեռանալ աշխարհից, քան լինել նրա ստրուկը։ Այդ հերոսը ներկայացնում է նաև նրանց, ովքեր «տոկուն վշտով» կարողացան դիմանալ դարի հարվածներին, մենամարտի ելան իրենց տխուր անցյալի դեմ և մաքառումներով հասնելով երազած բարձունքին՝ բացականչեցին.*

Քեզ եմ երգում, կարմիր
Արյունաբորբ
Ազատության դրոշ:

*Սոցիալիստական ռեալիզմի էսթետիկան դեռևս քիչ է զբաղվում գրական ազդեցությունների պրոբլեմով։ Մինչդեռ դա շատ կարևոր է գրականությունների պատմության, դրանց փոխադարձ կապերի ու հարստացման երևույթները ճիշտ հասկանալու համար։ Գրական ազդեցության սխալ ըմբռնումը անխուսափելիորեն տանում է դեպի աղավաղում ոչ միայն ազդողի, այլև ազդվողի ժառանգության։ Եթե սխալ ես գնահատում Տերյանի պոեզիան, ուրեմն չես կարող ճիշտ պատկերացում ունենալ նաև գրողների հետագա սերնդի վրա ունեցած նրա բարերար ազդեցության մասին։*

*Ամեն անգամ սովետահայ գրողների վրա Տերյանի ունեցած ազդեցության մասին խոսելիս գրականագետները սովորաբար նշում են, թե շուտով նրանք հաղթահարում են այդ ազդեցությունը և կանգնում ճիշտ ճանապարհի վրա։ Այդպես է վարվում Հ. Մկրտչյանը Գեղամ Սարյանի մասին գրած քննադատական իր ակնարկում։ Նույն կարծիքն է արտահայտված նաև Եղիշե Չարենցի մասին՝ գրականության պատմության դասագրքում։ «Ստեղծագործական առաջին շրջանում Չարենցը գրում է նաև լիրիկական պոեմներ ու բանաստեղծություններ, որոնք կրում են Տերյանի պոեզիայի ազդեցությունը», սակայն «պրոգրեսիվ ուժերի բարերար ազդեցությամբ» Չարենցը աստիճանաբար հաղթահարում է սիմվոլիզմի (իմա Տերյանի) ազդեցությունը» (էջ 95)։ Ի՞նչ է ստացվում։ Ստացվում է, որ Տերյանը հայ պոեզիայի հետագա բախտում միայն բացասական դեր է խաղացել, որ Չարենցը և մյուս բանաստեղծ-*



*ները իրենց անկումային տրամադրություններն ու անորոշ զգացումները քաղել են Տերյանի պոեզիայից և վերջապես, որ Տերյանի ազդեցության հաղթահարումը այն միակ ուղին է, որ տանում է դեպի ռեալիզմ, դեպի կյանքի ճշմարտության պատկերում։ Սրանից բխում է մի այլ ո՛չ պակաս ցավալի հետևություն. բոլոր պոետներն էլ սխալ են հասկացել Տերյանին, չեն կարողացել տեսնել նրա ժառանգության ուժեղ և մնայուն կողմերը։ Այս ամենը խոր մոլորություններ են։*

*Լուրջ ուսումնասիրության դեպքում կարելի է տեսնել Տերյանի բարերար ազդեցությունը և՛ Չարենցի, և՛ Սարյանի ստեղծագործություններում։ Շատ հավանական է, որ Տերյանի արտահայտած անորոշ, անկումային տրամադրությունները նույնպես ազդած լինեն այս կամ այն գրողի վրա, սակայն դրանում չէ Տերյանի պոեզիայի ուժը, և դա չէ, որ ամեն դեպքում պետք է ընդգծել։*

*Գրական ազդեցության երևույթները քննելիս անհրաժեշտ է նշել նախ, թե ի՛նչ ձևով են արտահայտվել դրանք, երկրորդ՝ ազդվողը ինչպես է կարողացել հաղթահարել (եթե բացասական բնույթի են) կամ ուրիշի լավը ձուլել, դարձնել իրենը։ Որքան ինքնուրույն է գրողը, ասել է Բելինսկին, այնքան ընդունակ է նա ուրիշինը դարձնելու իրենը, իր անհատականության կնիքը դնելու վերցրածի վրա։ Այստեղից հետևում է, որ այդ տիպի ազդեցությունը պետք է նպաստի գրողի տաղանդի է՛լ ավելի զարգացմանն ու հասունացմանը։ Մի՞շտ ենք արդյոք այդ տեսանկյունից մոտենում ազդեցության փաստերին։ Դժբախտաբար՝ ո՛չ։ Խոսելով Ն. Զարյանի «Ռուշանի քարափ»-ի գեղարվեստական արժանիքների մասին՝ Հ. Մկրտչյանը գրում է. («Գրական դեմքեր», 1953 թ.) «Ռուշանի քարափը» պոեմի և մի շարք այլ երկերի լեզվի և պատկերավորման մեջ պոետը զգալիորեն կրում էր Հովհաննես Թումանյանի ազդեցությունը։ Հետագայում պահպանելով պոեզիայի ժողովրդայնությունն ու պարզությունը, նա ստեղծեց իր ինքնուրույն ոճը, իսկ այժմ գրում է գրական մաքուր լեզվով։ Բանից պարզվում է, որ Թումանյանը խանգարել է Զարյանին ստեղծելու իր ինքնուրույն ոճը (միայն հետագայում է ձեռք բերել այն), որ Թումանյանը գրական մաքուր լեզվով չի գրել։ Այդ միտքը ոչ ուղղակի ձևով Մկրտչյանը կրկնում է հաջորդ էջում, նշելով, որ հետագա երկերում Զարյանն այլևս չի օգտագործում «էս», «էն», «էսքան» և այլ բարբառային ձևերը։ Հայտնի է, որ «էս» ու «էն»-ի դիրքերից, դեռևս Թումանյանի կենդանության օրոք, շատերն են փորձել արժեքազրկել պոետի լեզվական հարուստ կուլտուրան, համառորեն չնկատելով այն իրողությունը, որ Թումանյանը նույնպիսի հաջողությամբ օգտագործում էր նաև այս (բաց է այս ճամփեն ամենքիս համար), այսպեսը (վեր կաց բանաստեղծ, կանչում է այսպես), այնը (աշխարհում հաստատ մի բան կա միայն; այն է, որ հաստատ ոչ մի բան չկա)։ Ցավալին այն է, որ այսօր նորից են մեջ քաշում այդ էս-ը, մոռանալով, որ լեզվական կուլտուրան ստեղծագործական հասկացողություն է և ոչ թե սոսկ բառերի հավաքածու։ Թումանյանն ու Իսահակյանը գրել են նույն հայերենով, բայց նրանց լեզվական կուլտուրան տարբեր որակի են և բարձր են յուրովի։ Լեզվական կուլտուրա ասելով հասկանում ենք գրողի ստեղծագործական վերաբերմունքը բառի նկատմամբ, խոսքի բոլոր երանգները տիրելու վարպետությունը։*

*Մենք հեռու ենք այն մտքից, թե Մկրտչյանը ծանոթ չէ հիշյալ գրողների*

ստեղծագործությանը: Բայց նա, ըստ երևույթին, հստակ պատկերացում չունի գրական տրադիցիաների մասին, որոնք հետագա սերունդների կողմից շարունակվում են և ո՛չ թե ժխտվում: Հետո, շարունակողը միշտ չէ, որ բարձր է կանգնած նախորդից: Մի կողմից Մկրտչյանը սխալ գնահատական է տալիս Թումանյանի թողած ազդեցությանը, մյուս կողմից պնդում է, թե «Ռուշանի քարափ»-ը վերակենդանացրեց հայ ամենամեծ ժողովրդական պոետի՝ Հովհաննես Թումանյանի տրադիցիաները, առաջ քաշելով պոեզիայի ժողովրդայնության և պարզության հարցը: «Ռուշանի քարափ»-ին նման գնահատական տալը հիմնովին սխալ է: Այդ պոեմում Զարյանը չի վերակենդանացրել ո՛չ Թումանյանի, ո՛չ էլ «կլասիկ պոեզիայի լավագույն տրադիցիաները», այլ պարզապես հաջող փորձ է կատարել օգտագործել դրանք իր ստեղծագործական պրակտիկայում: Այդ տրադիցիաները Զարյանից էլ շատ վաղ տաղանդավոր կերպով շարունակել են Հակոբյանն ու Չարենցը: Պոեզիայի ժողովրդայնության և պարզության տրադիցիաներն ենք տեսնում նաև Գեղամ Սարյանի արևելյան բալլադներում: Ընկ. Մկրտչյանի պնդումից կարելի է գալ այն եզրակացության, թե մինչև «Ռուշանի քարափ»-ի լույս տեսնելը, ամեն ինչ ոտնահարված է եղել և միայն Նաիրի Զարյանին է բախտ վիճակվել վերակենդանացնելու դասական գրականության տրադիցիաները, լուծելու էսթետիկական բոլոր կնճռոտ հարցերը: Այդպիսի դեր վերագրել պոեմին՝ նշանակում է մեղանչել ճշմարտության դեմ, ուրեմն և անտեսել պոեմի իրական արժանիքները:

Հայտնի է, թե ռուս մեծագույն բանաստեղծ Մայակովսկին ինչպիսի կարևոր դեր է խաղացել սոցիալիստական ռեալիզմի զարգացման բնագավառում: Մայակովսկու բարերար ազդեցությունը կրել և շարունակում է կրել նաև սովետահայ պոեզիան: Մայակովսկու հետ ստեղծագործական այդ դաշինքի հիմնադիրը հայ իրականության մեջ Եղիշե Չարենցն է: Չարենցը առաջինը ցույց տվեց Մայակովսկուց սովորելու, բայց և խորապես ինքնուրույն, ինքնատիպ մնալու արվեստի ուղին: Մայակովսկու տրադիցիաների ուսումնասիրման ուղղությամբ զգալի աշխատանք է կատարվել: Հր. Գրիգորյանն այն գրականագետներից է, որը երկար տարիներ զբաղվում է այդ պրոբլեմով: Բնավ չժխտելով գրականագետի կատարած գրական աշխատանքը՝ անհրաժեշտ ենք գտնում մի քանի դիտողություն անել նրա «Մայակովսկին և սովետահայ պոեզիան» ուսումնասիրության մի քանի պնդումների առթիվ:

Մենք սխալ ենք համարում գրականագետի այն պնդումը, թե «Չարենցը, հետևելով Մայակովսկու օրինակին, հիմնական ռեֆորմի ենթարկեց հայ բանաստեղծությունը»: Այդպիսի բան չեն կատարել ո՛չ Մայակովսկին, ո՛չ էլ Չարենցը: Երկուսն էլ հանճարեղ կերպով շարունակելով իրենց ժողովրդի պոեզիայի լավագույն տրադիցիաները՝ զարգացրել, հարստացրել են բանաստեղծական արվեստը: Ազգային պոեզիայի տրադիցիաներին հարազատ մնալը, դարաշրջանի ոգուն մերվելը Չարենցին հնարավորություն տվեց ճիշտ հասկանալ նաև Մայակովսկուն, օգտագործել նրա նորարական փորձը՝ սովետահայ պոեզիայի առաջ ծառացած էսթետիկական խնդիրները լուծելու գործում: Սակայն Մայակովսկու ռեալիզմով երբեք էլ չի սպառվում բազմահարուստ սոցիալիստական ռեալիզմը:

Վեր է ամեն կասկածից, որ վերջինս ավելի խոր ու լայն հասկացողություն է և ստեղծվել է բազմաթիվ խոշոր գրողների ջանքերով: Այնպես որ, չի կարելի պնդել, թե նա, ով սխալվում է, կնշանակի շեղվել է Մայակովսկու տրադիցիաներից, կամ ընդհակառակը, հաջողության հասնելու համար պետք է միայն նրան հետևել: Իր ուսումնասիրության մեջ Գրիգորյանը ամեն կերպ ձգտել է գրական փաստերը հարմարեցնել այդ սխալ պահանջին, որի առաջին նահատակները «Սոմա» և «Ամբոխները խելագարված» պոեմներն են: «Բանաստեղծական անկեղծ շնչով և դեպի հին հասարակարգը տածած ատելության կրքով գրված իր այդ գործերում Չարենցը խանդավառությամբ փառաբանեց ռևոլյուցիան, իրենց ազատագրման համար պայքարող ժողովրդական զանգվածների ամենակարող ուժը, նրանց հերոսական պաթոսը»: Այս միանգամայն ճիշտ գնահատականից հետո Գրիգորյանը կատարում է մի անսպասելի «ընդհանրացում»՝ «այդ երկու պոեմն էլ դեռևս հեռու են սոցիալիստական ռեալիզմի գործեր լինելուց»: Ըստ երևույթին Գրիգորյանն այն կարծիքին է, որ առանց Մայակովսկու ազդեցության Չարենցը չէր կարող սոցիալիստական ռեալիզմի գործեր ստեղծել: Այդ սխալն էլ հենց ստիպել է նրան ոչ ռեալիստական համարել «Սոման» ու «Ամբոխները խելագարված»-ը, որովհետև դրանք չեն կրում Մայակովսկու ազդեցությունը: Ավելին, այդ պոեմների շրջանը Գրիգորյանը համարում է «ստեղծագործական փակուղու» շրջան, որից Չարենցը դուրս է գալիս հետագայում, Մայակովսկու փորձի օգնությամբ: «Ամբոխները խելագարված» պոեմը համարել ստեղծագործական փակուղու շրջանի արտահայտություն՝ նշանակում է ջնջել այն ռևոլյուցիոն ռոմանտիկան, առանց որի անհնար է պատկերացնել սոցիալիստական ռեալիզմը: Որո՞նք են այդ փակուղու նշանները: Սիմվոլիկա՞ն: Բայց չէ՞ որ Հակոբյանը իր «Հեղափոխություն»-ում նույնպես դիմել է ալեկոծված օվկիանի սիմվոլիկային՝ ժողովրդական մասսաների ցասումն արտահայտելու համար: Ամբոխներ բա՞ռը, որի պատմական իմաստը շատերը չեն հասկացել, կարծելով, թե Չարենցը խոսում է չկազմակերպված, ամեն ինչ ավերող, հստակ նպատակից զուրկ մասսաների մասին. բայց չէ՞ որ Հակոբյանը «ամբոխի ցավից է հյուսել» իր երգը: Չէ՞ որ նրա պոեզիայի աշխարհը ամբոխն էր, այսինքն՝ աշխատավոր ժողովուրդը: Մեզ թվում է, որ Գրիգորյանի սխալը գալիս է Մայակովսկու դերի ոչ ճիշտ ըմբռնումից: Մայակովսկու պոեզիան դիտելով որպես միակ կենարար աղբյուրը, որից պետք է սնվեն բոլոր պոետները, Գրիգորյանը չի նկատել, որ դրանից առաջին հերթին տուժում է ինքը՝ Մայակովսկին, որովհետև երբեք նա չի պատկերացրել իրեն գրականության զարգացման ընդհանուր օղակից դուրս: Այդ են վկայում նրա ծրագրային բանաստեղծությունները, հատկապես «Հոբելյանականը», որը սեփական արժանապատվության զգացման և համեստության փայլուն արտահայտություն է: Մի քանի էջ հետո գրականագետը մեզ կանգնեցնում է մի նոր անակնկալի առաջ: «Չարենցը, շարունակելով Հ. Հակոբյանի սկսած գործը, հանդիսացավ սոցիալիստական ռեալիզմի հիմնադիրը հայ գրականության մեջ»: Այսպիսով, Մայակովսկու դերը բարձրացնելու նպատակով թերագնահատվում է Չարենցը, իսկ Չարենցը բարձրացվում է՝ Հակոբ Հակոբյանին սոցիալիստական ռեալիզմի հիմնադրի պատվից զրկելու հաշվին: Մի՞թե Գրիգորյանը չի նկատել, որ փաստերի շուռ տալուց զգալիորեն տուժել են և՛ Մայակովսկին, և՛ Հակոբյանն ու Չարենցը: Հակոբ Հակոբյանի գրական ժառանգության թերագնահատումը նիհիլիզմի ամենացայտուն արտահայտությունն է, որը խորթ է ազգային արժանապատվության առողջ զգացմանը:

*Առավել տարօրինակն այն է, որ իր հետևությունների ճշտությունը հաստատելու համար Գրիգորյանը վկայակոչում է Գ. Էմինի նույնքան սխալ այն միտքը՝ թե «հիմա բանաստեղծների հաջողությունն ու անհաջողությունը մեծ մասամբ կախված է այն բանից, թե որչափով նրանք հասկացել, ստեղծագործորեն յուրացրել են Մայակովսկու ժառանգությունը»: Ինչո՞ւ միայն Մայակովսկու: Իսկ Տվարդովսկո՞ւ, Չարենցի՞, Իսակովսկո՞ւ, Սարյանի՞ և շատ ու շատ ուրիշների՞նը, իսկ անցյալի գեղարվեստական մտքի տիտաննե՞րը: Եվ վերջապես այդ ո՞ր տեսության համաձայն մեկ, թեկուզ և հանճարեղ գրողի ժառանգությունը կարող է դառնալ բոլոր ազգերի, բոլոր գրողների գաղափարական և գրական զարգացման միակ ուղենիշը: Դա խորապես հակասում է գրական տարբեր հոսանքների, գրական անհատականությունների ազատ ու անկաշկանդ զարգացման պահանջին, սոցիալիստական ռեալիզմի գրականության ընդհանուր ուղղության մեջ:*

*Մայակովսկու ժառանգությունը չի կարող օգնել այն գրողին, որը կտրված է կյանքից ու մայրենի գրականությունից, չի կարողանում ճիշտ կողմնորոշվել դարաշրջանի երևույթների մեջ: Հենց իր՝ Գևորգ Էմինի վերջին շրջանի մի շարք գաղափարական սայթաքումներն ու ստեղծագործական անհաջողությունները վկայում են, որ իրականության խոր ճանաչողությունից պիտի գնալ դեպի Մայակովսկին և ոչ թե իրականությունը փոխարինել Մայակովսկու ժառանգությամբ ու ապրել նրա հաշվին:*

*Ինչպես վերը նշեցինք, մեծ է Մայակովսկու ավանդը սոցիալիստական ռեալիզմի պոեզիայի ստեղծման ու զարգացման գործում: Ուրեմն հարկ չկա վերագրել նրան նաև այնպիսի ծառայություններ, որոնք ոչ միայն չեն եղել, այլև անհնար է պատկերացնել: Առավել ևս այդ չի կարելի կատարել ոչ ռուսական, ոչ էլ ազգային մյուս գրականությունների պատմության որոշ էջերի նսեմացման գնով:*

*Կոմունիստական պարտիայի XX համագումարը խնդիր դրեց գաղափարական ֆրոնտի աշխատողների առջև՝ վերացնել անցյալում թույլ տված սխալները, մարքս-լենինյան տեսանկյունից դիտել և գնահատել երևույթները, պայքարելով պատմության ինչպես գունազարդման, այնպես էլ սևացման դեմ: Այդ ուղղությամբ զգալի աշխատանք է կատարված մեր ռեսպուբլիկայի աշխատավորության գաղափարական կյանքում, սակայն փաստերը ցույց են տալիս, որ որոշ ընկերներ սխալ հասկանալով պարտիայի առաջադրած գաղափարական նոր խնդիրները՝ ընկնում են ծայրահեղությունների մեջ, փորձում են վերանայել ամեն ինչ և ամեն ինչ սկսել սկզբից: Այդ սխալ է: Հաղթահարելով նման սխալներ, մենք պետք է մարքսիստորեն լուծենք գրական ազդեցությունների պրոբլեմը:*

---

# ՊԱՐՏԻԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅՈՒՆԸ ԵՎ ԱՐՏԱԴՐԱՆՔԻ ՈՐԱԿԸ

*Ա. ԿՈՍՏԱՆՅԱՆ*

*Լենինականի Տեքստիլ կոմբինատի պարտիական կազմակերպությունները ճշտորեն կենսագործելով պարտիայի XX համագումարի պատմական որոշումները՝ կոնկրետ միջոցառումներ են մշակել արտադրանքի որակի բարձրացման, ինքնարժեքի իջեցման և խնայողության խստագույն ռեժիմի իրագործման ուղղությամբ:*

*Կոմբինատի պարտիական կազմակերպությունները, ադմինիստրացիան և ինժեներա-տեխնիկական աշխատողները սիստեմատիկորեն իրականացնում են արտադրանքի որակի բարձրացմանը նվիրված կազմակերպչական, տեխնիկական միջոցառումներ, կատարելագործում են տեխնոլոգիական պրոցեսները և աշխատանքի ղեկավարման ձևերն ու մեթոդները:*

*Աշխատանքի լավագույն կազմակերպման և արտադրանքի որակի բարձրացման նպատակով կոմբինատի պարտիական կազմակերպությունները հատուկ ուշադրություն են դարձնում արտադրական տեղամասերում կոմունիստների ուժերի ճիշտ տեղաբաշխմանը: Բավական է նշել, որ կոմբինատի պարտիական կազմակերպության անդամների մոտ 80 տոկոսն աշխատում է անմիջապես արտադրության մեջ: Կոմբինատի ֆաբրիկաներում և արտադրական տեղամասերում, ցեխերում և հերթափոխություններում ստեղծված են 44 պարտիական խմբեր, որոնցում ընդգրկված են շուրջ 430 կոմունիստ: Պարտիական խմբերի նիստերում, պարտկազմակերպությունների բյուրոներում և ժողովներում սիստեմատիկաբար քննության են առնվում ֆաբրիկաների դիրեկտորների, ցեխերի պետերի, վարպետների ու նրանց օգնականների, ինժեներա-տեխնիկական աշխատողների և առանձին բանվորների զեկուցումներն ու ինֆորմացիաները՝ կապված թողարկվող արտադրանքի որակի և նրա բարելավման միջոցառումների հետ:*

*1955 թվականի վերջերին շահագործման հանձնվեց հայրենական նոր տեխնիկայով զինված ներկման-վերամշակման ֆաբրիկան: Ֆաբրիկայում յուրաքանչյուր օր ներկվում, դաջվում և վերամշակվում են ինչպես մեր կոմբինատի, այնպես էլ ռեսպուբլիկայի մի շարք այլ գործվածքային ֆաբրիկաների թողարկած շուրջ 200 հազար մետր անմշակ գործվածքներ: Բայց ֆաբրիկայի թողարկած արտադրանքը սկզբնական շրջանում չէր բավարարում մեր սպառողների պահանջներին, ցածր էր արտադրանքի որակը: Հատկապես անորակ էին թողարկվում տպազարդ կտորները և ներքնակի երեսացուները: Սա էր պատճառը, որ 1956 թվականի առաջին եռամսյակում արգելվել էր ֆաբրիկայի դաջած գործվածքների թողարկումը:*

Կոմբինատի պարտիական կոմիտեն և դիրեկցիան լուրջ ուշադրություն
դարձրին Ներկման-վերամշակման ֆաբրիկայի աշխատանքներում տեղ գտած
թերությունների վերացմանը։ Այդ նպատակով կոմբինատի ֆաբրիկանե-
րում և օբյեկտներում աշխատող տասնյակ կոմունիստներ մոբիլիզացվեցին
և աշխատանքի տեղափոխվեցին Ներկման-վերամշակման ֆաբրիկա։ Ահա կո-
մունիստների ուժերի այսպիսի տեղաբաշխման շնորհիվ ֆաբրիկայի բոլոր
ցեխերում և աշխատամասերում ստեղծվեցին պարտիական խմբեր, որոնք
սիստեմատիկորեն զբաղվում են արտադրանքի որակի բարձրացման հար-
ցերով։

Կոմունիստ կադրերի ճիշտ տեղաբաշխման շնորհիվ ամրապնդվեց աշ-
խատանքային կարգապահությունը, ուժեղացվեց ներքին օղակների գործու-
նեության վերահսկողությունը, զգալի չափով բարձրացվեց բանվորների, ին-
ժեներա-տեխնիկական աշխատողների պատասխանատվությունը, բարելավ-
վեց թողարկվող արտադրանքի որակը։ Այսպես, օրինակ, եթե առաջին տե-
սակի արտադրանքի թողարկումը 1956 թվականի առաջին կիսամյակում կազ-
մում էր 85 տոկոս և այդ նույն ժամանակաշրջանում թողարկվել էր 121
հազար մետր քաշային լոսկուտ, որի հետևանքով արտադրանքի արժեքն իջել
էր շուրջ 690 հազար ռուբլով, ապա 1956 թվականի երկրորդ կիսամյակում
առաջին տեսակի արտադրանքը կազմում է 86,4 տոկոս, իսկ քաշային լոս-
կուտը կրճատվել է 50 տոկոսով, որից ստացված օգուտը կազմում է մոտ
340 հազար ռուբլի։

Արտադրանքի որակի բարձրացման համար սիստեմատիկ և կազմա-
կերպված աշխատանք են կատարում Գործվածքային ֆաբրիկայի 4-րդ ցեխի
կոմունիստները։ Նրանց հետևողական աշխատանքի շնորհիվ առաջին տեսակի
արտադրանքի թողարկումը պլանով նախատեսված 91 տոկոսի փոխարեն
հասնում է 95—97 տոկոսի, որի հաշվին օրական ստացվում է մոտ 1500
ռուբլու օգուտ։ Ցեխը 1957 թվականի առաջին եռամսյակի պլանը կատարել
է 104 տոկոսով և թողարկել է մոտ 145 հազար մետր արտապլանային գործ-
վածք՝ տնտեսելով 2 տոննա մանվածք։

Ադմինիստրացիայի գործունեության նկատմամբ վերահսկողության ֆունկ-
ցիան իրականացնելով՝ պարտիական կազմակերպությունն զբաղվում է ար-
դյունաբերության տարբեր բնագավառներին վերաբերող բազմաթիվ հար-
ցերով, նպատակ ունենալով ապահովել պետական առաջադրանքների կատա-
րումը, սարքավորումների արտադրողականության բարձրացումը և թողարկ-
վող արտադրանքի որակի բարելավումը։ Այս խնդիրների կենսագործմանն
ակտիվ մասնակցություն են ունենում կոմբինատի ֆաբրիկաներում և օբյեկտ-
ներում աշխատող տասնյակ ու հարյուրավոր կոմունիստներ։

Պարտիայի XX համագումարի որոշումներից ելնելով՝ կոմբինատում
զգալի աշխատանք կատարվեց տեխնիկական պրոգրեսն ապահովելու, ար-
տադրական տեղամասերը նոր մեքենաներով հագեցնելու և սարքավորումները
մոդեռնացնելու ուղղությամբ։ Այդ բոլորը լուրջ նշանակություն ունեցան ինչ-
պես պետական առաջադրանքների կատարման, այնպես էլ թողարկվող ար-
տադրանքի որակի բարձրացման գործում։ Բավական է նշել, որ մեկ տարում
Մանվածքային ֆաբրիկայում տեղադրվեցին 35 միավոր նոր մեքենա-սար-
քավորումներ, որի շնորհիվ աշխատանքի արտադրողականությունը 8,8 տոկո-
սով բարձրացավ և թողարկվող արտադրանքի որակը բարելավվեց։ Այսպես,



օրինակ, մանող մեքենաների օղակների տրամագծի մեծացումը ֆաբրիկային
հնարավորություն տվեց մանվածքի փաթաթվածքի քաշը յուրաքանչյուր հան-
ման ժամանակ ավելացնել մոտ 7 կգ։ Բացի դրանից, այժմ ֆաբրիկայում
մասսայաբար օգտագործվում են բարձր արագությամբ աշխատող իլիկներ,
որի շնորհիվ ֆաբրիկայի արտադրանքը նախորդ տարվա համեմատությամբ
ավելացել է 5 տոկոսով, նվազել են պարապուրդները, մանվածքի կտրվածքը,
անհավասարաչափ արտադրանքը, հետադարձ մնացորդները և զգալի չափով
բարձրացել մանվածքի որակը։ Այս միջոցառումների շնորհիվ մանող ցեխում
առաջին տեսակի արտադրանքն այժմ կազմում է ամբողջ արտադրանքի 97—
98 տոկոսը։ Որակի բարձրացման և հումքի ռացիոնալ օգտագործման հաշ-
վին տնտեսվել է 84,3 տոննա բամբակ, որի արժեքը կազմում է 750.000
ռուբլի։

Նույն ժամանակամիջոցում յուրաքանչյուր քառակուսի մետրից ավելի
շատ արտադրանք ստանալու համար Գործվածքային ֆաբրիկայում արտա-
դրական նույն տարածության վրա տեղադրվել են մոտ 250 նոր «ԱՏ—100—2»
գործող հաստոց և մինչև տարվա վերջը տեղադրվելու է ևս 248 նոր հաստոց։

Գործվածքային ֆաբրիկայում թողարկվող գործվածքի և նրա պատրաստ-
ման համար օգտագործվող հենքի որակի բարձրացման, ինչպես և մանվածքի
տնտեսման գործում մեծ նշանակություն ունեցավ օսլայող և հանգուցակապ
նոր մեքենաների տեղադրումը։ Բավական է նշել, որ մեկ հանգուցակապ
մեքենան փոխարինեց 35—40 բանվորի և զգալիորեն իջեցրեց արտադրանքի
ինքնարժեքը։

Տեխնիկական պրոգրեսի ապահովման, մեքենասարքավորումների մոդեռ-
նացման և թողարկվող արտադրանքի որակի բարձրացման գործին ակտիվ
մասնակցություն են ցուցաբերում կոմունիստ ռացիոնալիզատորները։ Կոմ-
բինատում այժմ կան 206 ռացիոնալիզատոր, որոնց առաջարկությունների
զգալի մասը նպատակ ունի թողարկվող արտադրանքի որակի բարձրացումը։
Վերջին մեկ տարում կիրառվել է ռացիոնալիզատորների 256 առաջարկու-
թյուն, որի պայմանական օգուտը կազմում է մոտ 1,3 միլիոն ռուբլի։

Այս ուղղությամբ խրախուսելի աշխատանք է կատարված Ներկման-
վերամշակման ֆաբրիկայում և գլխավոր մեխանիկի բաժնում։ Ներկման-
վերամշակման ֆաբրիկայի յուրաքանչյուր 8 բանվորից մեկը և յուրաքանչյուր
2 կոմունիստից մեկը ռացիոնալիզատոր է և ունի 1—3 առաջարկություն։

Երկար ժամանակ Ներկման-վերամշակման ֆաբրիկան ցածրորակ ար-
տադրանք էր տալիս, քաշային լոսկուտի քանակը մեծ չափերի էր հասնում,
որը կտորի արժեքը գցում էր 5—6 անգամ։ Պարտիական կազմակերպությունն
արտադրանքի որակի բարձրացման և լոսկուտի կրճատման վրա կենտրո-
նացրեց ողջ կոլեկտիվի, ինժեներա-տեխնիկական աշխատողների, կոմունիստ-
ների և ռացիոնալիզատորների ստեղծագործ միտքը։ Այդ նպատակով ֆաբ-
րիկայում անցկացվեց արտադրանքի որակի բարձրացմանը և լոսկուտի կրր-
ճատմանը նվիրված նորարարական առաջարկությունների հավաքման միամ-
սյա կոնկուրս։ Կոնկուրսին մասնակցեցին արտադրության տասնյակ առաջա-
վորներ, որոնցից ստացվեցին բազմաթիվ լավագույն առաջարկություններ և
դիտողություններ։ Դրանց կենսագործման շնորհիվ թողարկվող արտադրանքի
որակն զգալի չափով բարձրացավ և լոսկուտի քանակը կրճատվեց։ Ֆաբրիկան

այժմ 0,5-ից 1-ով ավելացրել է առաջին տեսակի արտադրանքի թողարկումը և 50 տոկոսով կրճատել քաշային լուսկուտը:

Եթե մեկ տոկոս առաջին տեսակի արտադրանքի ավել թողարկումը երկրին օրական տալիս է 121,000 ռուբլու օգուտ, ապա 60 հազար մետրով քաշային լուսկուտի պակաս թողարկումը տալիս է 340 հազար ռուբլու օգուտ:

Որակի բարձրացման գործում առանձնապես գնահատելի է Մանարան ֆաբրիկայի կոմունիստ Ս. Աճեմյանի առաջարկությունը: Աճեմյանը սանրող մեքենայի վրա ստեղծել է հատուկ հարմարանք, որը կանխում է կիսաֆաբրիկատի սանրման պրոցեսից առաջացող խոտանը և հազարավոր ռուբլու օգուտ է տալիս:

Կոմբինատի պարտիական կազմակերպությունները թողարկվող արտադրանքի որակի բարձրացման գործում կարևոր նշանակություն են տալիս կադրերի որակավորմանը և նրանց կողմից կատարվող գործողությունների, մարշրուտների և աշխատանքի ճիշտ ու խելացի կազմակերպմանը: Այս նպատակով կոմբինատի ֆաբրիկաների և բաժինների պարտիական կազմակերպությունները հատուկ ուշադրություն են դարձնում կադրերի որակավորմանը, աշխատանքի առաջավոր ձևերի ու մեթոդների ուսումնասիրմանը, տարածմանը և ներդրմանը:

Կադրերի որակի բարձրացման նպատակով կոմբինատում գործում է տեխուսուցման լայն ցանց, որը հիմնականում ղեկավարում են կոմունիստ ինժեներա-տեխնիկական աշխատողները: Տեխուսուցման տարբեր ձևերում և խըմբակներում 1956 թվականի ընթացքում և 1957 թվականի առաջին եռամսյակում սովորել և որակավորվել են տարբեր պրոֆեսիայի տեր 1031 բանվոր և ինժեներա-տեխնիկական աշխատող:

Եթե XVIII պարտհամագումարի անվան Մանարան ֆաբրիկայի բանվորուհիներ Վ. Մանուկյանը, Վ. Հովհաննիսյանը, Մ. Սիմոնյանը, Ա. Ալեքսանյանը մինչև տեխուսուցման սիստեմում սովորելը իրենց առաջադրանքները կատարում էին ընդամենը 80—90 տոկոսով և սիստեմատիկաբար խոտան արտադրանք էին թողարկում, ապա այժմ առաջին տեսակի արտադրանքի թողարկումը հասցրել են 98—99 տոկոսի, պլանով նախատեսված 96 տոկոսի փոխարեն և պետական առաջադրանքի կատարումը հասցրել են 120—130 տոկոսի:

Կոմբինատի պարտիական կազմակերպությունների նախաձեռնությամբ սիստեմատիկաբար ուսումնասիրվում և այնուհետև լայն կերպով մասսայականացվում է առաջավոր նախամանողների, մանողների, ջուլհակների, ա-պագործների, փաթաթողների, վարպետի օգնականների, ռակլիստների, խոտանողների և այլ պրոֆեսիայի տեր առաջավոր մարդկանց աշխատանքի փորձը: Վերջին վեց ամսում ուսումնասիրվել և մասսայականացվել է ջուլհակուհի Հ. Հովհաննիսյանի, վարպետի օգնական Ռ. Գևորգյանի, փաթաթող բանվորուհի Ց. Նազարյանի, դաջող Հ. Վարդանյանի, խառատ Բ. Եղիկյանի և շատ ուրիշների աշխատանքի փորձը:

Կադրերի որակավորման համար կոմբինատի պարտիական կազմակերպությունները հատուկ ուշադրություն են դարձնում բանվորների և ինժեներա-տեխնիկական աշխատողների հանրակրթական և մասնագիտական գիտելիքների բարձրացմանը: Կոմբինատի բանվորներից և ինժեներա-տեխնիկական աշխատողներից 560-ը սովորում են բաներիտ դպրոցներում, 205-ը՝ երեկո-



յան տեքստիլ տեխնիկումում, 27 հոգի՝ հեռակա տեքստիլ ինստիտուտում, 114-ը՝ մասնագիտական տեխնիկական դպրոցում, 170-ը՝ ֆաբգործուսում:

Արտադրանքի որակի բարձրացմանը մեծ չափով նպաստում են նաև կոմբինատի ինժեներա-տեխնիկական աշխատողների ու կոմունիստների կողմից կատարվող էքսպերիմենտալ և գիտա-հետազոտական աշխատանքներն ու ուսումնասիրությունները և Միության առաջավոր ձեռնարկությունների աշխատանքի առաջավոր ձևերի ու մեթոդների ուսումնասիրությունը:

1956 թվականին Մոսկվայի, Լենինգրադի, Իվանովոյի և Միության այլ քաղաքների տեքստիլ արդյունաբերության ձեռնարկություններում փորձի փոխանակման կարգով արտադրական էքսկուրսիայի են ուղարկվել 50 հոգի, այդ թվում՝ արտադրության առաջավորներ Ռ. Իսպիրյանը, Ջ. Մինասյանը, Ա. Ալեքսանյանը, Պ. Խոզանյանը և շատ ուրիշներ:

Այժմ կոմբինատում պլանային կարգով ամսական 2—3 անգամ անցկացվում է «Վարպետի օր»: Այդ օրերին լսվում են առաջավոր վարպետների զեկուցումները աշխատանքի կազմակերպման, սարքավորումների օգտագործման, թողարկվող արտադրանքի որակի բարձրացման, հումքի և օժանդակ նյութերի տնտեսման և արտադրանքի ինքնարժեքի իջեցման ուղղությամբ իրենց կատարած աշխատանքի մասին: Զեկուցումներով հանդես են եկել վարպետներ Ս. Մարտիրոսյանը, Վ. Ասատրյանը, Հ. Թովմասյանը, Ա. Մարտիրոսյանը, Ն. Սվիշչովան և ուրիշներ:

Կադրերի տեխնիկական ուսուցման և աշխատանքի առաջավոր ձևերի ու մեթոդների ներդրման հաջող կազմակերպումը դրական արդյունք է տալիս. կոմբինատում գործարքով աշխատողների 95 տոկոսը սիստեմատիկաբար կատարում և գերակատարում է իր առաջադրանքները:

Այժմ կոմբինատում գործարքով աշխատողների արտադրական նորմաների միջին կատարողականը կազմում է 125 տոկոս: Աշխատանքի առաջավոր ձևերով և առանց խոտանի աշխատում է բանվորների մոտ 95 տոկոսը, 3164 բանվոր արժանացել են առաջավոր բանվորի կոչման, 131-ը բարձրացվել են պատվո տախտակին և պարգևատրվել պատվոգրերով, իսկ վարպետի օգնականներ Գ. Տոնոյանի, Տ. Սարգսյանի (Գործվածքային ֆաբրիկա), Ա. Մելքոնյանի (Մանարան ֆաբրիկա) ղեկավարած բրիգադաներին ՍՍՌՄ թեթև արդյունաբերության մինիստրությունն արժանացրել է «Գերազանց որակի և բարձր արտադրողականության բրիգադա»-ի կոչման:

Կոմբինատի պարտիական կազմակերպությունները բանվորների շրջանում տարվող քաղաքական-դաստիարակչական աշխատանքները գլխավորապես ուղղել են արտադրանքի որակի բարձրացմանը: Արտադրանքի որակի բարձրացման հետ կապված հարցերը սիստեմատիկաբար քննության են առնըվում ֆաբրիկաների պարտբյուրոներում, պարտիական դռնբաց ժողովներում և կոմբինատի պարտիական կոմիտեի նիստերում:

Պարտիական կազմակերպություններն արտադրանքի որակի բարձրացման նպատակով լուրջ ուշադրություն են դարձնում արտադրական խորհրդակցություններ հրավիրելուն և հասարակական ստուգատեսներ անցկացնելուն: Շաբաթը մեկ անգամ Մանվածքային, Գործվածքային, Ներկման-վերամշակման ֆաբրիկաներում և Գլխավոր մեխանիկի բաժնում անց են կացվում թողարկվող արտադրանքի հասարակական ստուգատեսներ, որոնց ընթացքում բացահայտվում են անորակ արտադրանքի առաջացման պատճառները և վե-

*րացման ուղիները։ Ֆաբրիկաներում և ցեխերում ստեղծված են խոտանի
անկյուններ, որտեղ ամեն օր ցուցադրվում են այս կամ այն աշխատողի թո-
ղարկած խոտան արտադրանքի նմուշները և նշվում խոտանի առաջացման
պատճառները։*

*Գործվածքային ֆաբրիկայի գործող առաջին ցեխը երկար ժամանակ պե-
տական առաջադրանքները չէր կատարում ինչպես քանակական, այնպես էլ
որակական տեսակետից, անորակ արտադրանքի թողարկումը մեծ չափերի
էր հասնում։ Այս հարցը հուզում էր ողջ կոլեկտիվին և պարտիական կազ-
մակերպությանը։*

*Ֆաբրիկայի պարտբյուրոյի նախաձեռնությամբ հարցն ուսումնասիրվեց։
Ուսումնասիրմանը մասնակցեցին արտադրության ավելի քան 30 առաջավոր-
ներ, ինժեներա-տեխնիկական աշխատողներ, կոմունիստներ և պարտիական
բյուրոյի անդամներ։ Այնուհետև արտադրանքի որակի հարցը քննության առ-
նըվեց ֆաբրիկայի պարտիական կազմակերպության դռնբաց ժողովում։ Կո-
մունիստներն իրենց ելույթներում բացահայտեցին անորակ արտադրանքի
թողարկման պատճառները։ Պարզվեց, որ աշխատանքը, սարքավորումների
խնամքը վատ էր կազմակերպվում, ցածր էր աշխատանքային կուլտուրան,
հերթերը հանձնվում և ընդունվում էին անկազմակերպ։ Ժողովն ընդունեց
կոնկրետ որոշում, որն ուղղված էր թողարկվող արտադրանքի որակի բարձ-
րացմանը։ Ագիտատորների միջոցով ժողովի որոշումը մասսայականացվեց,
ցեխի կոլեկտիվի շրջանում անցկացվեցին արտադրական խորհրդակցություն-
ներ, հրատարակվեցին որակի բարձրացմանը նվիրված հատուկ պատի թերթ
և ցեխային իլյիչովկաներ։*

*Շուտով այս ամենի արդյունքն երևաց. ցեխը 1957 թվականի առաջին
եռամսյակի առաջադրանքը կատարեց և առաջին տեսակի արտադրանքի թո-
ղարկումը հասցրեց 92,3 տոկոսի՝ պլանով նախատեսված 91 տոկոսի դիմաց։*

*Աշխատավորության շրջանում տարվող ագիտացիոն-մասսայական աշ-
խատանքը ևս կոմբինատի պարտիական կազմակերպություններն ուղղում
են թողարկվող արտադրանքի որակի հետ կապված հարցերի լուսաբանմանը։
Ագիտատորներ Խ. Վարդանյանը, Ս. Համբարձումյանը, Հ. Թումասյանը,
Գ. Նիկողոսյանը, Մ. Գրիգորյանը, Տ. Առաքելյանը սիստեմատիկաբար զրույց-
ներ են անցկացնում արտադրանքի որակի հետ կապված հարցերի շուրջը։
Կոմբինատի պարտիական կոմիտեի և քաղաքական լուսավորության կաբի-
նետի նախաձեռնությամբ ագիտատորների համար պլանավորված կարգով
անցկացվում են արտադրանքի որակին նվիրված սեմինարներ և խորհրդակ-
ցություններ։*

*Պարտիական կազմակերպությունները նաև լուրջ ուշադրություն են դարձ-
նում, որ կադրերը, և հատկապես ինժեներա-տեխնիկական աշխատողներն
ուսումնասիրեն արտադրության կոնկրետ էկոնոմիկայի հարցերը։ Այս նպա-
տակով կոմիտեում գործում են արտադրության կոնկրետ էկոնոմիկան ուսում-
նասիրողների մեկ սեմինար և 2 խմբակ, որոնցում ընդգրկված են 141 ար-
տադրության առաջավորներ և ինժեներա-տեխնիկական աշխատողներ։*

*Որակի բարձրացման գործում մեզ լուրջ օգնություն են ցույց տալիս «Մա-
նածագործ» բազմատիրաժ թերթը, ֆաբրիկաների պատի թերթերը և ցեխային
իլյիչովկաները։ «Մանածագործ»-ը իր էջերում սիստեմատիկաբար լուսաբա-
նում է արտադրանքի որակի հետ կապված հարցերը, խրախուսում գերազանց*



*որակի արտադրանքի վարպետներին և խարազանում է անորակ արտադրանք
թողարկողներին։*

*«Մանածագործ»-ի էջերում լուսաբանվել է գերազանց որակի արտա-
դրանքի վարպետներ, մանող բանվորներ Ս. Շուխյանի, Ա. Առաքելյանի,
Մ. Խաչատրյանի, ջուլհակուհի Ա. Պետրոսյանի, Ա. Գրիգորյանի, Ա. Շառո-
յանի, Կ. Սարգսյանի, վարպետի օգնականներ Ց. Հայրապետյանի, Կ. Սա-
հակյանի, Խ. Լեխլյանի և ուրիշների աշխատանքի փորձը։*

*Արտադրանքի որակի բարձրացման հետ կապված հարցերը սիստեմա-
տիկաբար լուսաբանվում են նաև Ներկման-վերամշակման ֆաբրիկայի պարտ-
բյուրոյի օրգան՝ «Վերամշակող» ամենօրյա պատի թերթի էջերում։ Այս թերթը
հատուկ համարներ է նվի.ում արտադրանքի որակի բարձրացմանը, նրա մի-
ջոցով նամակագրական կապ է հաստատվել կոմբինատի արտադրանքը սպա-
ռող կազմակերպությո.նների հետ։*

*«Վերամշակող» ամենօրյա պատի թերթի 1957 թվականի ապրիլի 8-ի
համարը ամբողջությամբ նվիրված էր արտադրանքի որակի բարձրացմանը։
Թերթում տպագրված է Խարկովի մարզի Բոգորոդխով քաղաքի № 15 խանութի
աշխատողների նամակը՝ ուղղված խոտանող ցեխի բանվորուհի Մ. Խաչա-
տրրյանին, ինչպես և Մ. Խաչատրյանի պատասխանը։ Նամակում գրված է.
«Ընկեր խոտանող, խնդրում ենք ուշադրություն դարձնեք թողարկվող արտա-
դրանքի որակի վրա։ Ձեր կողմից չխոտանված կտորի մետրի ձգվածության
վրա միջնաթել չկա։ Խնդրում ենք պատասխանեք, ինչո՞ւ եք թողարկում անո-
րակ արտադրանք և ինչո՞ւ ՕՏԿ-ն չի հսկում»։*

*Խոտանող Մ. Խաչատրյանը դրան պատասխանում է. «Քաղաք Բոգորու-
խով, № 15 խանութի վարիչին. հայտնում եմ, որ ձեր ուղարկած նամակն իմ
հասցեով, վատորակ արտադրանք թողարկելու վերաբերյալ, ստացա։ Նամա-
կում իմ հասցեին եղած քննադատությունը միանգամայն ճիշտ է։ Նամակը
քննության առնվեց մեր ֆաբրիկայի խոտանող ցեխի կոլեկտիվի ընդհանուր
ժողովում։ Նամակը քննության է առնվել նաև ֆաբրիկայի պարտիական և
կոմերիտական կազմակերպություններում։ Իմ կողմից թողարկված խոտանի
համար ստացա համապատասխան տույժ։ Խոստանում եմ առաջիկայում աշ-
խատել լավ։ Այն ժամանակ, երբ թողարկել եմ այդ խոտանը, եղել եմ աշա-
կերտ։ Այժմ արդեն խոտանող եմ և իմ աշխատանքում կա զգալի առաջադի-
մություն դեպի լավը։ Մեր ֆաբրիկայում անցկացվում են հատուկ պարապ-
մունքներ՝ խոտանողների տեխնիկական մակարդակը բարձրացնելու համար։
Բացի դրանից, ֆաբրիկայի ադմինիստրացիայի և ՕՏԿ-ի կողմից ուժեղացել
է հսկումը խոտանողների աշխատանքների նկատմամբ»։*

*«Մանածագործ» թերթի միջոցով և կոմբինատի կոմերիտական կազմա-
կերպության նախաձեռնությամբ ներկայումս անց է կացվում Հոկտեմբերյան
Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի 40-րդ տարեդարձին նվիրված գերազանց
որակի արտադրանքի կոնկուրս, որին մասնակցում են մոտ 2300 կոմերիտա-
կաններ և երիտասարդներ։ Կոնկուրսի ընթացքի հետ կապված հարցերին
թերթի հատուկ համարներ և էջեր են նվիրվում։ Արտադրանքի որակի բարձ-
րացմանը մեծ չափով նպաստում են նաև երգիծական թերթերը։ Մեզ մոտ
հրատարակվում են «Մեղու», «Բոռ», «Մոծակ» և այլ երգիծական թերթեր։
Պատի թերթերում անորակ արտադրանքի թողարկման համար քննադատվել և*

ծաղրի են ենթարկվել Հ. Վարդանյանը, Մ. Իսպիրյանը, Ա. Գասպարյանը, Ե. Սարգսյանը, Ա. Հովհաննիսյանը։

Արտադրանքի որակի բարձրացմանը նվիրված մասսայական պայքարին ակտիվ մասնակցում են կոմբինատի արտադրանքի գերազանց որակի համար պայքարող բրիգադները։ Կոմբինատում ներկայումս արտադրանքի գերազանց որակի համար պայքարում են 124 բրիգադա, որոնցից 119-ը կատարում են իրենց պարտավորությունները։ Արտադրանքի որակի բարձրացման ուղղությամբ կատարված աշխատանքը տալիս է իր դրական արդյունքը։ Կոմբինատը 1956 թվականի 4-րդ եռամսյակի պետական առաջադրանքը գերակատարեց տեխնիկա-տնտեսական բոլոր ցուցանիշներով և Միության մասշտաբով արժանացավ երրորդ կարգի մրցանակի։ Արտադրանքի որակի բարձրացման, հումքի ռացիոնալ օգտագործման և ինքնարժեքի իջեցման հաշվին կոմբինատը 1956 թվականին ստացավ 1.405.000 ռուբլու լրացուցիչ օգուտ։ Արտադրանքի որակի բարձրացման պետական առաջադրանքը սիստեմատիկաբար կատարում են կոմբինատի բոլոր ֆաբրիկաները։ Մանարան ֆաբրիկան առաջին տեսակի արտադրանքի պլանը կատարում է 98—99 տոկոսով, Գործվածքային ֆաբրիկան՝ 93—93,5 տոկոսով և Ներկման-վերամշակման ֆաբրիկան՝ 86—87 տոկոսով, նախատեսվածից ավել տալով 1—2 տոկոս առաջին տեսակի արտադրանք, որը պետությանը տալիս է հարյուր հազար ռուբլու լրացուցիչ օգուտ։

Սակայն պետք է նշել, որ կոմբինատի թողարկած արտադրանքը միշտ չէ, որ բավարարում է մեր սպառողների օրավուր աճող պահանջներին։ Նկատվում են անորակ արտադրանքի թողարկման դեպքեր։ Սրա պատճառն այն է, որ կոմբինատի պարտիական կազմակերպությունները և ինժեներա-տեխնիկական աշխատողները միշտ չէ, որ ապահովում են ֆաբրիկայի ռիթմիկ աշխատանքը։ Առանձին դեպքերում վատ են օգտագործվում մեքենաներն ու սարքավորումները։ Այսպես, օրինակ, Մանվածքային ֆաբրիկայում հաճախ մանող ցեխը չի ապահովվում կիսաֆաբրիկատներով, ֆաբրիկայի նախապատրաստական բաժնի թողարկած արտադրանքի որակը մինչև օրս չի բավարարում մանողների պահանջը։ Գործվածքային ֆաբրիկայում վատ են օգտագործվում մեքենաներն ու սարքավորումները, ցածր է հինող, փաթաթող, ոսլայող և ասպի ցեխերի թողարկած արտադրանքի որակը, որը բացասաբար է անդրադառնում արտադրանքի որակի և մեքենաների ու սարքավորումների արտադրողականության բարձրացման վրա և պատճառ է դառնում հում նյութի անխնամ օգտագործման։

Կոմբինատի կոլեկտիվը, պարտիական կազմակերպությունները, ինժեներա-տեխնիկական աշխատողները կենսագործելով պարտիայի XX համագումարի պատմական որոշումները և մտնելով Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռեոլյուցիայի 40-րդ տարեդարձի պատվին ծավալված սոցիալիստական մրցության մեջ՝ պայքարում են պետական առաջադրանքների կատարումը տեխնիկա-տնտեսական բոլոր ցուցանիշներով ապահովելու և մեր Հայրենիքին ավելի շատ բարձրորակ արտադրանք տալու համար։

---

# ԱՌԱՋԱՎՈՐ ԿՈԼՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ ԿՈՄՈՒՆԻՍՏՆԵՐԸ

## Հ. ՄԵՐԿՅԱՆ

Մեր ռեսպուբլիկայում Շահումյանի շրջանի Ստալինի անվան գյուղատընտեսական արտելը առաջավոր կոլտնտեսության համբավ է վաստակել։ Տարեց-տարի աճում են նրա եկամուտները և բարձրանում է կոլտնտեսականների նյութական բարեկեցությունը։ Եթե 1955 թվականին կոլտնտեսության դրամական եկամուտը կազմեց 4 միլիոն 33 հազար ռուբլի և աշխօրին բաշխվեց 28 ռուբլի, ապա 1956 թվականին դրամական եկամուտը հասավ 5 միլիոն 800 հազար ռուբլու։ Պետական բոլոր պարտավորությունները ժամկետից շուտ կատարելուց, կապիտալ ներդրման և մյուս ֆոնդերն առանձնացնելուց հետո, կոլտնտեսականներն իրենց վաստակած ամեն մի աշխօրի դիմաց ստացան 50 ռուբլի դրամ, 900 գրամ ցորեն, 2 կիլոգրամ խաղող և այլ մթերքներ։ Քիչ չեն այնպիսի կոլտնտեսականների ընտանիքներ, որոնք վաստակած աշխօրերի դիմաց ստացան 40—50 հազար ռուբլի կանխիկ դրամ և մեծ քանակությամբ բնամթերքներ։ Օրինակ, անասնապահ Ս. Իսոյանի ընտանիքը կոլտնտեսությունում կատարած իր ազնիվ աշխատանքի դիմաց ստացավ 50 հազար ռուբլի դրամ, 900 կիլոգրամ ցորեն, 2012 կիլոգրամ խաղող և այլ մթերքներ։ Վաստակած աշխօրերի դիմաց 47 հազար ռուբլի դրամ ստացավ դաշտավար Երվանդ Վարդանյանի ընտանիքը։

Այս հաջողությունը ձեռք բերվեց շնորհիվ այն բանի, որ կոլտնտեսության պարտկազմակերպությունը պարտիական-քաղաքական աշխատանքը հմտորեն զուգակցելով տնտեսական խնդիրներին և սերտորեն համագործակցելով կոլտնտեսության վարչության հետ՝ ինչպես կոմունիստների, այնպես էլ աշխատավորության ամբողջ ուժերն ուղղեց գյուղատնտեսության շեշտակի վերելքի վերաբերյալ պարտիայի ու կառավարության մշակած ծրագրի կենսագործմանը։

Կոլտնտեսությունում կոմունիստները մեծ ուժ են կազմում։ Այստեղ պարտիական կազմակերպության 35 անդամից 30-ը աշխատում են անմիջապես արտադրության վճռական տեղամասերում։ Դաշտավարական, այգեգործական 6 բրիգադներում և անասնաբուծական ֆերմաներում կազմակերպված են պարտիական խմբեր։

Մինչև վերջին տարիներս այստեղ անասնաբուծությունը խիստ ետ մնացող ճյուղերից մեկն էր։ Ձկային տիպային գոմեր, անասուններն ապահովված չէին անհրաժեշտ քանակությամբ կերով, կովերի ստերջությունը զգալի տոկոս էր կազմում, ցածր էր անասնաբուծության մթերատվությունը։ Այդպես շարունակել չէր կարելի։ Պարտիական կազմակերպությունը և կոլտնտեսության վարչությունը վերանայեցին անասնաբուծության բնագավառում աշխա-

տող կադրերը և այնտեղ ուղարկեցին եռանդուն, ձեռներեց նոր կադրեր, այդ թվում նաև կոմունիստներ Ա. Ավետիսյանին, Ա. Սիմոնյանին և Ս. Ալեքսանյանին։ Վերջինս մի քանի տարի է, որ ֆերմայի վարիչ է։ Նրա ղեկավարած կաթնապրանքային ֆերման այժմ արդեն մեր ռեսպուբլիկայի ամենաառաջավոր ֆերմաներից մեկն է թե՛ անասնաբուծության մթերքների արտադրությամբ, և թե՛ աշխատանքի կուլտուրայով։

Ամբողջովին փոխվել է անասնաբուծության վիճակը։ Բոլոր անասուններն ապահովված են բարեկարգ, լուսավոր գոմերով։ Ֆերմաներում աշխատատար ծանր պրոցեսները՝ կերի մանրացումը, խաշումը, մատուցումը, գոմաղբի դուրս բերումը մեքենայացվել են։ Գոմերում դրվել են ավտոմատ խմոցներ, էլեկտրակթի ագրեգատներ։ Կաթնատու անասունների կերակրման ու խնամքի ընթացքում հաշվի է առնվում յուրաքանչյուրի յուրահատուկ պահանջը, կաթնատվությունը, կենդանի քաշը։

Կաթնապրանքային ֆերման, որն ունի 100 գլուխ բարելավված ցեղի կով, անցյալ տարի արտադրեց 402.000 կիլոգրամ կաթ։ Միջին հաշվով ամեն մի կովից կթվեց 4017 կիլոգրամ կաթ։ 100 հեկտար հողատարածության հաշվով կաթի արտադրանքը կազմեց 640 ցենտներ, միսը՝ 102 ցենտներ (կենդանի քաշով), բրդինը՝ 572 կիլոգրամ։ Ամեն մի մերուից ստացվեց 15 խոճկոր, մեկ հավից 91 ձու, 100 հեկտար հողատարածության դիմաց կոլտնտեսությունն ունի 45 գլուխ խոշոր եղջերավոր անասուն, այդ թվում 17 կով։

Անասնաբուծության ֆրոնտի ամենաառաջավոր մարդկանցից է պարտիայի անդամ Բ. Գևորգյանը։ 28 տարի անընդհատ աշխատելով անասնաբուծության ֆրոնտում՝ նա այժմ դարձել է մեր ռեսպուբլիկայի մասնագիտացած կթվորուհիներից մեկը։

Անցյալ տարի կոլտնտեսությունը մեծարելով անվանի կթվորուհուն՝ հանդիսավոր կերպով նշեց նրա ծննդյան 50-ամյակը։ Միայն վերջին վեց տարվա ընթացքում Գևորգյանն իր խնամած կովերից ստացել ու աճեցրել է 66 հորթ։ Նրա լավ աշխատանքով է, որ ֆերմայի մայրական կազմն ամեն տարի լրացվում է լավագույն երինջներով։ 1955 թվականին նա իր խնամած ամեն մի կովից ստացել է 3641 կիլոգրամ կաթ, իսկ 1956 թվականին՝ 4515 կիլոգրամ։ Իր աշխատանքի փորձի մասին Գևորգյանը զեկուցումներ է կարդացել ինչպես իրենց, այնպես էլ շրջանի Անաստասավան, Դավիթաշեն գյուղերի կոլտնտեսությունների անասնապահների համար։ Լավագույն աշխատանքի համար Բ. Գևորգյանը չորրորդ անգամ մասնակցում է Համամիութենական գյուղատնտեսական ցուցահանդեսին։

Մեր ռեսպուբլիկայում լայնորեն հայտնի է նաև այս կոլտնտեսության առաջավոր կթվորուհի, կոմունիստ Ա. Ավետիսյանի անունը։ Նա անցյալ տարի իր խնամած ամեն մի կովի կաթնատվությունը հասցրեց 5029 կիլոգրամի, ռեսպուբլիկայում գերազանցելով բոլոր կթվորուհիներին։ Ավետիսյանն իր անձնվեր աշխատանքի շնորհիվ միջին հաշվով ամսական ստացել է 2500—3000 ռուբլի կանխիկ դրամ։ Բացի այդ, նա 1956 թվականին ստացել է 500 կիլոգրամ ցորեն, 1100 կիլոգրամ խաղող և այլ մթերքներ։ Անվանի կթվորուհին կոլտնտեսության վարչությունից որպես հավելյալ վարձատրություն ստացել է 1450 լիտր կաթ։

Պարտիայի անդամ Անուշավան Սիմոնյանն անցյալ տարի իր խնամած



ամեն մի ոչխարի բրդատվությունը հասցրեց 3,25 կիլոգրամի։ Այս տարի նա արդեն յուրաքանչյուր 100 ոչխարից ստացել և պահպանել է 104 գառ։

Կոմունիստներն իրենց լավագույն աշխատանքով ու ավանգարդային դերով աչքի են ընկնում նաև դաշտավարության և այգեգործության բնագավառում։ Այսպես, օրինակ, մի քանի տարի առաջ № 6 բրիգադայի խաղողի այգիների բերքատվությունը շատ ցածր էր։ Հեկտարի միջին բերքատվությունը 30—35 ցենտներից չէր բարձրանում, որովհետև մշակությունը լավ չէր կատարվում. ճիշտ չէին կիրառվում ագրոտեխնիկական կանոնները, մեծ տոկոս էր կազմում այգիների նոսրությունը։ 1954 թվականին բրիգադայի բրիգադավար նշանակվեց պարտբյուրոյի անդամ, կոմունիստ Սեդրակ Թաշչյանը։ Նրան հաջողվեց ակտիվ կոլտնտեսականների օգնությամբ կարգ ու կանոն ստեղծել բրիգադայում, ամրապնդել աշխատանքային կարգապահությունը և հասնել այն բանին, որ հիմնովին բարելավվի այգիների մշակությունը, ճշտորեն կիրառվի գործավարձային սիստեմը, ժամանակին ստուգվի, հաշվի առնվի և աշխօրերի գրքույկներում գրանցվի կոլտնտեսականների կատարած աշխատանքը։ Դրան զուգընթաց միջոցառումներ ձեռնարկվեցին այգիների նոսրությունը վերացնելու, պարարտացման, բուժման առաջավոր մեթոդներ կիրառելու ուղղությամբ։ Արդյունքը եղավ այն, որ 1956 թվականին Թաշչյանի ղեկավարած բրիգադայի այգիների յուրաքանչյուր հեկտարի բերքատվությունը 1954 թվականի համեմատությամբ բարձրացավ կրկնակի չափով։ Բրիգադան բարձր բերք ստացավ նաև գյուղատնտեսական մյուս կուլտուրաներից։

Նախատեսած 84 ցենտների դիմաց անցյալ տարի ամեն մի հեկտարից 113,2 ցենտներ խաղողի բերք աճեցրեց կոմունիստ Խ. Մարտիրոսյանի ղեկավարած բրիգադան։ Իսկ այդ բրիգադայի անդամ կոմունիստ Փ. Առուշանյանի ղեկավարած օղակը ամեն մի հեկտարից ստացավ 117,3 ցենտներ խաղող։ Բրիգադան աշնանացան ցորենի յուրաքանչյուր հեկտարի բերքատվությունը նախատեսած 27 ցենտների դիմաց հասցրեց 34 ցենտների։

Այն բրիգադան, որը ղեկավարում է ՍՄԿՊ անդամ Վ. Գրիգորյանը, 1955 թվականին յուրաքանչյուր հեկտարից նախատեսած 60 ցենտների դիմաց ստացավ 71,4 ցենտներ խաղող։ Իսկ անցյալ տարի այդ բրիգադան խաղողի այգիների ամեն մի հեկտարի բերքատվությունը նախատեսած 78 ցենտների դիմաց հասցրեց 107,5 ցենտների։ Այդ բրիգադայից կոմունիստ Սեդրակ Գաբրիելյանի օղակը ամեն մի հեկտարից տվեց 110 ցենտներ խաղող։ Գյուղատնտեսական կուլտուրաների բարձր բերք աճեցրեց նաև պարտբյուրոյի քարտուղար Գ. Ստեփանյանի ղեկավարած բրիգադան։

Ամբողջովին վերցրած կոլտնտեսությունը անցյալ տարի ամեն մի հեկտարից ստացավ 96 ցենտներ խաղող, 29 ցենտներ հացահատիկ, 280 ցենտներ բանջարեղենի համախառն բերք։

Կոլտնտեսության վարչությունը, որի նախագահն է Սոցիալիստական Աշխատանքի հերոս Ա. Մեժլումյանը, և պարտիական կազմակերպությունը տնտեսությունը խելացիորեն վարելու գործում լայնորեն օգտագործում են կոլտնտեսականների ստեղծագործական նախաձեռնությունը, որոնում և գտնում են աշխատանքի կազմակերպման ու վարձատրման առաջավոր եղանակներ՝ բարձրացնելով կոլտնտեսականների նյութական շահագրգռվածությունը։

Այս կոլտնտեսությունը Շահումյանի շրջանում առաջիններից մեկն էր, որ պայքար ծավալեց ներքին ռեզերվները խելացիորեն օգտագործելու, վար-

չական ծախսերը կրճատելու և արտադրանքի ինքնարժեքն իջեցնելու համար։

Անցյալ տարվա մայիս ամսից կոլտնտեսությունում կիրառվում է ամենամսյա ավանսավորում՝ դրամով ու բնամթերքներով։ Այն կոլտնտեսականները, որոնք 250 օր աշխատել են արտադրության մեջ և կատարել են աշխօրերի մինիմումը, տարեկան ստանում են կես ամսվա արձակուրդ։ Կոլտնտեսականներին արձակուրդի ժամանակաշրջանի համար գրանցվում է աշխօր՝ 15 օրվա վաստակած միջին աշխօրերի չափով։ Ջառամյալ կոլտնտեսականներին որպես կենսաթոշակ ամսական 8—15 աշխօր է գրանցվում։

Ընթացիկ տարվա փետրվարին կոլտնտեսության ընդհանուր ժողովում մի խումբ հնագույն կոլտնտեսականներ խնդիր դրեցին՝ արտելում ունենալ ավագների խորհուրդ, որի նպատակն է բազմամյա փորձով օգնել կոլտնտեսության է՛լ ավելի ամրապնդման, գյուղատնտեսական մթերքների արտադրության ավելացման գործին և գիտելիքներ ու փորձ հաղորդել երիտասարդներին։ Այդ առաջարկը ժողովականները ջերմորեն ընդունեցին։ Ընտրվեց ավագների խորհուրդ՝ բաղկացած կոլտնտեսությունում աշխատող 50 առաջավորներից։

Ավագների խորհուրդն արդեն սկսել է իր աշխատանքը։ Ավագները արժեքավոր առաջարկություններ են արել գյուղատնտեսական տարբեր կուլտուրաների ցանքի ժամկետների, սերմերի նորմաների վերաբերյալ։ Ավագների խորհրդով այս տարի այգիների տնկումներն ու լրացումները կատարվելու են բացառապես կիլչեցված կտրոններով։ Այգետունկի այս եղանակն ապահովում է կտրոնների 98—100 տոկոսի կպչողունակությունը, արագ արմատակալումը և ուժեղ աճը։

Պարտիական կազմակերպությունը, նրա անդամները միշտ եղել են կոլտնտեսային արտադրության մեջ նորի, առաջավորի պրոպագանդման ու արմատավորման համարձակ նախաձեռնողները։ Նրանք ամեն կերպ օգնում են կոլտնտեսականներին՝ գյուղատնտեսության գիտության նվաճումները, առաջավոր փորձը լայնորեն արմատավորելու գործում։ Խաղողի հին, թմբային սիստեմի այգիները լարային սիստեմով վերակառուցելու, վազերը բներով պարարտացնելու, այգետնկումներն ու լրացումները կիլչեցված կտրոններով կատարելու, անասնաբուծության աշխատատար պրոցեսները մեքենայացնելու, հորթերը մորից անջատ կերակրելու առաջին նախաձեռնողները եղան կոլտնտեսության կոմունիստները։ Նրանցից յուրաքանչյուրն իր աշխատանքի տեղամասում լավագույն ագիտատոր ու պրոպագանդիստ է։ Կոլտնտեսականների համար նրանք օրվա թերթեր են ընթերցում, զրույցներ կազմակերպում ՍՍՌՄ ներքին ու արտաքին քաղաքականության հարցերի, միջազգային դրության, ժողովրդական դեմոկրատիայի երկրների հաջողությունների մասին, լույս են ընծայում բրիգադային, ֆերմային խլյիշովկաներ, տարածում առաջավորների փորձը։

Ստալինի անվան կոլտնտեսության կոմունիստները չեն հանգստանում ձեռք բերված հաջողություններով։ Նրանք ամենօրյա քաղաքական-մասսայական աշխատանքների միջոցով մոբիլիզացնում են կոլտնտեսականներին՝ երկրին ավելի շատ գյուղատնտեսական մթերքներ տալու համար։

---

# ԲՆԱԿԱՐԱՆԱՅԻՆ ՖՈՆԴԻ ՊԱՀՊԱՆՄԱՆ ՄԱՍԻՆ

## Բ. ՄԻՐԶՈՅԱՆ

Մարդու նյութական և կուլտուրական կյանքի մակարդակը մեծ չափով բնորոշվում է բնակարանային պայմաններով։ Բարեկարգ, լուսավոր ու ընդարձակ բնակարանը ոչ միայն բարերար ազդեցություն է թողնում մարդու առողջության վրա և լավացնում նրա նյութական և կուլտուրական կյանքի պայմանները, այլև բարձրացնում է աշխատանքի արտադրողականությունը։

Չնայած այն հսկայական նշանակությանը, որ ունի բնակարանը մարդու կյանքում, մինչև այժմ ոչ մի երկրում դեռևս չի լուծված բնակարանային հարցը։ Զարգացած արդյունաբերական կապիտալիստական երկրներում պակասում է 30 մլն. բնակարան, իսկ թույլ զարգացած երկրներում 150 մլն. ընտանիք բնակարանի խիստ կարիք ունեն։

Կապիտալիզմը չի կարող վերացնել բնակարանային կարիքը թեկուզ այն պատճառով, որ բնակարանային շինարարությունը հանդիսանում է կապիտալի կիրառման մի այնպիսի օբյեկտ, որտեղ բանվորը կրկնակի շահագործման է ենթարկվում՝ մեկ որպես շինարար բանվոր, մեկ էլ որպես բնակարանի վարձակալ։ Այդ է պատճառը, որ բանվորը շատ դեպքերում ստիպված է լինում առանց այն էլ իր խղճուկ բյուջեի $1/3$-ը տալ բնակարանի վարձ։ Պատահական չէ նաև, որ յուրաքանչյուր կապիտալիստական քաղաքում բնակելի տների 2—10 տոկոսը սովորաբար դատարկ է լինում, այն դեպքում, երբ հասարակության հատկապես աղքատ խավերն ստիպված են բնակվել գետնախորշերում, նկուղներում, կամ նույնիսկ մնալ անօթևան։

Սովետական Միությունում ռևոլյուցիայից հետո ստեղծվեցին ռեալ պայմաններ բնակարանային հարցի լուծման համար։ Նախ բնակարանը դադարեց շահագործման օբյեկտ լինելուց և ապա հասարակական բոլոր խավերի համար այն դարձավ մատչելի։ Սոցիալիստական ռևոլյուցիան բանվորին բնակարան ստանալու հնարավորություն տվեց։ Սովետական իշխանության գոյության տարիներին կառուցվել և շահագործման են հանձնվել 462,6 մլն. քմ բնակելի տներ։ Քաղաքների բնակելի ֆոնդը նախառևոլյուցիոն շրջանի համեմատությամբ ավելացել է 3,5 անգամ։ Չնայած ձեռք բերված հաջողություններին, մեզ մոտ բնակարանային հարցը մնում է դեռևս չլուծված։ Չպետք է մոռանալ, որ սովետական իշխանությունը ցարական Ռուսաստանից ստացել է հետամնաց և քայքայված բնակարանային տնտեսություն, զուրկ ժամանակակից կոմունալ հարմարություններից, մեծ մասամբ փայտաշեն և խարխուլ շենքեր։ Այնուհետև, Սովետական Միության քաղաքների բնակարանային ֆոնդին մեծ վնաս են հասցրել պատերազմները։ Քաղաքացիական և երկրորդ համաշխարհային պատերազմների ժամանակ օկուպանտների կողմից ոչնչացվել են ավելի քան 1,5 մլն. բնակելի տներ։

Կոմունիստական պարտիան և Սովետական Կառավարությունը այժմ խնդիր են դրել համեմատաբար կարճ ժամանակամիջոցում լիովին բավարարել աշխատավորների բնակարանային պահանջմունքները։

Բավական է ասել, որ 6-րդ հնգամյակում կկառուցվեն ավելի շատ բնակարաններ (300 մլն քմ), քան եղել է քաղաքների բնակարանային ֆոնդը 1930 թվականին։ Հնգամյակի վերջում քաղաքների բնակարանային ֆոնդը 1955 թվականի համեմատությամբ կաճի ավելի քան 1/3-ով։ Մեկ շնչին հասանելիք բնակարանային տարածությունը, որը մինչև հիմա քաղաքային բնակչության բուռն աճման հետևանքով էական փոփոխություն չի կրել, հնգամյակի ընթացքում շոշափելիորեն կբարձրանա։ Այն կկազմի մոտ 9 քմ (6 քմ բնակելի տարածություն)։

Խնդիրն այն է, որպեսզի հաջորդ հնգամյակի ընթացքում մեկ շնչին հասնող բնակարանային տարածությունը հասցնել սանիտարական նորմաներին և ապա անցնել ամենաառաջավոր կապիտալիստական երկրներից։

Բնակարանային հարցի լուծումը հիմնականում կախված է այն բանից, թե ինչքան և ինչպիսի բնակարաններ են կառուցվում, այդ պատճառով էլ բնակարանային շինարարության հարցերի լուծումը խիստ կարևոր նշանակություն ունի։

Սակայն այդ պրոբլեմի վերջնական լուծման համար ոչ պակաս կարևոր նշանակություն ունեն այնպիսի հարցեր, ինչպիսին են բնակարանների պահպանումը և բաշխումը։ Այս հոդվածում մենք կանգ կառնենք բնակարանների պահպանման հարցերի վրա, ելնելով Երևան քաղաքի օրինակից։

Միության քաղաքների և բանավանների բնակելի ֆոնդն այս տարվա վերջին կկազմի ավելի քան 700 մլն. քմ ընդհանուր տարածություն։ Եթե ընդունենք, որ ամեն մի քմ կառուցելու և շահագործելու համար անհրաժեշտ է լինում ծախսել միջին հաշվով ոչ պակաս քան 1000 ռուբլի, ապա պարզ կլինի, թե ինչքան մարդկային աշխատանք է ծախսվել այդքան նյութական բարիք ստեղծելու համար։ Բնակարանային ֆոնդը դրամական արժողությամբ բոլոր ֆոնդերի մեջ գրավում է 3-րդ տեղը, զիջելով արդյունաբերությանը և տրանսպորտին։ Հասկանալի է, որ այդ հսկայական նյութական հարստության պահպանումը և խնամքն ունեն առաջնակարգ նշանակություն։

Բնակելի տունը նյութական այն բարիքներից է, որի արտադրության, հետևապես նաև վերարտադրության պրոցեսը չի դադարում նրանով, հենց որ մարդիկ նրա մեջ բնակություն են հաստատում, այլ շարունակվում է այնքան, որքան մարդիկ ապրում են նրա մեջ, ասենք 50—100 տարի։ Բավական է ասել, որ բնակելի տան գոյության ընթացքում նրա նորմալ կյանքն ապահովելու համար անհամեմատ ավելի շատ միջոցներ են ծախսվում, քան այն կառուցելու պրոցեսում։ Ընդ որում փորձը ցույց է տալիս, որ բնակելի շինության մաշվածության պրոցեսն ավելի արագ է ընթանում նրա կյանքի և ծառայության առաջին և հատկապես վերջին շրջանում։ Շենքի կյանքը երկարացնելու համար կարևոր նշանակություն ունի նրա այս կամ այն շուտ մաշվող մասերի ժամանակին վերանորոգումը. ինչքան բնակելի շենքի պահպանումը լավ հիմքերի վրա է դրված լինում, այնքան համեմատաբար քիչ միջոցներ են ծախսվում վերանորոգման համար և այնքան ավելի է երկարաձգվում նրա կյանքը։



Այսպիսով, բնակարանների ժամանակին և որակյալ վերանորոգումը նպաստելով բնակարանային ֆոնդի ընդլայնմանը, միաժամանակ ապահովում է բնակիչների նորմալ բնակարանային պայմանները։ Այլապես բնակելի տները ոչ միայն ժամանակից շուտ կարող են շարքից դուրս գալ, այլև արհեստականորեն առաջանում է բնակարանի կարիք նույնիսկ այն քաղաքացիների համար, որոնք բավարարված են բնակարանային տարածությամբ։

Շատ հաճախ մարդու ամբողջ կյանքն անցնում է միևնույն բնակարանում։ Այդ նույն ժամանակ արտադրողական ուժերի զարգացման և նյութական ու կուլտուրական մակարդակի բարձրացման հետ միասին փոխվում են նաև նրա բնակարանային պահանջմունքները։ Այդ պատճառով էլ անհրաժեշտություն է առաջանում, որպեսզի բնակելի շենքը պահվի ոչ միայն իր նախնական վիճակում, այլև որոշ վերակառուցումների միջոցով այն համաբեցվի առաջացած նոր պահանջմունքներին։

Այսպիսով, ընթացիկ և հիմնական վերանորոգումների հետ զուգընթաց, անհրաժեշտ է լինում շենքի բնակելի և կոմունալ հարմարությունների մեջ մտցնել նոր էլեմենտներ (ջրմուղ-կոյուղու ցանց, ջեռուցում, լողարան և այլն), որոնք իրենց հերթին պահանջում են լրացուցիչ ծախսեր։ Պետական բնակարանային տնտեսության եկամուտները գլխավորապես բավարարում են միայն տնային կառավարչությունների պահպանումը և ընթացիկ վերանորոգումները։

Այսպես, 1957 թվականին ՍՍՌՄ-ում պետական բնակարանների հիմնական վերանորոգումների համար ընթացիկ տարվա պետական բյուջեից նախատեսված է առանձնացնել 1616 մլն. ռուբլի, կամ մեկ ու կես անգամ ավելի քան 1956 թվականին։ Կասկածից դուրս է, որ գումարների այդպիսի ավելացումը զգալիորեն կնպաստի բնակարանների պահպանման դրվածքի բարելավմանը։ Մյուս կողմից էլ ֆինանսական միջոցների ավելացումը դեռևս ինքն իրեն չի լուծում հարցը։ Պրակտիկայում հիմնական վերանորոգումներին հատկացվող միջոցների զգալի մասը գնում է ընթացիկ վերանորոգումների, նոր ջրմուղ-կոյուղու, ջեռուցման գծերի կառուցման վրա և այլն։

Վերցնենք Երևանի Քաղաքային Սովետի բնակելի ֆոնդը։ 1956 թվականին բնակելի տների հիմնական վերանորոգումների վրա ծախսվել է մոտ 5,3 մլն. ռուբլի։ Իրականում 5,3 մլն. ռուբլուց 685 հազար ռուբլին (13 տոկոս) ծախսվել է մի քանի բնակելի տներում նոր կոմունալ հարմարություններ ստեղծելու վրա (1955 թվականին 5 մլն. ռուբլուց այդ ուղղությամբ ծախսվել է մեկ մլն. ռուբլի, կամ 20 տոկոս), մոտ 370 հազար ռուբլի՝ 7 տոկոս, ծախսվել է ջրմուղ-կոյուղու և ջեռուցման սիստեմի վերանորոգման վրա, 300 հազար ռուբլի՝ 6 տոկոսը, տանիքների և վառարանների վերանորոգումների վրա, 737 հազար ռուբլի՝ 14 տոկոսը, ծախսված է հաշմանդամների և պատերազմում զոհվածների ընտանիքների սեփական բնակարանների, 404 հազար՝ մնացած այլ շենքերի վերանորոգման և կառուցման վրա։ Իսկ մնացած 3,2 մլն. ռուբլի գումարի մեծ մասը փաստորեն ծախսվել է ընթացիկ վերանորոգման աշխատանքների վրա՝ բնակելի շենքի այս կամ այն կոնստրուկցիաների նորոգում, մուտքերի և միջանցքների սպիտակեցում, փայտային մասերի յուղաներկում և այլ կողմնակի աշխատանքներ։

Երևանի Քաղաքային Սովետի բնակվարչության տարեկան հաշվետվություններից երևում է, որ ամեն մի քմ բնակելի տարածության հիմնական վե-

*րանորոգումների վրա 1956 թվականին ծախսվել է 17 ռուբլի, մինչդեռ իրականում բնակելի տարածության հիմնական վերանորոգմանն անմիջապես ծառայել է հիշված գումարի միայն կեսը։*

*Պրակտիկան ցույց է տալիս, որ այդ գումարը դեռևս բավական չէ բնակարանային ֆոնդը նորմալ վիճակում պահելու համար։*

*Այսպիսով, բնակարանային ֆոնդի պահպանման կարևոր հարցերից մեկը հիմնական վերանորոգման ֆինանսավորման և միջոցների նպատակային օգտագործման հարցն է։ Սակայն այս հարցի լուծումը դեռևս ինքն իրեն չի կարող բնակարանների պահպանման դրվածքի մեջ արմատական փոփոխություններ մտցնել և ապահովել շենքերի նորմալ կյանքն ու ծառայությունը, եթե չլուծվեն նրանց պահպանման հետ կապված ուրիշ հարցեր։ Եվ իսկապես, Երևանի, ինչպես և յուրաքանչյուր քաղաքի բնակելի ֆոնդի պահպանման համար հատկացվող գումարները տարեց տարի ավելանում են, մինչդեռ բնակելի տների վիճակը նկատելիորեն չի բարելավվում, իսկ Երևանում նույնիսկ վատանում է։ Այդ մասին է խոսում բնակիչների կողմից բողոքների ավելացումը։*

*Մեր կարծիքով գոյություն ունեն 3 հիմնական պատճառներ, որոնք խիստ կերպով խանգարում են բնակարանային ֆոնդի պահպանման դրվածքի բարելավմանը։ Առաջինը՝ շահագործման հանձնված նոր շենքերի շինարարական թերությունները և հին՝ իր ամորտիզացիոն շրջանն ապրած շենքերի պահպանումը։ Երկրորդը՝ վերանորոգման աշխատանքների բնագավառում տիրող անտնտեսավարությունը և աշխատանքների անորակությունը։ Երրորդը՝ բնակելի շենքերի նկատմամբ բնակիչների անփույթ, երբեմն էլ անխնա վերաբերմունքը։*



*Բնակելի տան պահպանումը և խնամքը շատ կողմերով նմանվում է կենդանի օրգանիզմի խնամքին։ Մեծ նշանակություն ունի, օրինակ, թե ինչպիսի վիճակում է ծնվում երեխան։ Եթե նա առողջ է ծնվում, ապա հազվագյուտ ենք մենք դիմում բժշկի կամ դեղորայքի օգնության և ընդհակառակը, տկար կամ հիվանդ երեխան իր կյանքի առաջին իսկ օրվանից բուժման կարիք է զգում։ Ինչքան մարդ ծերանում է, այնքան ավելի շատ է դեղորայքի դիմում, իսկ ամեն մի հասակում պրոֆիլակտիկ միջոցառումները կանխում են հիվանդության առաջացումը և խորացումը։ Նույնը և բնակելի տունը։ Եթե նա շահագործման է հանձնվում անավարտ կամ անորակ վիճակում, ապա նրա պահպանման համար բնական, անհրաժեշտ ծախսերին ավելանում են արհեստականորեն առաջացած լրացուցիչ ծախսեր, որոնք գնալով հիմնական կամ ընթացիկ նորոգումների հաշվին փաստորեն ներկայացնում են շինարարության վրա կապիտալ ներդրումների շարունակությունը։*

*Վերցնենք Երևանի պետական բնակարանային ֆոնդը։ Պետական բնակելի տների մոտ 50 տոկոսը պատերազմից հետո կառուցված շենքեր են, այսինքն ունեն 1—12 տարեկան հասակ։ Այդ հասակում շենքը հիմնական վերանորոգումներ շատ քիչ է պահանջում։ Վերանորոգումները կրում են առավելապես ընթացիկ բնույթ։ Մինչդեռ հիմնական վերանորոգումների հաշվին նոր շենքերի վրա վերջին տարիներին ծախսվել են ոչ քիչ գումարներ, քան այն շենքերի վրա, որոնց առանձին շինարարական մասերի փոխման ժամկետը*



*լրացել է։ Մոտավոր հաշվումներով հիմնական վերանորոգման միջոցների մոտ 25—30 տոկոսը գնում է շինարարական աշխատանքների բացերը լրացնելուն։ Հազիվ թե կարելի լինի գտնել այնպիսի մի նոր շենք, որի մեջ բնակվելուց հետո բնակիչների կողմից բողոքներ կամ տրտունջներ չառաջանան անհարմարությունների, կիսատ ու պռատ շինարարական աշխատանքների վերաբերյալ։ Եթե բնակիչների բողոքը համառ է լինում կամ շենքի թերի կողմը «աչք է ծակում», համապատասխան կազմակերպությունները ձեռնարկում են որոշ միջոցառումներ։ Բայց չէ՞ որ կան շինարարական այնպիսի կառուցվածքներ, որոնց որակը բնակիչն անմիջապես չի կարողանում տեսնել կամ զգալ։*

*Առանձնապես շատ ծախս է պահանջում հին շենքերի պահպանումը։*

*Երևանի պետական բնակելի ֆոնդի համեմատաբար փոքր մասն է տարիքով հին (10 տոկոսը 30 տարուց ավելին, իսկ 90 տոկոսը կառուցված է 1926 թվականից հետո)։ 1794 բնակելի տներից 1443-ը կամ 80 տոկոսը, իսկ բնակելի տարածության 90 տոկոսը քարաշեն են։ Մնացած տները պատրաստված են փայտից, կավահողից և այլ անկայուն շինանյութերից։*

*Օրինակի համար վերցնենք Մոլոտովյան շրջսովետի 7-րդ բնակկառավարչության տները (Միկոյանի պողոտայի վրա)։ Կառավարչությունն ունի 14 բնակելի տուն (օգտակար տարածությունը հավասար է 10917 քմ, այդ թվում բնակելի տարած. 9331,5 քմ)։ Այդ, ինչպես նաև նույն շրջսովետի № 3 և № 5 բնակկառավարչությունների շենքերը Քաղսովետի այսպես կոչված էժանագին տներից են, կառուցված 1928—1930-ական թվականներին, 10—15 տարվա ամորտիզացիոն ժամանակով։*

*Անցել է արդեն 30 տարի, շենքերի ոչ միայն փայտային մասերը փտել և դարձել են ոչ պիտանի, այլև հողաշեն պատերի մեջ առաջացել են վտանգավոր ճեղքվածքներ, որոնք որոշ տեղերում պաշտպանվում են փայտե հենակներով։ Պարզ է, որ ոչ մի կապիտալ վերանորոգում չի կարող փրկել այդ և նման շենքերը փլուզումից և ավելի թանկ կնստի այդպիսի վերանորոգումը, քան նույնպիսի շենքերի կառուցումը։*



*Վերջին տարիներին Քաղաքային Սովետը հիմնովին վերակառուցման է ենթարկել մի քանի խարխուլ տներ, որը բավականին բարձրացրել է շենքերի տեխնիկական վիճակը։ Բայց նման վերակառուցումները ընդգրկում են միայն քանդման ենթակա շենքերի մի չնչին մասը, մինչդեռ կլանում են հիմնական վերանորոգումներին հատկացվող միջոցների զգալի մասը։*

*Պետք է հրաժարվել նաև այն պրակտիկայից, երբ նույն վերանորոգման գումարների հաշվին նորակառույց կապիտալ շենքերի նկուղները վերակառուցվում և դարձվում են բնակարաններ (օրինակ՝ Կիևյան փողոցի շենքերի ներքնահարկերը)։ Նկուղային բնակարանները քիչ թե շատ տանելի վիճակում պահելու համար պահանջվում է ավելի հաճախակի վերանորոգումներ, հետևապես և ավելի շատ ծախսեր, որոնք նույնպես չեն փրկում դրությունը, քանի որ բորբոսնած պատերի և հատակի փտած տախտակի վերանորոգումներից անմիջապես հետո սատցվում է նախկին պատկերը։*

*Բնակարանային ֆոնդի պահպանման հարցերի մեջ կարևոր և պրակտիկ նշանակություն ունի բաց թողված միջոցների խելացի օգտագործման հարցը։*

Վերցնենք Երևանի Քաղաքային Սովետի բնակարանների վերանորոգման աշխատանքների որակը։ Աշխատանքները կատարում են շրջսովետներին կից վերանորոգման գրասենյակները։ Անցած՝ 5-րդ հնգամյակի ընթացքում շին գրասենյակները կատարել են 20144 հազար ռուբլու աշխատանք և վերանորոգել են 1328 բնակելի շենք։ Եթե ընդունենք նույն ժամանակ Քաղսովետի բնակելի շենքերի միջին թիվը մոտ 700, ապա ստացվում է, որ 5 տարվա ընթացքում ամեն մի շենք միջին հաշվով մոտ 2 անգամ հիմնական վերանորոգման է ենթարկվել։ Ավելին ցանկանալ չէր էլ կարելի։ Մինչդեռ քիչ չեն դեպքերը, երբ բանվորները դեռ շենքից չհեռացած բնակելի տունն էլ ավելի ուժեղ է սկսում կաթել, պատերի սվաղը նորից է թափվում, սպիտակեցրած միջանցքները նորից են կեղտոտվում, յուղաներկված պատշգամբներն ու սյուները խունանում են, փոխարինված հատակի տախտակները ծռվում և իրարից հեռանում են, կարկատված աստիճանները և գցված ապակիները նորից ջարդվում են և այլն։

Շենքերի առանձին կառուցվածքներից հատկապես անմխիթար վիճակում է տանիքների և ջրհորդանների վերանորոգման գործը։ Յուրաքանչյուր շենքի, ծածկի և ջրհորդանների ժամանակին վերանորոգումից շատ բանով կախված են շենքի մյուս մասերի պահպանումը, մինչդեռ այդ ուղղությամբ համեմատաբար քիչ գումարներ են ծախսվում։ Տարիներ շարունակ չեն ներկվում թիթեղյա ծածկոցները և ջրհորդանները, չեն փոխվում տանիքների փտած փայտային մասերը։ Թիթեղը երկու տարին մեկ անգամ պետք է ներկվի, հակառակ դեպքում նա ժանգոտվում և 8—10 տարուց հետո շարքից դուրս է գալիս։ Շինգրասենյակները սովորաբար չեն ուզում «գլուխ ցավացնել» այնպիսի «փոքր» աշխատանքի վրա, ինչպիսին ջրհորդանների վերանորոգումն է։ Այսպիսի անպատասխանատու վերաբերմունքի հետևանքով ձմռանը ջրհորդանների շուրջը գոյացել էին սառցադաշտեր, որոնք փչացրել են շատ շենքերի ճակատը, իսկ գրեթե բոլոր հին և նոր, բնակելի և ոչ բնակելի շենքերը կամ կաթել, կամ պատերը ներծծվել են ջրով։ Միայն բնակելի տների տանիքների կաթման հետևանքով առաջացած ներքին վնասվածքները վերացնելու համար ընթացիկ տարվա բնակֆոնդի կապիտալ վերանորոգումներին հատկացված միջոցները հազիվ թե կարողանան բավականացնել։ Այդ միջոցների մի զգալի մասն արդեն ծախսվել է տների կտուրների ձյունը և սառույցները մաքրելու համար։

Այս բոլորը թույլ են տալիս եզրակացնելու, որ ոչ միայն շենքերի տանիքների և ծածկոցների վերանորոգումն է գտնվում բարձիթող վիճակում, այլև նրանց պատրաստման պրակտիկան հիմնովին վերանայման կարիք է զգում։

Ոչ բոլոր դեպքերում են շինգրասենյակները մեղավոր կատարված վերանորոգումների միակողմանիության և անորակ լինելու համար։ Բնակելի շենքերի վերանորոգմամբ զբաղվող կազմակերպությունները որպես կանոն միայն վերջին հերթին են ստանում ֆոնդային շինանյութերը և այն էլ ցածր որակի (երկաթ, ցեմենտ, փայտանյութ, թիթեղ և այլն)։ Շատ հաճախ ստացվում է, որ բնակարանային վարչություններն ունեն դրամական միջոցներ, բայց չունեն շինանյութ ձեռք բերելու հնարավորություն, որի հետևանքով էլ հիմնական վերանորոգման աշխատանքները մնում են թերի կամ էլ տարիներով ձգձգվում։



Մյուս կողմից էլ պլանները կատարելու համար շինգրասենյակներն աշխատում են «ժամանակին» իրացնել գումարները։

Վերանորոգման աշխատանքների ստուգումները և բնակիչների հաճախակի բողոքները ցույց են տալիս, որ շինվերանորոգման գրասենյակները շահագրգռվածություն չեն ցուցաբերում աշխատանքների որակի նկատմամբ։ Ավելին, աշղեկները կատարողական ակտերում (№ 2 ձև) ամեն կերպ ձգտում են արհեստականորեն ավելացնել կատարված աշխատանքների ծավալը։ Բերենք մի քանի օրինակներ։ Անցյալ տարի պարտիայի Երևանի քաղաքային կոմիտեի կողմից կազմված հանձնաժողովը ստուգեց շրջսովետներին կից վերանորոգման գրասենյակների աշխատանքները և նշեց, որ վերանորոգման աշխատանքները կատարվում են ցածր որակով, տեղի են ունենում գների խախտման, չկատարված աշխատանքների գրանցման բազմաթիվ դեպքեր։ Մեր կողմից տեղերում ստուգված համարյա բոլոր բնակելի տների վերանորոգման գործում նկատվել են նման դեպքեր, ինչպես, օրինակ՝ Աբովյան № 120, Ասրիև № 7, Զեյթուն № 9 փողոցի 5, 7, 9, 16, 14, Բաղրամյան № 39, Նալբանդյան № 42, Կոնդ № 123, Ամիրյան № 160, Մայիսյան № 133, Աղամյան № 114, Նիզամի № 37, Շևչենկո № 2—12 և այլ տներում։ Աբովյան № 120 տան վրա կատարված աշխատանքների մեջ գրված է «բարձրորակ յուղաներկում», մինչդեռ կատարվել է անորակ և հասարակ ներկում, որը ենթակա է խոտանման։ Ակտում գրվել է 25 քմ սվաղ, մինչդեռ կատարվել է 10 քմ։ Ասրիև փողոցի № 7 տան 12 քմ պատի ամեն մի խմ շարվածքի համար վարձատրվել է 110 ռ. 50 կ., 57 ռ. 85 կ.-ի փոխարեն։ Զեյթունի և Բաղրամյան փողոցի մի շարք շենքերի նորոգման ակտերում նշված աշխատանքների մի մասը բացակայում է։ Շևչենկո փողոցի № 2—12 տների նորոգման համար կազմված ակտերում նախատեսված է եղել փոխել հատակի տախտակները, փաստորեն կատարվել է միայն նորոգում։ Նիզամի փողոցի № 37 տան նորոգման կատարողական ակտում գրված է 105 քմ սվաղ, որը գերազանցում է ամբողջ տան պատերի տարածությունը։

1956 թվականի ապրիլ—մայիս ամիսներին Սպանդարյան շինգրասենյակների կողմից վերանորոգվել է Կ. Մարքս փողոցի № 18 բնակելի շենքը։ Միայն մեկ ակտի կատարողականը ստուգելիս պարզվեց, որ փաստորեն կատարվել է միայն 11 400 ռուբլու աշխատանք, մինչդեռ ակտում գրվել և ընդունվել է 19925 ռուբլի։ Բացի դրանից աշխղեկ Վ. Պետրոսյանը այդ բնակելի շենքի վերանորոգման համար դուրս է գրել 27,6 խմ անտառանյութ, իսկ փաստորեն օգտագործել է միայն 18 խմ։ Եթե հաշվի առնենք նաև կատարված աշխատանքների անորակությունը և տեխնիկական անգրագիտությունը, ստացվում է, որ միայն տվյալ շենքին հատկացված միջոցների մոտ 50 տոկոսը իր նպատակներին չի ծառայել և յուրացվել է առանձին մարդկանց կողմից։ Յուրացումը կատարվում է տարբեր ձևերով։ Բերված օրինակում 2102 ռուբլի յուրացվել է չկատարված աշխատանքների հաշվին (ժամանակավոր հենակետերի պատրաստում, անտառանյութի տեղափոխում, հին գերանների հանում և այլն), 2320 ռուբլին ստացվել է կատարված աշխատանքների արհեստական ավելացման հաշվին, 3264 ռուբլին՝ գների խախտման միջոցով և այլն։ Ստացած ավելի 9,6 խմ անտառանյութը փաստորեն օգտագործվել է նույն շենքում և այլ տեղերում մասնավոր աշխատանքներ կատարելու համար։ Նույն շինգրասենյակը զանազան կիսաֆաբրիկատներ

պատրաստելու համար անցյալ տարվա մայիս—սեպտեմբեր ամիսներին բաց է թողել 89,96 խմ անտառանյութ, մինչդեռ կատարված աշխատանքի արդյունքին համապատասխանում է 58,2 խմ։ Թե ո՞ւր է գնացել մնացած 31,8 խմ փայտանյութը, հայտնի չէ։

Միանգամայն անբավարար է շինդրասենյակների աշխատանքների հսկողության գործը։ Կատարված աշխատանքներն ընդունում են շրջսովետների բնակբաժնի ինժեներները, որոնք հաճախ ցուցաբերում են տեխնիկական անգրագիտություն, իսկ ոմանք էլ չարամտորեն մասնակցում պետական միջոցների շռայլմանը։

Հաճախ փոխվում և կամ թե հեռացվում են շինդրասենյակների պատասխանատու աշխատողները, աշխղեկները, բնակբաժնի ինժեներները, որոնք թերանում կամ չարաշահում են աշխատանքի մեջ, բայց դրանով դրությունը չի փոխվում, բնակարանային ֆոնդի քայքայումը գնալով արագանում է, իսկ հեռացված մարդիկ փաստորեն մեկ դռնից դուրս են գալիս, իսկ մյուս դռնից նորից ներս մտնում։

Պետական բնակֆոնդի մեծ մասը (60 տոկոսը) պատկանում է գերատեսչական կազմակերպություններին։ Խոշոր գործարանների բնակֆոնդի պահպանման ուղղությամբ որոշ խնամք տարվում է, բայց ինչպես արձանագրված է Երքաղսովետի գործկոմի 1956 թվականի հուլիսի 16-ի որոշման մեջ «քաղաքում գտնվող գերատեսչական բնակելի, ինչպես նաև վարչական շենքերի մեծագույն մասի հիմնական վերանորոգման և պահպանման գործը մատնված է ինքնահոսի»։ Բերենք մի ցայտուն օրինակ։ Միկոյանի փողոցի № 43 շենքը պատկանում է Անտառարդյունաբերության մինիստրությանը։ Դրսից շենքին նայելիս մարդ հիանում է, բայց ներսը մտնելիս ուղղակի հիասթափվում։ Նախ՝ նկուղային հարկը մի քանի տարի լցված է ստորերկրյա ջրով։ Գիշերն այդ շենքի կողքով անցնելիս կարելի է լսել գորտերի կռկռոց։ Ջուրն այնքան է ներծծվել պատերի մեջ, որ առաջին հարկի բնակարանները լրիվ խոնավացել և բացասաբար են ազդում բնակիչների առողջության վրա։ Վերին հարկերի բնակիչները կարծես թե ազատ էին այդպիսի սարսափելի վիճակից, բայց այս ձմեռ նրանք էլ հանգիստ չունեցան, մի կողմից տանիքի ջրերն էին կաթում, իսկ մյուս կողմից էլ ջրմուղ-կոյուղու խողովակներն էին պայթել։ Պարզ է, որ այդպիսի պայմաններում ոչ միայն ապրելն է անհնարին, այլև հիանալի տուֆից կառուցված շենքը փլման վտանգի տակ է գտնվում։ Ընդամենը մեկ տարի առաջ «Կոմունիստ» թերթի էջերում այդ շենքի վերաբերյալ գրվել է ֆելիետոն, Անտառարդյունաբերության մինիստրությունը ոչ մի կոնկրետ միջոցառում չի ձեռնարկել շենքի տեխնիկական վիճակը և բնակիչների բնակարանային պայմանները լավացնելու ուղղությամբ։

Մեր կարծիքով այդ բոլորի հիմնական պատճառն այն է, որ մինչև հիմա բնակարանային ֆոնդի և առհասարակ քաղաքի կոմունալ տնտեսության պահպանման և նորոգման աշխատանքներին տրվում է երկրորդական նշանակություն։ Թե՛ պարտիական, և թե՛ սովետական ու ֆինանսական օրգանները պատշաճ կերպով չեն հետևում վերանորոգման աշխատանքների ընթացքին, միջոցների նպատակային և ժամանակին իրացմանը։

Վերանորոգման աշխատանքների կազմակերպման այժմյան դրվածքը հնացած և անբավարար է։ Ամենից առաջ շինդրասենյակները և գործարաններին կից վերանորոգող կազմակերպությունները մանրատված են և ցրված։



Նրանք տեխնիկապես թույլ են հագեցված, իսկ եղած մեքենաների օգտագործման գործակիցը շատ ցածր է։ Բացի դրանից, գոյություն ունեն շատ հիմնարկ-ձեռնարկություններ, որոնք ունեն սեփական բնակելի տներ, բայց չունեն իրենց շինդրասենյակը։ Նրանց բնակելի տները համարյա չեն վերանորոգվում և գտնվում են անմխիթար վիճակում։

Բնակարանային ֆոնդի կանոնավոր պահպանման և այդ ուղղությամբ բաց թողված միջոցների ռացիոնալ օգտագործման համար հսկայական նշանակություն ունի պետական բնակելի տների նկատմամբ բնակիչների կողմից տարվող խնամքը և վերաբերմունքը։

Յուրաքանչյուր քաղաքացու սրբազան պարտքն է՝ պաշտպանել հանրային սեփականությունը և հարգել սոցիալիստական համակեցության բոլոր կանոնները։ Մինչդեռ բնակչության մի մասը անխնա վերաբերմունք է ցույց տալիս բնակելի տան նկատմամբ, փչացնում և արագացնում է նրա մաշվածության պրոցեսը։ Վերանորոգման աշխատանքների մի զգալի մասը հաճախակի չի կրկնվի, եթե բնակիչները խնամքով վերաբերվեն դեպի տունը։

Ամեն մի բնակարանի ներսի մասի ընթացիկ նորոգումները պետք է կատարի ինքը՝ բնակիչը։ Բայց քանի որ միևնույն բնակարանում ապրում են մեծ մասամբ մեկից ավելի ընտանիքներ, ընդհանուր տարածությունները (խոհանոց, միջանցք, պատշգամբ) մնում են սովորաբար անուշադրության մատնված և տարիներով չեն նորոգվում։ Եթե դրան գումարում ենք օժանդակ տարածությունների խտեղմեխ օգտագործումն ու բնակիչների անխնա վերաբերմունքը դեպի այն ամենը, ինչ որ «իմը չէ», ապա կարելի է ասել, որ շենքերի ընդհանուր օգտագործման մասերն ավելի արագ են մաշվում, քան բնակելի տարածությունը։ Բայց երբեմն բնակելի տարածությունն էլ խնամքով չի պահվում, որը բացատրվում է նրանով, որ նոր բնակարան տեղափոխվելու հույսով բնակիչը «հինը» սկսում է «իրենը» չհամարել։

Շրջանային և քաղաքային Սովետները համարյա թե չեն զբաղվում մասնավոր բնակարանների վերանորոգման և պահպանման հարցերով։ Այստեղ խոսքը գնում է ոչ միայն անձնական սեփականության ու գույքի պահպանման, այլև կենդանի մարդկանց կյանքի պաշտպանման մասին։ Օրինակ, նախապես ոչ ոք չի կարող ասել, թե քաղաքում փլման վտանգի տակ քանի բնակելի տուն է գտնվում։ Բացակայում է բնակելի տների նախնական տեխնիկական ուսումնասիրությունը, բոլորովին թույլ է սանիտարական հսկողությունը։ Միակ աղբյուրը, որով կարելի է գաղափար կազմել շենքերի վիճակի մասին, բնակիչների դիմումներն են։ Շրջանային Սովետները պարտավոր են առանձնապես հատուկ ուշադրություն դարձնել զոհվածների և թոշակառուների ընտանիքների սեփական բնակարանների վերանորոգման վրա։ Այդ ուղղությամբ որոշ օգնություն ցույց է տրվում, բայց այն դեռևս բավարար չէ։

Վերոհիշյալ հարցերի լուծման և հետևապես բնակարանային ֆոնդերի պահպանման ներկայիս դրվածքի մեջ արմատական բեկում մտցնելու համար գտնում ենք անհրաժեշտ ձեռնարկել հետևյալ միջոցառումները.

Բնակելի տները նորմալ վիճակում պահելու համար, ինչպես նշվեց վերևում, անհրաժեշտ կլինի ավելացնել հիմնական վերանորոգումների գումարները, որոնք պետք է համապատասխանեն ինչպես տեղական պայմաններին, այնպես էլ բնակֆոնդի մաշվածության աստիճանին։ Մեր կարծիքով այդ միջոցների հիմնական աղբյուրը պետք է հանդիսանան բնակարանային տըն-

տեսության եկամուտները, որոնք առնվազն պիտի բավարարեն բնակելի տան ընթացիկ և հիմնական վերանորոգումների ծախսերը։

Լրացուցիչ միջոցների երկրորդ աղբյուրը կարող է հանդիսանալ բնակկառավարչությունների պահպանման ծախսերի կրճատումը՝ նրանց խոշորացման և բնակիչներին հասարակական աշխատանքների ներգրավման միջոցով։

Ինչ վերաբերում է բաց թողված միջոցների ռացիոնալ օգտագործման և առաջադրված մյուս հարցերի կարգավորմանը, ապա գտնում ենք անհրաժեշտ՝ շինարարական աշխատանքների թերության հետևանքով առաջացած նորոգումները պետք է կատարվեն շինարարական կազմակերպությունների կողմից։ Այլ կերպ, բնակարանը պետք է տրվի շահագործման որոշ երաշխիքով, որը կբարձրացնի շինարարական կազմակերպությունների պատասխանատվությունը և աշխատանքի որակը։

Հին շենքերի վերանորոգումները կամ վերակառուցումները մեր կարծիքով պետք է կատարվեն միայն այն ժամանակ, եթե նրանք շենքի կյանքը կերկարաձգեն առնվազն 10 տարի և երբ նրանց բարելավման ծախսերը չեն գերազանցի նոր նույնանման շենքի կառուցման արժեքի $1/3$—$1/4$-ից։

Վաղուց հասունացել է արդեն այն հարցը, որպեսզի քաղաքի պետական բնակարանային ամբողջ ֆոնդը հանձնվի շրջանային Սովետների իրավասությանը, իսկ վերանորոգման գործը իրականացվի քաղաքի մասշտաբով մեկ խոշոր և մասնագիտացված շինարարական-մոնտաժային տրեստի միջոցով։

Պետական բնակելի տների պահպանման և խնամքի դրվածքը բարելավելու համար պետք է նախ՝ բարձրացնել բնակիչների պատասխանատվությունը և ապա նրանց ներգրավել բնակկառավարչություններին օժանդակող հանձնաժողովների մեջ։ Մեր կարծիքով վատ չէր լինի տների կառավարումը և պահպանումը հանձնել նրանց բնակիչների ժողովի կողմից ընտրված խորհրդին, որը հետևում է տան եկամուտների և ծախսերի օգտագործման ընթացքին, բնակիչների միջոցով բարեկարգում է տան շրջակայքը և կատարում փոքրիկ ընթացիկ նորոգումներ, ընդունում է վերանորոգման աշխատանքները, վարձակալական իրավունքներից զրկում է բնակարանային կանոնները սիստեմատիկ խախտող բնակիչներին և այլն։

---

# ՏԵԽՆԻԿԱԿԱՆ ՊՐՈԳՐԵՍԻ ՀԱՄԱՐ

Ս. ՄԵԺԼՈՒՄՅԱՆ, Վ. ՄԵՀՐԱԲՅԱՆ

ՍՄԿՊ Կենտկոմի 1955 թվականի Հուլիսյան պլենումի որոշմամբ և ժողովրդական տնտեսության զարգացման վեցերորդ հնգամյա պլանի վերաբերյալ պարտիայի XX համագումարի Դիրեկտիվներով մեր երկրի աշխատավորների առջև խնդիր է դրվել՝ տեխնիկական անընդհատ պրոգրեսով և աշխատանքի արտադրողականության բարձրացումով ապահովել ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերի հետագա աճը, իրականացնել գյուղատնտեսության արտադրության շեշտակի վերելքը և այդ հիման վրա հասնել սովետական ժողովրդի նյութական դրության ու կուլտուրական մակարդակի բարձրացմանը։

Արդյունաբերության մեջ կիրառելով ավտոմատիկայի, տելեմեխանիկայի, ռադիոտեխնիկայի և էլեկտրատեխնիկայի նվաճումները՝ հնարավոր է դառնում անընդհատ զարգացնել ու կատարելագործել տեխնիկան, զգալիորեն բարձրացնել աշխատանքի արտադրողականությունը, իջեցնել ինքնարժեքը և ընդլայնել ձեռնարկությունների արտադրական հնարավորությունները։

Երևան քաղաքի արդյունաբերական ձեռնարկությունների աշխատողները սոցիալիստական մրցության մեջ մտնելով Կիև քաղաքի արդյունաբերության աշխատողների հետ և համառ պայքար ծավալելով արդյունաբերության հետագա վերելքի, տեխնիկական պրոգրեսի և արտադրության կազմակերպումը բարելավելու համար՝ 1956 թ. արտադրանքի պլանը կատարեցին 103,9 տոկոսով, ընդարձակեցին արտադրանքի ասորտիմենտը, բարելավեցին նրա որակը, երկրին պլանից ավելի տալով 130 միլիոն ռուբլու արտադրանք և 14 միլիոն գերպլանային խնայողություն։ Մայրաքաղաքի ձեռնարկություններում խոշոր աշխատանք է կատարվել տեխնոլոգիական պրոցեսների կատարելագործման ու մեքենայացման ուղղությամբ, բավական ընդլայնվել է մետաղահատ հաստոցների, կոմպրեսորների, հիդրոտուրբինների, պոմպերի, պահեստամասերի, ճշգրիտ գործիքների և այլ մեքենաների ու ագրեգատների արտադրությունը։ Առաջիկայում շահագործման կհանձնվեն Երևանի էլեկտրասարքավորումների գործարանները, դազգահային էլեկտրասարքավորումների գործարանները, որոնք հագեցված կլինեն առաջնակարգ տեխնիկայով։

Հայէլեկտրագործարանի բազայի վրա կազմակերպվել է գիտահետազոտական ինստիտուտի ֆիլիալը՝ իր տեխնիկական լաբորատորիայով, որն զբաղվում է նոր տիպի էլեկտրական մեքենաների և ապարատների կոնստրուկցիաների մշակման հարցերով։

Այժմ Երևան քաղաքի պարտիական կազմակերպություններն սկսել են ավելի կոնկրետ ղեկավարել արտադրությունը, խորանալ նրա էկոնոմիկայի,

նոր տեխնիկայի և առաջավոր տեխնոլոգիայի հարցերի մեջ։ Այս ուղղությամբ բավականին դրական աշխատանք են կատարել Կիրովի անվան գործարանի, Պոլիվինիլացետատի, Կանաչի, Պահեստամասերի, Հայէլեկտրո, Էլեկտրատեխնիկական և այլ գործարանների պարտիական կազմակերպությունները։

Կիրովի անվան գործարանի պարտիական կազմակերպությունը հետևողականորեն կիրառելով ՍՄԿՊ XX համագումարի որոշումը՝ 1956 թվականին լուրջ աշխատանք է կատարել գործարանի տեխնիկա-տնտեսական ցուցանիշները բարելավելու ուղղությամբ։ Գործարանի կոլեկտիվը հատուկ ուշադրություն է դարձնում տեխնոլոգիական պրոցեսների ավտոմատացման, կատարելագործման և մեքենայացման վրա։ Անցած տարվա ընթացքում գործարանի գյուտարարական և ռացիոնալիզատորական բյուրոն ստացել է 1313 նորարարական առաջարկություն։ Դրանից արտադրության մեջ ներդրվել է 1030-ը՝ տարեկան տալով 5 միլիոն 230 հազար ռուբլու խնայողություն։

Այս և նման մի շարք տեխնիկական միջոցառումների շնորհիվ գործարանի բանվորները, ինժեներա-տեխնիկական աշխատողները հնարավորություն ստացան սիստեմատիկաբար բարձրացնելու աշխատանքի արտադրողականությունը, իջեցնելու ինքնարժեքը, բարձրացնելու թողարկվող արտադրանքի որակը։ Նրանք 1956 թվականին գործարանի տարեկան պլանը կատարեցին 103,7 տոկոսով, տալով ավելի քան 1000 տոննա հումքի խնայողություն։

Երևանի Պահեստամասերի գործարանի պարտիական կազմակերպությունը և դիրեկցիան 1957 թվականի առաջին եռամսյակում գործարանի տեխնիկա-տնտեսական ցուցանիշները լավացնելու ուղղությամբ զգալի հաջողությունների են հասել։ Սկսած 1956 թվականի երկրորդ եռամսյակից՝ գործարանում լուրջ քայլեր են արվում տեխնիկական պրոգրեսն ապահովելու համար։ Միայն վերջին 9 ամիսների ընթացքում գործարանն ստացել և շահագործման է հանձնել բարձր արտադրողականության 100-ից ավելի հաստոցներ, որոնք աշխատանքի արտադրողականությունը բարձրացնում են 2—3 անգամ։ 1956 թվականի սկզբից գործարանին կից ստեղծվեց «Մոսկվիչ» ավտոմեքենայի մասերի պատրաստման ցեխ, որտեղ դրվել են 120-ից ավելի հաստոցներ և սարքավորումներ։ Դրա շնորհիվ ընթացիկ տարում յուրաքանչյուր ամիս այնքան ավտոմեքենայի մասեր են արտադրում, որքան արտադրվում էր 1956 թ. ընթացքում։ Այս տարվա սկզբից № 2 մեխանիկական ցեխում տեխնիկական պրոգրեսի ուղղությամբ լուրջ աշխատանք կատարվեց։ Կազմակերպվեց հոսքային երեք գիծ ԳԱԶ—51 ավտոմեքենայի մասեր պատրաստելու համար, որի շնորհիվ արտադրողականությունը բարձրացել է երեք անգամ։ Եթե անցյալ տարի, մինչև այդ հոսքային գծերի ստեղծումը, տարեկան ստացվում էր 50 հազար հատ մաս, ապա այժմ ստացվում է 130-ից 150 հազար հատ։ Ինչպես այս, այնպես էլ նոր տեխնիկայի ու առաջավոր տեխնոլոգիայի կիրառման մի շարք այլ միջոցառումները գործարանին հնարավորություն են տալիս 1957 թվականին աշխատանքի արտադրողականությունը բարձրացնելու 10 տոկոսով։

Տեխնիկական պրոգրեսի համար մղվող պայքարում իրենց լավագույն ստեղծագործական աշխատանքով աչքի են ընկնում գործարանի գյուտարարներ ու ռացիոնալիզատորներ՝ Վ. Ստեփանյանը, Ն. Հովսեփյանը, Թ. Թորոսյանը, Մ. Բաբայանը, Ս. Սողչյանը, Ս. Մկրտչյանը և շատ շատերը, որոնց



առաջարկություններից 1956 թվականի ընթացքում արտադրության մեջ են ներդրվել 127-ը, տարեկան տալով 900 հազար ռուբլու խնայողություն։

Ջհանդստանալով ձեռք բերածով՝ գործարանի կոլեկտիվը ի պատիվ Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի 40-րդ տարեդարձի պարտավորվել է՝ յուրացնել և թողարկել ավտոմեքենայի 20-ից ավելի նոր դետալներ, դարբնոցային ցեխում շահագործման հանձնել բարձր հաճախականությամբ հոսանքի սարքավորումը, տնտեսել 500 հազար կիլովատ ժամ էլեկտրաէներգիա, 80 տոննա մետաղ և կատարել 150 հազար ռուբլու օժանդակ նյութերի խնայողություն, որոնց շնորհիվ պլանավորված 6,1 տոկոսի փոխարեն հասնել ինքնարժեքի իջեցման 6,7 տոկոսի։

Արդյունաբերության մեջ արտադրական ցիկլերի տևողության կրճատման, աշխատանքի կազմակերպման և արտադրողականության բարձրացման ուղղությամբ բավականին դրական աշխատանք են կատարել Երևանի Մեխանիկական գործարանի դիրեկցիան և պարտիական կազմակերպությունը։

1956 թվականի առաջին եռամսյակի ընթացքում գործարանն օգտագործելով Խարկով քաղաքի գործարաններում կիրառվող կոկիլային ձուլման մեթոդը, զգալի չափով կրճատեց կաղապարային նյութերի տեղափոխման և պատրաստման ծախսերը, վեց անգամ բարձրացրեց աշխատանքի արտադրողականությունը, հնարավորություն ավեց ռացիոնալ օգտագործելու արտադրական հրապարակը, ձուլվածքի չափսը մոտեցնելու նախատեսված դետալի չափին և զգալի չափով կրճատեց հետագա մեխանիկական մշակման պրոցեսները։ Եթե մինչև այդ միջոցառումը ձուլման ցեխում մեկ քառակուսի մետր կաղապարային հողի միջոցով արտադրվում էր մինչև 20 կիլոգրամ քաշով դետալներ, ապա այժմ նույն արտադրական ժամանակամիջոցում ստացվում է 300 կիլոգրամ։ Այս միջոցառման շնորհիվ գործարանը 1956 թվականին ավել է 70 հազար ռուբլու տնտեսում։ Կիրառելով նոր տեխնիկա՝ գործարանը յուրացրել և անցել է կռելի չուգունի ֆիտինգների արտադրությանը։

Երևանի Պոլիվինիլացետատ գործարանի պարտիական կազմակերպությունը հոգ տանելով տեխնիկական պրոգրեսի մասին՝ ողջ կոլեկտիվի ստեղծագործական միտքն ուղղել է տեխնոլոգիական պրոցեսների կատարելագործմանը, նոր տեխնիկայի ու առաջավոր փորձի արմատավորմանը։ Այսպես, օրինակ, Ջիրչիկի էլեկտրաքիմիական կոմբինատի ապարատավար Ա. Մասլովայի առաջավոր փորձը, որը հնարավորություն է տալիս ավելի գործարար կերպով հսկելու տեխնոլոգիական պրոցեսներին, լայն արձագանք է գտել գործարանում և ներկայումս այդ օրինակով են աշխատում 150-ից ավելի ապարատավարներ։

Առաջավոր փորձի ներդրումը հնարավորություն տվեց զգալիորեն նվազեցնել տեխնիկական ռեժիմի խախտումները և բարձրացնել աշխատանքի արտադրողականությունը։ Դրա շնորհիվ № 0—2 ցեխում աշխատանքի արտադրողականությունը բարձրացավ 10 տոկոսով, իսկ № 0—1 ցեխի կոլեկտիվը այս տարվա առաջին երկու ամիսների ընթացքում տվեց 350 հազար ռուբլու նյութերի խնայողություն։ Այս և նման մի շարք այլ տեխնիկական ու կազմակերպական միջոցառումների շնորհիվ գործարանը 1956 թվականին ունեցավ 2 միլիոն 787 հազար ռուբլի արտապլանային տնտեսում, իսկ ընթացիկ տարվա հունվար, փետրվար ամիսներին պլանը կատարեց 103—104 տոկոսով, ունենալով 1 միլիոն ռուբլու օգուտ։

Արտադրության մեջ տեխնիկական հետագա պրոգրես ձեռք բերելու, կոլեկտիվի անդամների մտքին ուղղություն տալու գործում մեծ դեր ունեն քաղաքի կամ շրջանների մասշտաբներով կազմակերպված տեխնիկական տները, կաբինետները և տեխնիկական անկյունները: Այս տեսակետից բավական օրինակելի է Երևանի Միկոյանի պարտշրջկոմին կից տեխնիկական կաբինետը: Դեռ անցյալ տարվա սկզբից մի խումբ պրոպագանդիստներ պարտշրջկոմի քարտուղար Ն. Մուրադյանի ղեկավարությամբ մեկնեցին Լենինգրադ, ծանոթացան քաղաքի խոշոր արդյունաբերական ձեռնարկությունների պարտիական կազմակերպությունների աշխատանքներին, ուսումնասիրեցին Կալինինի պարտշրջկոմին կից տեխնիկական կաբինետի աշխատանքը՝ առաջավոր փորձի պրոպագանդայի ուղղությամբ: Միկոյանի պարտշրջկոմը կարճ ժամանակամիջոցում նրանց օրինակով կազմակերպեց տեխնիկական կաբինետ և նրա աշխատանքին մասնակից դարձրեց շրջանի ինժեներա-տեխնիկական շատ աշխատողների: Այժմ տեխնիկական կաբինետը ղեկավարում է 16 հոգուց բաղկացած տեխնիկական խորհուրդը՝ Կանազ գործարանի գլխավոր ինժեներ ընկ. Աղասիևի նախագահությամբ: Խորհրդի կազմի մեջ մտնում են գիտական աշխատողներ, ինժեներներ ու առաջավոր բանվորներ: Այս տարի կաբինետը տեխնիկական թեմաներով կազմակերպել է մի շարք դասախոսություններ և զեկուցումներ, հանդիպումներ՝ շրջանի նորարարների, գյուտարարների, արտադրական ձեռնարկություններում գործող տեխնիկական խորհրդի ներկայացուցիչների հետ, որտեղ ելույթներով հանդես են եկել առաջավոր բանվորները, ինժեներները ու գործարանների դիրեկտորները:

Էլեկտրաճշգրիտ գործիքների գործարանի մասնագետները միշտ և ամենուրեք հանդես են գալիս որպես տեխնիկական պրոգրեսի, նորի, առաջավորի արմատավորման կազմակերպիչներ: Արդեն երկու տարի է, ինչ գործարանը մրցում է Կիև քաղաքի Ճշգրիտ էլեկտրասարքերի գործարանի կոլեկտիվի հետ: Երևանի գործարանի մասնագետները սիստեմատիկաբար ուսումնասիրում են մրցակից գործարանի աշխատանքի առաջավոր մեթոդները, բարձրացնում բանվորների որակը: Արդեն մի քանի ամիս է, ինչ գործարանի հավաքման ցեխում սկսել են կիրառել կոնվեյերի սիստեմը, որը բարձրացնում է աշխատանքի արտադրողականությունն ու կուլտուրան, հնարավորություն է տալիս ռացիոնալ օգտագործել ցեխի արտադրական տարածությունը:

Այս ամենի շնորհիվ գործարանը 1956 թվականին պետական պլանները 15 օր շուտ կատարեց և շարունակում է նույն տեմպով աշխատել:

ՍՄԿԿ XX համագումարի որոշման մեջ նոր տեխնիկայի ներդրման ու տեխնիկական պրոգրեսի ուղղությամբ հիմնարկ-ձեռնարկությունների պարտիական կազմակերպությունների անելիքների մասին ասված է, որ նրանք պարտավոր են ամենօրյա աշխատանք կատարել բանվորների, ինժեներա-տեխնիկական աշխատողների հետ, որպեսզի նրանք առանց արտադրությունից կտրվելու համապատասխան տեխնիկական կրթություն ստանան: Այժմ, երբ տեխնիկան խոշոր քայլերով առաջ է գնում, երբ կյանքը թելադրում է նոր խնդիրներ, արտադրության աշխատողները պարտավոր են սիստեմատիկորեն լրացնել իրենց գիտելիքները, մասնակցել արտադրա-տեխնիկական սեմինարներին, դիսկուսիաներին, խոր կերպով ուսումնասիրել հայրենական և արտասահմանյան տեխնիկայի նվաճումներն ու փորձը: Երևանի մի շարք ձեռնարկությունների՝ Կիրովի անվան գործարանի, Կանազ, Հայէլեկտրո, Պոլիվինիլացետատ, Պահեստամասերի, Պահածոների և այլ գործարանների դիրեկցիաներն ու պարտիական կազմակերպությունները լուրջ ուշադրություն են դարձնում արտադրության մեջ աշխատող բանվորների և ինժեներա-տեխնիկական աշխատողների մասնագիտական կրթության բարձրացման վրա:



Երևանի ժամացույցի գործարանին կից գոյություն ունի հերթափոխային բանվորական դպրոց, որտեղ առանց արտադրությունից կտրվելու սովորում են 150 բանվոր, քաղաքի մյուս դպրոցներում սովորում են 100 բանվոր, բարձրագույն ուսումնական հաստատություններում և տեխնիկումներում՝ 70 բանվոր: Ավտոմատ ցեխի կարգավորող Թ. Թաթոյանը 1947 թվականին Ֆրանսիայի Լիոն քաղաքից վերադառնալով Հայրենիք՝ աշխատանքի անցավ ժամացույցի գործարանում և առանց արտադրությունից կտրվելու գերազանց գնահատականներով ավարտեց գործարանի միջնակարգ դպրոցը, իսկ այժմ հեռակայում է Պոլիտեխնիկական ինստիտուտի մեխանիկական ֆակուլտետի երկրորդ կուրսում: Նրա օգնությամբ 30-ից ավելի բանվորներ դարձել են բարձրորակ մասնագետներ, որոնցից Ռ. Ավագյանը, Կ. Հայրապետյանը, Հ. Համբարձումյանը, Կ. Եղիկյանը և շատ-շատերն այժմ աշխատում են որպես վարպետներ, կարգավորողներ, ավտոմատավարներ և այլն:

Բայց կան այնպիսի ձեռնարկություններ, որոնց ղեկավարներն ու պարտիական կազմակերպությունները տեխնիկական պրոգրեսի խնդիրները լուծելու ուղղությամբ դանդաղ են վերակառուցում իրենց աշխատանքները:

Այսպես է դրությունը Երևանի Ձերժինսկու անվան հաստոցաշինական և Կոմպրեսորների գործարաններում: Այս ձեռնարկությունները երկար ժամանակ թողարկում էին այնպիսի մեքենաներ ու սարքավորումներ, որոնք ետ էին մնում ժամանակակից տեխնիկայի լավագույն նմուշներից: Այդպես են BK—3/5 կոմպրեսորը և 1615 M հաստոցը: Կոմպրեսորների գործարանի կոլեկտիվը ձեռնամուխ եղավ BY—3/8 տիպի բարձր արտադրողականությամբ կոմպրեսորների յուրացմանը, որոնք գործածվում են ժողովրդական տնտեսության բազմաթիվ բնագավառներում՝ քիմիական, մետաղագործության, մեքենաշինության, ածխարդյունաբերության տեխնոլոգիական պրոցեսներում գանազան ծանրաքարշ աշխատանքներ հեշտացնելու և այլ նպատակներով: Ձերժինսկու անվան հաստոցաշինական գործարանը պետք է անցներ 1 Л 61 տիպի նոր հաստոցի թողարկման, որի վրա հնարավոր է կատարել տարբեր խառատային աշխատանքներ, և այդ հաստոցն իր քաշով ավելի թեթև է, քան նախկինը: Այս պատվավոր խնդիրը Ձերժինսկու անվան հաստոցաշինական և Կոմպրեսորների գործարանների դիրեկցիաների ու պարտիական կազմակերպությունների առջև դրված է եղել դեռևս մեկ ու կես տարի առաջ: Սակայն գործարանի պարտիական կազմակերպությունը և դիրեկցիան տեխնիկական պրոգրեսի պահանջների համեմատ չեն վերակառուցում իրենց աշխատանքները, չեն ապահովում նոր հաստոցների և կոմպրեսորների թողարկման վերաբերյալ ընդունված որոշումների ու հրամանների կատարումը:

Ձերժինսկու գործարանի ղեկավարությունը ժամանակին համապատասխան կազմակերպչական միջոցառումներ չմշակեց, որպեսզի եղած հաստոցային պարկի միջոցով անցնի 1 Л 61 հաստոցի իրացմանը և նրա թողարկմանը: Այս ամենի արդյունքը եղավ այն, որ Ձերժինսկու գործարանը 1956 թ. նախատեսված պլանի դիմաց չտվեց 363 հատ 1 Л 61 տիպի հաստոց:

*Գործարանը այդ հաստոցների արտադրության պլանը չկատարեց նաև 1957 թ. փետրվար և մարտ ամիսներին: Կոմպրեսորների գործարանը, պլանով նախատեսված 500 ВУ—$^3/_8$ կոմպրեսորներից 1956 թվականին ոչ մեկը չարտադրեց: Վտանգի տակ է նաև 1957 թվականին նույն տիպի կոմպրեսորների թողարկման պլանի կատարումը:*

*Նոր տեխնիկայի և առաջավոր տեխնոլոգիայի ներդրման տեսակետից անբավարար աշխատանք են կատարում նաև Մետաղյա իրերի գործարանի, Շինանյութերի արտադրության կոմբինատի, Իրերի ցինկապատման գործարանի և այլ ձեռնարկությունների ղեկավարները, որոնք պարտիական ժողովներում ու բյուրոներում գրեթե քննության չեն դնում տեխնոլոգիական պրոցեսի ճիշտ կազմակերպման, արտադրության կուլտուրայի բարձրացման և այլ հարցերը, անհրաժեշտ ուշադրություն չեն դարձնում առաջավորների փորձի փոխանակման և ինժեներա-տեխնիկական կազմի հետ կատարվող աշխատանքի վրա:*

*Արդյունաբերության հետագա վերելքն ու տեխնիկական պրոգրեսն ապահովելու գործում մեծ նշանակություն ունի գիտության և արտադրության աշխատողների ստեղծագործական համագործակցությունը: Գիտական հիմնարկները, բարձրագույն ուսումնական հաստատությունները գործնական օգնության միջոցով կարող են արտադրության մեջ ներդնել նորը և առաջավորը: Սակայն Երևանի Պոլիտեխնիկական ինստիտուտի մի շարք գիտական աշխատողներ և մասնագիտական ամբիոններ ոչ միայն չեն զբաղվում արտադրության խնդիրներով, այլև բոլորովին չեն օգնում արտադրությանը՝ նոր տեխնիկայի ու առաջավոր տեխնոլոգիայի ներդրման հարցերում: Հենց նույն ինստիտուտի մեխանիկական ֆակուլտետը իր դասախոսական կազմով ի վիճակի էր օգնելու Ձերժինսկու և Կոմպրեսորների գործարաններին՝ արտադրության մեջ ներդնելու և լուծելու այնպիսի խնդիրներ, ինչպիսին են՝ հաստոցների կոնստրուկցիաների նախագծումը և մշակումը, նրանց ստուգումը և եղած թերությունների շտկումը, ձուլման ցեխերի տեխնոլոգիական աշխատանքների բարելավումը և այլ հարցեր: Սակայն, սկսած 1956 թվականից, նրանցից շատ-շատերը չեն եղել Երևանի մետաղամշակման գործարաններում: Գիտական աշխատողների այդպիսի կտրվածությունը արտադրությունից, վնաս է հասցնում ոչ միայն արտադրությանը, այլև խիստ բացասաբար է անդրադառնում բարձրագույն ուսումնական հաստատություններում դասավանդվող առարկաների որակի վրա:*

*Տեխնիկական անընդհատ պրոգրեսն ապահովելու համար անհրաժեշտ է, որ պարտիական կազմակերպություններն ու տնտեսական ղեկավարները ավելի լավ օգտագործեն արտադրական կարողությունները, խոր ներթափանցեն արտադրության մեջ, ուսումնասիրեն տեխնիկայի և գիտության բնագավառում ձեռք բերված հաջողությունները, մոտիկից ղեկավարություն և օգնություն ցույց տան ցեխերին և բաժիններին, արտադրության մեջ կիրառեն առաջավոր փորձի նվաճումները և ստեղծեն բոլոր պայմանները՝ Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի 40-ամյակին բարձր ցուցանիշներով դիմավորելու համար:*

---

# ՈՒԶՈՒՆԼԱՐԻ ԿՈԼՏՆՏԵՍՈՒԹՅՈՒՆԸ ՊԵՏՔ Է ԴԱՌՆԱ ԱՌԱՋԱՎՈՐ

ԱՇ. ՍԱՐԳՍՅԱՆ, Կ. ԹԱՌՈՅԱՆ

*Գարնանացանը վաղուց է վերջացել: Յուրահատուկ գեղեցկությամբ է հմայում Ուզունլար գյուղի գեղածիծաղ պեյզաժը: Ինչպես գույնզգույն թելերից հյուսած գորգեր՝ փռվել են կոլտնտեսության ծաղկազարդ դաշտերն ու այգիները, թավշանման արտերը: Ուզունլարում եռում է աշխատանքը: Մարդիկ լարել են իրենց ուժերը այս տարի առատ բերք և այլ բարիքներ ստանալու համար:*

*Գյուղատնտեսության զարգացման վերաբերյալ պարտիայի ու կառավարության վերջին տարիների որոշումների կենսագործման ուղղությամբ ուզունլարցիները հասել են որոշ հաջողությունների: Ներկայումս կոլտնտեսականներից յուրաքանչյուրն իր աշխատանքն ունի, սակայն նրանք բոլորն էլ ունեն մեկ նպատակ՝ 1957 թվականին երկրին տալ ավելի շատ գյուղատնտեսական մթերքներ:*

*Ալավերդու շրջանի Ուզունլար գյուղի Ստալինի անվան կոլտնտեսությունը ռեսպուբլիկայի ամենախոշոր կոլտնտեսություններից մեկն է: Կոլտնտեսության հիմնադրման օրից մինչև այժմ շատ բան է փոխվել գյուղի կյանքում: Մինչև սովետական կարգերի հաստատումը հետամնաց ու աղքատ Ուզունլարը այժմ դարձել է կուլտուրական և տնտեսապես զարգացած գյուղ. բարեկարգվել են փողոցները, կառուցվել են հարյուրավոր գեղեցիկ ու լուսավոր բնակարաններ, կոլտնտեսության արտադրական և հասարակական օգտագործման շատ շենքեր. գյուղում գործում են երկու միջնակարգ և մեկ յոթնամյա դպրոց, գյուղատնտեսական տեխնիկում, երեք գրադարան, ստացիոնար կինո, ակումբ, հիվանդանոց, բուժարան, փոստ: Ամբողջ գյուղը ռադիոֆիկացվել և էլեկտրիֆիկացվել է: Ավելի քան հարյուր կոլտնտեսականներ ունեն ռադիոընդունիչներ:*

*Գյուղում տնտեսության հիմնական ճյուղերն են՝ դաշտավարությունը և անասնաբուծությունը: Կոլտնտեսությունը մշակում է 207 հեկտար պտղատու այգի, 800 հեկտար հացահատիկային կուլտուրաներ, 125 հեկտար եգիպտացորեն, 110 հեկտար կարտոֆիլ, 150 հեկտար ծխախոտ և այլն: Կոլտնտեսությունն ունի 1763 գլուխ խոշոր եղջերավոր անասուն, որից 543 կով, 5041 մանր եղջերավոր անասուն, 408 գլուխ խոզ, 808 մեղվի ընտանիք: Նրա դրամական եկամուտն անցյալ տարի կազմեց մոտ 3 միլիոն ռուբլի:*

*Կոլտնտեսությունը բոլոր պայմաններն ունի մեր ռեսպուբլիկայում ամենաառաջավոր կոլտնտեսություններից մեկը լինելու:*

Կոլտնտեսությունը տնտեսապես և կազմակերպորեն ամրապնդելու, կոլտնտեսականների նյութական և կուլտուրական մակարդակը բարձրացնելու գործում վճռական դեր ունի կատարելու սկզբնական պարտիական կազմակերպությունը։ Սակայն 1956 թվականին նա չկարողացավ հաջողությամբ լուծել իր առաջ դրած խնդիրը՝ լրիվ չափով օգտագործել կոմունիստների ուժերը և կոլտնտեսության լայն հնարավորությունները, որի պատճառով էլ կոլտնտեսությունը արտադրության մի շարք ճյուղերում ցածր ցուցանիշներ ունեցավ։ Այսպես, օրինակ, 800 հեկտար հացահատիկային կուլտուրաների ցանքի յուրաքանչյուր հեկտարից միջինը ստացվեց 9,7 ցենտներ բերք՝ պլանով նախատեսված 14 ցենտների փոխարեն, 140 հեկտար ծխախոտի պլանտացիաների յուրաքանչյուր հեկտարից՝ 7,7 ցենտներ ծխախոտի հումք՝ պլանով սահմանված 14 ցենտների դիմաց, 106 հեկտար կարտոֆիլի ցանքի յուրաքանչյուր հեկտարից՝ 55,5 ցենտներ։ Այս թվերը պարզ ցույց են տալիս, որ պարտիական կազմակերպությունը և կոլտնտեսության վարչությունը չեն կարողացել լրիվ չափով օգտագործել տնտեսության արտադրական կարողությունները, չեն մոբիլիզացրել կոլտնտեսային աշխատավորներին և չեն գլխավորել նրանց աշխատանքը՝ առաջադրված խնդիրները հաջողությամբ կատարելու համար։

Այս տարի կոլտնտեսության առջև ավելի մեծ խնդիրներ են դրված. նախատեսվում է կոլտնտեսային արտադրության բոլոր ճյուղերի արագ աճ։ 1957 թվականին մեկ հեկտար հացահատիկային ցանքի բերքը պետք է հասնի միջինը 15 ցենտների, ծխախոտինը՝ 15 ցենտների, յուրաքանչյուր կովից պետք է ստացվի 1700 լիտր կաթ, յուրաքանչյուր 100 հեկտար հողային տարածության հաշվով կոլտնտեսությունը պետք է պահի 13,5 կով, արտադրի 65 ցենտներ միս, 210 ցենտներ կաթ և այլն։

Այդ խնդիրների հաջող կատարումը մեծ չափով կախված է պարտիական ուժերի ճիշտ տեղաբաշխումից։ Ուզունլարի կոլտնտեսային սկզբնական պարտիական կազմակերպության մեջ հաշվառված են 103 կոմունիստ։ Այս մեծ ուժի ճիշտ տեղաբաշխումը և արդյունավետ օգտագործումը կնպաստի կոլտնտեսության առաջընթացին։

Անցյալ տարվա վերջերին սկզբնական պարտիական կազմակերպությունում քննության առնվեց կոլտնտեսության արտադրության մեջ կոմունիստների ուժերի տեղաբաշխման հարցը և շատ կոմունիստներ, որոնք զբաղված էին երկրորդական, արտադրության հետ կապ չունեցող աշխատանքներով, ուղարկվեցին արտադրության վճռական տեղամասերում ֆիզիկական աշխատանքի։ Վարչատնտեսական աշխատողներից 10 կոմունիստ ուղարկվեցին դաշտավարական բրիգադներում աշխատելու։ Այժմ կոմունիստներից դաշտավարության մեջ աշխատում են 22-ը, կովաբուծական ֆերմայում՝ 15-ը, շինարարության մեջ՝ 7-ը, մեղվաբուծական ֆերմայում՝ 4-ը, ոչխարաբուծական ֆերմայում՝ 6-ը և այլն։ Կոմունիստների ուժերը տեղաբաշխելով ըստ արտադրական ճյուղերի՝ հնարավոր եղավ ստեղծել ցեխային պարտիական 7 կազմակերպություն։ Նախորդ տարիների համեմատությամբ որոշ չափով փոխվեց կոլտնտեսության գործերի վիճակը։

Առաջադրված խնդիրները հաջողությամբ կատարելու համար պարտիական կազմակերպությունը ձգտում է աշխատանքի լավագույն կազմակերպման միջոցով տնտեսության ետ մնացող ճյուղերն ու բրիգադները բարձրացնել առաջավորների մակարդակին։ Իսկ առաջավոր բրիգադներ և ճյուղեր կոլ-



տնտեսությունում կան։ Ունենալով հավասար հնարավորություններ՝ 1956 թվականին կոլտնտեսության դաշտավարական № 3 բրիգադան ցորենի ցանքսի յուրաքանչյուր հեկտարից ստացավ 16 ցենտներ բերք, իսկ դաշտավարական № 5 բրիգադան՝ 7 ցենտներ։ Նույնպիսի տարբերություններ կան նաև կարտոֆիլի, եգիպտացորենի, բանջարա-բոստանային կուլտուրաների բերքատվության մեջ։ Դաշտավարական № 1, № 2 և № 3 բրիգադներում եկամուտները 197 հազար ռուբլուց անցել են, իսկ մյուս բրիգադներում այն կազմում է ընդամենը 70 հազար ռուբլի։ Որոշ հաջողություններ կան անասնապահական ֆերմաներում։ Անցյալ տարի յուրաքանչյուր ֆուրաժային կովից ստացվել է 1421 լիտր կաթ։ Կովաբուծական ֆերմայի հաջողությունը բացատրվում է աշխատանքների օրինակելի կազմակերպումով և կոմունիստների ուժերի լրիվ օգտագործումով։ Ֆերմաներում կոմունիստները աշխատում են որպես անասնապահներ, կթվոր-բրիգադիրներ և տալիս են աշխատանքի բարձր ցուցանիշներ։ Պարտիայի անդամ, կթվոր-բրիգադիր Լ. Ղարիբյանը խնամում է 12 կով և յուրաքանչյուր կովից անցյալ տարի ստացել է 1753 լիտր կաթ՝ նախատեսված 1400-ի փոխարեն, պարտիայի անդամ, նախրապահ Ք. Դավթյանը պահում է 102 կով և ոչ մի անասունի կորուստ չի տվել, պարտիայի անդամ, կթվոր-բրիգադիր Լ. Նալբանդյանը 12 կով է խնամում և յուրաքանչյուրից ստացել է 1985 լիտր կաթ։

Կովաբուծական ֆերմայի աշխատանքների կազմակերպման գործում նշանակալից աշխատանք է կատարում ցեխային պարտիական կազմակերպությունը։

Ֆերմայի ցեխային պարտիական կազմակերպությունը սիստեմատիկ կերպով հետևում է աշխատանքների կազմակերպմանը, անասնապահների շրջանում ծավալում է ագիտացիոն բացատրական աշխատանք, օգնում է ետ մնացողներին՝ առաջավորներին հասնելու։ Ցեխային պարտիական կազմակերպությունը կովաբուծական ֆերմայի աշխատանքն ուսումնասիրելով պարզեց, որ Պ. Պետրոսյանի և Ս. Խեչումյանի ղեկավարած անասնաբուծական բրիգադներում աշխատանքները լավ չեն կազմակերպված, անասունները վատ են խնամվում։ Ցեխային պարտիական կազմակերպության նախաձեռնությամբ այդ հարցը դրվեց սկզբնական պարտիական կազմակերպության առաջ, որը և միջոցներ ձեռք առավ այդ բրիգադների աշխատանքները կարգավորելու համար. այստեղ աշխատանքի ուղարկվեցին 4 կոմունիստ, բարձր հիմքերի վրա դրվեց մթերքների հաշվառումը, վերանայվեց կթվորների կազմը, նշանակվեցին նոր ագիտատորներ և ուժեղացվեց ագիտացիոն-մասսայական աշխատանքը։ Կոլտնտեսության անվանի կթվոր Ա. Դավթյանը մի շարք զրույցներ ունեցավ, թե ինքն ինչպես է կարողացել իր խնամած յուրաքանչյուր կովից 2637 կիլոգրամ կաթ ստանալ։ Այս միջոցառումների շնորհիվ այդ բրիգադների աշխատանքում զգալի տեղաշարժ կատարվեց։

Ուզունլարի կոլտնտեսությունը անասնաբուծության զարգացման մեծ հնարավորություններ ունի։ Այդ հնարավորություններն օգտագործելու ուղղությամբ դեռևս քիչ գործ է արված։ Տնտեսության ոչ բոլոր ճյուղերումն է, որ առաջընթաց շարժում կա։ 1956 թվականին խոզաբուծական ֆերման ցածր ցուցանիշներ ունեցավ, յուրաքանչյուր 100 հեկտար վարելահողի դիմաց պլանով նախատեսված էր ստանալ 24 ցենտներ խոզի միս, սակայն ստացվեց 10,1 ցենտներ։ Ֆերմայի աշխատանքը վատ է կազմակերպված նաև այժմ.

այն չի կոմպլեկտավորված գործիմաց աշխատողներով, վատ է խոզերի խնամքն ու գիրացումը։ Պարտիական կազմակերպությունը և կոլտնտեսության վարչությունը այդ մասին շատ քիչ են մտածում։ Թեև խոզաբուծական ֆերման կոլտնտեսության աշխատանքների ամենանեղ տեղն է, բայց այնտեղ չկան կոմունիստ աշխատողներ։ Այս կարևոր բնագավառը դուրս է մնացել պարտկազմակերպության աշխատանքային տեսադաշտից։

1956 թվականին Ուզունլարի կոլտնտեսությունը գյուղատնտեսական մի շարք կուլտուրաների բերքատվության գծով ցածր ցուցանիշներ ունեցավ։ Դրա պատճառներից մեկն էլ այն էր, որ պարտիական կազմակերպությունը և կոլտնտեսության վարչությունը անհրաժեշտ ուշադրություն չէին դարձրել մրցության կազմակերպման վրա, չէին կարողացել ինչպես հարկն է ղեկավարել և ուղղություն տալ կոլտնտեսականների ստեղծագործական նախաձեռնությանը, բարձրացնել նրանց ակտիվությունը, անհրաժեշտ վերահսկողություն չէին սահմանել մրցությամբ ստանձնած պարտավորությունների կատարման վրա, գիտության նվաճումների և առաջավոր փորձի ուսումնասիրման ու արմատավորման վրա։

Անցյալ տարի Ուզունլարի կոլտնտեսությունը նույն շրջանի Ղաչաղան գյուղի «Լենինաշեն» կոլտնտեսության հետ մրցության մեջ պարտություն կրեց։ Եվ այդ պատահական բան չէր, որովհետև Ուզունլարի կոլտնտեսության պարտիական կազմակերպությունը և վարչությունը անհրաժեշտ ուշադրություն չդարձրին ստանձնած պարտավորությունների կատարման, ինչպես և կոլտնտեսության ներսում անհատական, միջօղակային և միջբրիգադային մրցության ծավալման վրա։ Մրցությունն այդտեղ ձևական բնույթ է կրել։ Մրցության նկատմամբ այսպիսի վերաբերմունքը չէր կարող չանդրադառնալ և իրոք անդրադարձավ կոլտնտեսության առաջ դրված խնդիրների կատարման վրա։

Հաշվի առնելով անցյալ տարվա թերությունները, այս տարի բարձր ցուցանիշների հասնելու նպատակով դաշտավարության և ոչխարաբուծության գծով սահմանվել են փոխանցիկ կարմիր դրոշներ՝ առաջնություն շահած բրիգադաներին հանձնելու համար։ Միջբրիգադային փոխանցիկ դրոշ է սահմանվել նաև կովաբուծական ֆերմայում։ Որոշ աշխատանք է կատարված առաջավոր փորձի արմատավորման ուղղությամբ։ Կովաբուծական ֆերմայի յուրաքանչյուր բրիգադայում դրված են օրվա ցուցանիշների ամփոփման տախտակներ, կազմակերպվում է լավագույն անասնապահների և կթվորուհիների աշխատանքի փորձի փոխանակում։ Այս ամենը լավ է, սակայն սրանք միայն առաջին քայլերն են։

Կոլտնտեսականների ստեղծագործական նախաձեռնությունն ու ակտիվությունը բարձրացնելու համար դեռ բավարար չափով չեն օգտագործված եղած հնարավորությունները, կոլտնտեսությունում սոցիալիստական մրցությունը դեռ չի ստացել մասսայական բնույթ։ Կոլտնտեսականների ընդհանուր ժողովում մինչև այժմ չի հաստատված Ղաչաղանի կոլտնտեսության հետ մրցության մեջ մտնելու պայմանագիրը։ Գյուղատնտեսության առաջավորների շրջանային հավաքում հաստատված միջշրջանային մրցության պայմանագրի մեջ Ուզունլարի կոլտնտեսությանը վերաբերող պարտավորությունների և Ղաչաղանի կոլտնտեսության հետ սոցիալիստական մրցությամբ ստանձնած պարտավորությունների միջև աչք ծակող տարբերություններ կան։ Օրինակ՝



միջշրջանային մրցության պայմանագրում նշված է, որ Ուզունլարի կոլտնտեսությունը պարտավորվում է կարտոֆիլի ցանքի յուրաքանչյուր հեկտարից միջինը ստանալ 140 ցենտներ բերք, իսկ միջկոլտնտեսային պայմանագրում՝ 120 ցենտներ։ Նույնպիսի տարբերություններ կան նաև այլ կուլտուրաների գծով։ Սրա պատճառն այն է, որ ինչպես շրջանի, այնպես էլ կոլտնտեսության ղեկավար աշխատողները լուրջ չեն ուսումնասիրել կոլտնտեսության հնարավորությունները և չգիտեն, թե աշխատանքի օրինակելի կազմակերպման դեպքում ինչպիսի ցուցանիշներ կարելի է ձեռք բերել։

Ուզունլարի կոլտնտեսային աշխատավորության մեջ մեծ ուժ և եռանդ կա։ Պարտիական կազմակերպության առաջնահերթ խնդիրն է՝ սոցիալիստական գործարար մրցության օրինակելի կազմակերպումով գործի դնել և լրիվ օգտագործել այդ ուժն ու եռանդը։

Քաղաքական-դաստիարակչական աշխատանքը պարտիական կազմակերպության հարազատ գործն է։ Այդ աշխատանքի համար կոլտնտեսային սկզբնական պարտիական կազմակերպությունը պետք է օգտագործի բոլոր հնարավորությունները՝ կինոն, ռադիոն, մամուլը, բանավոր ու գրավոր ագիտացիան, պարտիական լուսավորության ցանցը, նրանցում լայն կերպով ներգրավի գյուղական ինտելիգենցիային, գյուղատնտեսության առաջավորներին ու մասնագետներին։

Այս բոլոր հնարավորությունների տեսակետից Ուզունլար գյուղը բարենպաստ պայմաններ ունի։ Այնտեղ մտավոր աշխատանքով զբաղվող 120-ից ավել մարդիկ կան, դաշտերում, ֆերմաներում և ամենուրեք սովորական բան է հանդիպել միջնակարգ կրթություն ունեցող մարդկանց։ Գյուղում ստացվում է 1722 օրինակ թերթ և ամսագիր, գյուղի 3 գրադարանում կա ավելի քան 27 հազար կտոր գիրք և համարյա յուրաքանչյուր կոլտնտեսական ընտանիք գրադարանում ունի իր աբոնեմենտը։

Անցյալ տնտեսական տարվա արդյունքները որոշակի ցույց տվին, որ Ուզունլարի կոլտնտեսությունում հարկ եղած բարձրության վրա չի եղել քաղաքական-դաստիարակչական աշխատանքը, որ քաղաքական աշխատանքը չի շաղկապվել պրակտիկ խնդիրների հետ, չի նպաստել այդ խնդիրների լուծմանը, որ պարտիական կազմակերպությունը քաղաքական-դաստիարակչական աշխատանքի համար չի կարողացել լրիվ օգտագործել այն մեծ հնարավորությունները, որ մենք նշեցինք վերևում։

Սկզբնական պարտիական կազմակերպության հաշվետու-ընտրական ժողովում կոմունիստները սուր կերպով քննադատեցին պարտիական բյուրոյի անբավարար աշխատանքը։ Կոմունիստների քննադատական դիտողությունները հաշվի առնելով՝ նորընտիր պարտբյուրոն այս տարի համեմատաբար լավ է կազմակերպել գյուղում տարվող ագիտացիոն աշխատանքը։ Պարտիական կազմակերպությունը վերանայել է ագիտատորների կազմը, ագիտացիոն աշխատանքի մեջ ներգրավել է գյուղական ինտելիգենցիային, գյուղատնտեսության առաջավորներին ու մասնագետներին։ Այժմ ագիտկոլեկտիվը բաղկացած է 30 հոգուց, որից 14-ը ուսուցիչներ են, 2-ը՝ ագրոնոմ, 2-ը՝ զոոտեխնիկ, մեկը՝ բժիշկ, 11-ը՝ գյուղատնտեսության առաջավոր։

Պարտիական կազմակերպությունը ագիտատորների խորհրդակցություններ է հրավիրում թեորիական և մեթոդական հարցերի շուրջը, նրանց համար կազմակերպում է դասախոսություններ և զեկուցումներ, լավագույն ագիտա-

տորների աշխատանքն ուսումնասիրում է և մասսայականացնում: Այս և նման այլ միջոցառումների շնորհիվ կոլտնտեսությունում քաղաքական աշխատանքն զգալի չափով աշխուժացել է: Այս տեսակետից առանձնապես ուսանելի է կովաբուծական ֆերմայի ագիտատոր Ս. Գրիգորյանի փորձը: Գրիգորյանը մասնագիտությամբ զոոտեխնիկ է, անմիջականորեն աշխատում է կոլտնտեսային արտադրության մեջ և լավ ծանոթ է այդ արտադրությանը: Կովաբուծական ֆերմայի աշխատողների համար նրա ամենօրյա զրույցները ուսանելի են: Նա աչքաթող չի անում նաև առաջավոր փորձի պրոպագանդան, հաճախ նշում է կոլտնտեսության առաջավորներին, մանրամասն վերլուծում նրանց աշխատանքի արդյունքները: Այսպես են աշխատում նաև ագիտատորներ Ա. Պապիկյանը, Ե. Սահակյանը և ուրիշներ:

Բայց ոչ բոլոր ագիտատորներն են այսպես աշխատում: Ծխախոտագործության բնագավառում աշխատող կոլտնտեսականների հետ, որոնք համեմատաբար ցածր կրթություն ունեն և ավելի շատ են ագիտացիայի կարիք զգում, քաղաքական-բացատրական աշխատանք չի տարվում:

— Գարնանացանի աշխատանքներն սկսվելուց հետո մեզ մոտ ագիտատոր չի եկել,— ասում է ծխախոտագործուհի Հ. Մամաջանյանը: Մեզ բոլորիս էլ շատ հարցեր են հետաքրքրում, բայց այդ հարցերը մնում են անպատասխան:

Եվ իսկապես, ոչ միայն այստեղ ամրացված ագիտատորը, այլև կոլտնտեսության ագրոնոմ, կոմունիստ Ս. Տիտանյանը, լինելով ծխախոտագործների մոտ, զլանում է նրանց հետ բացատրական աշխատանք տանել, չի հետաքրքրվում ծխախոտագործների կյանքով և պատասխան չի տալիս նրանց հետաքրքրող շատ հարցերին:

Ագիտացիոն բացատրական աշխատանքի անբավարար դրվածքի հետևանքով ծխախոտագործներ Մ. Ասրյանը, Ե. Կոստանյանը, Մ. Կոլոլյանը և շատ ուրիշներ չգիտեն, թե ինչ խնդիրներ ունեն կատարելու, ծխախոտի պլանտացիայի յուրաքանչյուր հեկտարից ինչքան բերք պիտի ստացվի և այլն: Ագիտացիոն-մասսայական աշխատանքը անբավարար է տարվում նաև այգեգործական № 5 և № 2 բրիգադաներում:

Պարտիական կազմակերպության մասսայական-քաղաքական աշխատանքում կարևոր տեղ է գրավում նաև ցուցադրական ագիտացիան: Ուզունլարի կոլտնտեսային պարտիական կազմակերպությունը ագիտացիայի այս ձևի օգտագործման վրա այնքան էլ լուրջ ուշադրություն չի դարձնում: Կոլտնտեսային ակումբը նույնպես իր դերը բավարար չափով չի կատարում: Ակումբի համար հատկացված շենքը զուրկ է տարրական հարմարություններից, չկան խաղասենյակներ, խաղեր (շախմատ, շաշկի և այլն): Գյուղում կան մեծ թվով շնորհալի երիտասարդներ, որոնք մեծ ցանկություն ունեն ընդգրկվելու ինքնագործության խմբակներում, մինչդեռ ակումբին կից այդպիսի խմբակներ չեն կազմակերպվում: Պարտիական կազմակերպությունը և կոլտնտեսության վարչությունը շատ քիչ ուշադրություն են դարձնում աշխատավորների կուլտուրական սպասարկման վրա:

Կոլտնտեսային աշխատավորության և արտելային տնտեսության աշխատանքի կազմակերպմանը օգնելու լավագույն միջոցներից մեկն էլ պատի թերթն է: Սակայն «Լենինի ուղիով» պատի թերթը շատ քիչ է անդրադառնում այնպիսի առաջնահերթ հարցերի, ինչպիսիք են՝ սոցիալիստական մրցության



ծավալումը, կոլտնտեսության աշխատանքներում եղած թերությունների բացահայտումը և այլն: Թերթի խմբագրական կոլեգիան (խմբկոլի նախագահ Ա. Դավիթավյան) խնամքով չի ձևավորում թերթը:

Կոլտնտեսության պարտիական կազմակերպության խնդիրն է՝ իր ամենօրյա աշխատանքում օգնել կոլտնտեսության վարչությանը՝ կյանքում կիրառելու պարտիայի և կառավարության որոշումները:

Իրագործելով վերահսկողության իր ֆունկցիան՝ պարտիական կազմակերպությունը պետք է հաշվի առնի, որ արտելի վարչությունը կոլտնտեսականների ընտրած օրգանն է, որ գործերի դրության վրա պետք է ազդել կոլտնտեսության վարչության միջոցով: Պարտիական կազմակերպությունն իր նպատակին կհասնի այն դեպքում, երբ կոլտնտեսության գործերին վերահսկելիս լսի մասսաների ձայնը, հենվի ակտիվի վրա, ունկնդրի նրանց, հաշվի առնի նրանց դիտողություններն ու առաջարկությունները: Կոլտնտեսության կոմունիստները չպետք է գործեն հրամաններով, չպետք է փոխարինեն արտելի վարչությանը, այլ պիտի գործեն նրա միջոցով, օգնեն նրան ամեն օր, բարձրացնեն նրա հեղինակությունը: Պարտիական կազմակերպության հատուկ ուշադրության առարկան պետք է լինեն բերքատվությունը բարձրացնելու, անասունների գլխաքանակը և մթերատվությունն ավելացնելու, աշխատանքի արտադրողականությունը բարձրացնելու, կոլտնտեսության արտադրական ռեզերվները լավագույն կերպով օգտագործելու հարցերը:

Այս հարցերի լուծման հաջողությունը կախված է նրանից, թե պարտիական կազմակերպությունն իր գործունեության ընթացքում աշխատանքի ինչպիսի ձևեր ու մեթոդներ է օգտագործում, որքան ժամանակին և տեղին է բարձրացնում հարցերը և ինչպիսի միջոցների է դիմում իր որոշումների իրականացման համար: Բայց, ահա, Ուզունլարի կոլտնտեսային պարտիական կազմակերպությունը անբավարար է իրականացնում իր վերահսկողության ֆունկցիան կոլտնտեսության արտադրության նկատմամբ:

Հայտնի է, որ գյուղատնտեսական արտելի Կանոնադրությունը կոլտնտեսային կյանքի անխախտ օրենքն է և նրա սկզբունքները հետևողականորեն պետք է կիրառվեն կյանքում, մինչդեռ Ուզունլարում հաճախ խախտվում են այդ սկզբունքները: Բազմաթիվ են կոլտնտեսային դեմոկրատիայի խախտման, հանրային ունեցվածքի շռայլման և յուրացման փաստերը:

Այսպես, օրինակ, 1956 թվականի ընթացքում ընդհանուր ժողով է հրավիրվել միայն մեկ անգամ, որին չեն մասնակցել զգալի թվով կոլտնտեսականներ: Այս բոլորի հետևանքով տնտեսության համար վճռական նշանակություն ունեցող շատ հարցեր որոշվում են ինքնակամ կերպով, առանց ընդհանուր ժողովի: Դեռ ավելին. այնպիսի կարևորագույն հարցեր, ինչպիսիք են՝ գյուղատնտեսական արտելի Կանոնադրության մեջ փոփոխումներ և լրացումներ կատարելը, արտադրական պլանները քննարկելը և հաստատելը, տնտեսության ճյուղերը պլանավորելը, մուտքի-ելքի հաշիվները հաստատելը և հանրային տնտեսության կառավարման այլ հարցերը քննվել են ոչ օրինական կարգով ընտրված լիազորական ժողովում:

Ներկայումս, գյուղատնտեսական աշխատանքների այս եռուն օրերին կոլտնտեսությունում աշխատանքային կարգապահությունը և աշխատանքի հաշվառումը դեռևս անհրաժեշտ բարձրության վրա չեն գտնվում: Արտադրության մեջ, մասնավորապես դաշտավարության և այգեգործության մեջ լրիվ

չափով չի կիրառվում գործավարձային սիստեմը, մեծ ուշացումներով են հաշվի առնվում կոլտնտեսականների կատարած աշխատանքը և գրանցվում նրանց վաստակած աշխօրերը։

Աշխատանքների վատ կազմակերպման հետևանքով անցյալ տարի բազմաթիվ կոլտնտեսականներ չեն մասնակցել դաշտային աշխատանքներին, աշխատող կոլտնտեսականների 25 տոկոսից ավելին չի կատարել աշխօրերի պարտադիր մինիմումը։ Չնայած եղած հնարավորություններին՝ ինչպես անցյալ տարի, այնպես էլ այժմ արտելում չի կիրառվում ամենամսյա ավանսավորում, այնինչ վարչական ապարատում աշխատողներից 10 հոգի իրենց հասանելիքից 80 հազար ռուբլի ավելի են ստացել կոլտնտեսությունից։ Անասունների վատ խնամքի հետևանքով վերջին երկու տարվա ընթացքում սատկել կամ ստիպված մորթել են 173 գլուխ խոշոր եղջերավոր և 1275 գլուխ մանր եղջերավոր անասուն, 105 գլուխ խոզ, 1183 թև թռչուն։ Կոլտնտեսությունը վատ ցուցանիշներ ունեցավ առանձնապես դաշտավարության և այգեգործության գծով։ 1956 թվականին նախորդ տարվա համեմատությամբ այդ ճյուղերի եկամտաբերությունը պակաս է եղել 846.000 ռուբլով։

Վերը նշված թերությունները և բացերը չէին լինի, եթե պարտիական կազմակերպությունը հետևողականորեն իրականացներ իր վերահսկողության ֆունկցիան, խորամուխ լիներ արտադրության բոլոր հարցերում, ժամանակին հայտաբերեր թերությունները և միջոցներ ձեռք առներ դրանք վերացնելու համար։

Ներկայումս պարտիան և կառավարությունը խնդիր են դնում մոտակա տարիներին բնակչության մեկ շնչին ընկնող մսի, յուղի և կաթի արտադրությամբ հասնել Ամերիկայի Միացյալ Նահանգներին։ Այդ խնդրի հաջող կատարումը, որի համար կան բոլոր հնարավորությունները, պահանջում է աշխատանքի օրինակելի կազմակերպում և ուժերի լարում։ Հաշվի առնելով այդ, Ուզունլարի կոլտնտեսության պարտիական կազմակերպությունը պետք է ավելի լավ զբաղվի հանրային տնտեսության աշխատանքներով և բոլոր կոլտնտեսականներին մոբիլիզացնի՝ անասնաբուծական մթերքների արտադրությունը խոշոր չափով ավելացնելու համար։

Ուզունլարի կոլտնտեսության պարտիական կազմակերպության աշխատանքը բարձր մակարդակի հասցնելու, կոլտնտեսությունը ռեսպուբլիկայում առաջավոր դարձնելու համար կան բոլոր նախադրյալները։ Պահանջվում է միայն ՀԿՊ Ալավերդու շրջկոմի ամենօրյա գործարար օգնությունն ու ղեկավարությունը, որը, սակայն, խիստ անբավարար է։

---



# ԶԱՐԳԱՑՄԱՆ ԳԱՂԱՓԱՐԸ ԲՆԱԿԱՆ ԳԻՏՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՄԵՋ

## Ա. ՄԻՆԱՍՅԱՆ

Մեզ շրջապատող անսահման տիեզերքը գտնվում է հավերժ շարժման, փոփոխման և զարգացման պրոցեսում։ Այդ շարժումն ու զարգացումը տեղի են ունենում մատերիայի զարգացման օրենքներին համաձայն։ Մատերիան միակ օբյեկտիվ ռեալականությունն է, որը չունի սկիզբ ու վախճան և գտնըվում է հավերժ փոփոխման ու զարգացման մեջ։ Մատերիայի զարգացման օղակները հանդիսանում են մատերիայի զարգացման որակապես տարբեր աստիճանները։ Այդ օղակները կապված են իրար հետ, պայմանավորում են մեկը մյուսին, իսկ միաժամանակ որակապես տարբերվում են մեկը մյուսից։ Կնշանակի՝ աշխարհը որպես անսահման բարդ ամբողջություն թե՛ միասնական է, թե՛ խիստ հարուստ ու բազմազան։ Նրա շարժման ու զարգացման իրական բնույթը լավ հասկանալու համար անհրաժեշտ է այս երկու կողմերը դիտել իրենց դիալեկտիկական միասնության մեջ։ Հարկավոր է հիշել, որ աշխարհի միասնությունը գոյություն ունի նրա բազմազանության մեջ և ընդհակառակն։ Բնական է, որ մարդկային միտքը չի կարող մեկեն, սպառիչ կերպով ըմբռնել անսահման բնությունը, մատերիայի զարգացման տարբեր աստիճանները և ստեղծել բնության զարգացման ավարտուն պատկերը։ Ահա թե ինչու զարգացման գաղափարը բնագիտության մեջ չի կարող լինել անփոփոխ, մեկընդմիշտ տրված. նրա փոփոխումը և կատարելագործումը կապված է բնագիտության ձեռք բերած նվաճումների հետ։

Որպեսզի կարողանանք պատկերացում տալ արդի բնագիտության մեջ զարգացման գաղափարի մասին, հարկավոր է համառոտակի կանգ առնել այն հարցի վրա, թե ինչպես է փոփոխվել այդ գաղափարը բնագիտության զարգացման տարբեր էտապներում, կապված գիտության տարբեր ճյուղերի նվաճումների և փիլիսոփայական մտքի առաջընթացի հետ։



Մարդկային հասարակության առաջացման հետ միասին աշխատանքի պրոցեսում ձևավորվում է մարդու գիտակցությունը։ Մարդը մնացած կենդանիներից տարբերվում է նախ և առաջ նյութական բարիքների արտադրությամբ, նրանով, որ բնությունը վերափոխում է իր կարիքներին համեմատ։ Արտադրության ընթացքը պահանջում է թափանցել բնության մեջ, բացահայտել վերջինիս զարգացման օրինաչափությունները, որովհետև առանց դրանց

*իմացության անհնար է ներգործել բնության վրա և այն վերափոխել ցանկալի ուղղությամբ։*

*Նյութական բարիքների արտադրության զարգացումը պահանջում է ուսումնասիրել բնության փոփոխման ու զարգացման օրենքները, որոնք գիտության այս կամ այն ճյուղի կողմից բացահայտվում են ոչ թե միանգամից, այլ աստիճանաբար, քայլ առ քայլ, գիտության բոլոր ճյուղերի միջոցով, նրանց վերընթաց զարգացման պրոցեսում։ Գիտության առանձին ճյուղերը նույնպես առաջ են գալիս ոչ թե միաժամանակ, այլ աստիճանաբար, մարդկային մտքի զարգացման տարբեր էտապներում։ Ինչքան բարդ է շարժման այս կամ այն ձևը, այնքան ուշ է ձևավորվում տվյալ երևույթն ուսումնասիրող գիտությունը, քանի որ նրա իմացությունը հնարավոր է դառնում միայն այն դեպքում, երբ արդեն ուսումնասիրված են նրան նախորդած շարժման ձևերը։ Քանի որ շարժման ձևերը կապված են մատերիայի տարբեր տեսակի դիսկրետ մասնիկների հետ, իսկ մատերիան իր զարգացման պրոցեսում ծնում է անսահման թվով որակապես տարբեր մասնիկներ, ապա բնական է, որ գիտության զարգացման, նրա նոր ճյուղերի առաջացման համար անսահման հնարավորություններ կան։*

*Ինչպես բնագիտության տարբեր ճյուղերը, այնպես էլ փիլիսոփայությունը զբաղվում են իրական աշխարհի ուսումնասիրությամբ։ Կնշանակի, թե՛ բնագիտության և թե՛ փիլիսոփայության նյութը, առարկան, շարժվող մատերիան է։ Ուսումնասիրվող նյութի ընդհանրությունը բնագիտության տարբեր ճյուղերի և փիլիսոփայության իրական միասնության հիմքն է։ Բնագիտության տարբեր ճյուղերը կապված են ոչ միայն մեկը մյուսի, այլև փիլիսոփայության հետ։ Սակայն այդ չի նշանակում, թե արտաքին աշխարհի արտացոլման բնագավառում փիլիսոփայության և բնագիտության տարբեր ճյուղերի միջև ոչ մի տարբերություն չկա։ Բնագիտության ամեն մի ճյուղ տալիս է օբյեկտիվ աշխարհի միայն առանձին կողմերի պատկերը։ Բայց այդ ճյուղերից ոչ մեկը չի կարող տալ օբյեկտիվ աշխարհի փոփոխման ու զարգացման ամբողջական ընդհանուր պատկերը, ունենալ աշխարհայացքային նշանակություն։*

*Ի տարբերություն բնագիտության առանձին ճյուղերի՝ մարքսիստական փիլիսոփայությունը հենվելով բնագիտության բոլոր բնագավառների նվաճումների վրա, ընդհանրացնելով դրանք՝ բացահայտում է բնության զարգացման ամենաընդհանուր օրենքները, որոնք իրենց ուժը պաշտպանում են ոչ թե բնության առանձին բնագավառների, մատերիայի առանձին վիճակների, այլ նրա բոլոր կողմերի, մատերիայի բոլոր վիճակների համար։ Ուստի և միայն այդ օրենքների օգնությամբ հնարավոր է դառնում արտացոլել արտաքին աշխարհն ամբողջությամբ վերցրած, տալ վերջինիս զարգացման ընդհանուր պատկերը։ Այստեղից որոշակիորեն երևում է, որ միակ գիտական աշխարհայացքը մարքսիստական փիլիսոփայությունն է, որը հզոր մեթոդոլոգիական զենք է բնագիտության զարգացման համար։*

*Ինչպես բնագիտության նվաճումները մարքսիստական փիլիսոփայությանն օգնում են ավելի խորն ու բազմակողմանիորեն մշակելու արտաքին աշխարհի փոփոխման և զարգացման ընդհանուր սկզբունքները, այնպես էլ մարքսիստական փիլիսոփայության բացահայտած ընդհանուր սկզբունքները հնարավորություն են տալիս ավելի ճիշտ պատկերացում կազմելու արտաքին*



*աշխարհի զարգացման մասին, որը վճռական նշանակություն ունի բնագիտության առանձին ճյուղերի և ընդհանրապես ամբողջ բնագիտության զարգացման համար։ Միայն մարքսիստական փիլիսոփայությունն է, որ տալիս է ինչպես աշխարհը ճանաչելու ճիշտ մեթոդ, այնպես էլ ձեռք բերված նվաճումների մեկնաբանման հետևողական գիտական թեորիա։ Այս բոլորից հետո պարզ է դառնում այն խոր, օրգանական կապը, որ կա փիլիսոփայության և բնագիտության միջև։*

*Մեր թվականությունից առաջ հին Չինաստանում, Հնդկաստանում ու հին Հունաստանում նոր սաղմնավորվող բնական գիտությունները և փիլիսոփայական հայացքները հանդես էին գալիս միասին, որպես գիտելիքների մեկ միասնական բնագավառ։ Էնգելսը նշում է, որ հունական հնագույն փիլիսոփաները միաժամանակ բնախույզներ էին։ Այն ժամանակ բնության առանձին կողմերը չէին ուսումնասիրված, չկային որոշակիորեն ձևավորված բնագիտության առանձին ճյուղեր, որոնք հնարավորություն տային խորանալու բնության առանձին կողմերի ճանաչողության մեջ, ուստի գործնականում անհնարին էր արտաքին աշխարհի զարգացման մասին ստեղծել գիտականորեն հիմնավորված հայացք։ Զարգացման մասին հին հունական մտածողների հայացքը դրսևորվում էր նրանց դիալեկտիկայում, որը ուներ տարերային, նաիվ բնույթ։ Հունական մտածողները բնությունը դիտում էին որպես չմասնատված ամբողջություն, բնության երևույթների համընդհանուր կապը հույների մոտ անմիջական հայեցողության արդյունք էր։ Դիտելով իրենց շրջապատող բնությունը՝ նրանք եկել էին այն համոզման, որ իրերն ու երևույթները գտնվում են փոփոխման ու զարգացման, ծագման ու ոչնչացման հավիտենական պրոցեսում։ Էնգելսը նշում է, որ «Աշխարհի նկատմամբ այս սկզբնական, պարզամիտ, բայց ըստ էության ճիշտ հայացքը հատուկ էր հին հունական փիլիսոփայությանը և առաջին անգամ հստակորեն արտահայտել է Հերակլիտը. ամեն ինչ գոյություն ունի և միևնույն ժամանակ գոյություն չունի, որովհետև ամեն ինչ hոսում է, ամեն ինչ շարունակ փոփոխվում է, ամեն ինչ գտնվում է ծագման և անհետացման մշտական պրոցեսում» (Ֆ. Էնգելս, «Անտի-Դյուրինգ», էջ 25, 1952)։*

*Չնայած որ մարդկային միտքն իր զարգացման այս էտապում ճիշտ էր ըմբռնել բնության զարգացման ամենաընդհանուր կապակցությունները, բայց նա չէր կարող կանգ առնել իմացության այս աստիճանի վրա, նա պետք է ձգտեր գիտականորեն բացատրել այդ ընդհանուր կապակցությունները, տալ բնության զարգացման ամբողջական, գիտականորեն հիմնավորված պատկերը։ Այստեղից պարզ է դառնում, թե ինչու հունական դիալեկտիկան տրամաբանորեն իր տեղը պետք է զիջեր մտածողության մի այլ մեթոդի, որը հնարավորություն տար մասնատել բնությունը, ուսումնասիրել նրա առանձին կողմերը։ Այդպիսի մեթոդ հանդիսացավ մետաֆիզիկան, որը ծագելով ալեքսանդրյան շրջանի հույների մոտ, հետագայում, սկսած 15-րդ դարի երկրորդ կեսից, լայն տարածում ստացավ գիտության մեջ։*

*Մտածողության մետաֆիզիկական մեթոդը բնագիտության համար հարմար մեթոդ էր այն ժամանակ, երբ դեռ բնագիտությունը մնում էր որպես փաստեր հավաքող գիտություն, որովհետև նա հնարավորություն էր տալիս իրերն ու երևույթներն առանձնացնել իրենց ընդհանուր կապակցությունից և ուսումնասիրել առանձին, որպես մեկընդմիշտ տրված անփոփոխ էություն-*

ներ, իսկ այդպիսի մոտեցումը օժանդակում էր առանձին իրերի ու երևույթների նկարագրմանը։ Դա էր մետաֆիզիկական մեթոդի կատարած պատմական դրական դերը։ Նրա օգնությամբ բնական գիտությունները հսկայական նյութ կուտակեցին բնության ուսումնասիրության տարբեր բնագավառներում, հատկապես խոշոր հաջողությունների հասան մաթեմատիկան և մեխանիկան։

Փիլիսոփայական միտքը զարգանում էր բնագիտության հետ սերտ կապակցված։ Նա ոչ միայն յուրացրել էր բնագիտության մեջ տիրապետող մետաֆիզիկական մեթոդը, այլև շարժման բոլոր ձևերը հանգեցրել էր մեխանիկական տեղափոխության, որովհետև գիտությունների մեջ ամենազարգացածը մեխանիկան էր։ Կնշանակի, նշված ժամանակաշրջանում ինչպես բնագիտության, այնպես էլ փիլիսոփայության բնագավառում տիրապետող էր զարգացման մետաֆիզիկական գաղափարը։ Էնգելսը գրում է, որ նշված ժամանակաշրջանը բնութագրվում է յուրատեսակ ընդհանուր աշխարհայացքի մշակմամբ, «որի կենտրոնն է հանդիսանում բնության բացարձակ անփոփոխելիության վերաբերյալ պատկերացումը» (Ֆ. Էնգելս «Բնության դիալեկտիկա», էջ 10, 1950)։

Քանի դեռ բնագիտությունն զբաղվում էր փաստեր հավաքելով, զարգացման նկատմամբ եղած մետաֆիզիկական մեթոդը չէր արգելակում բնագիտության զարգացմանը։ Բայց երբ բնագիտության առջև ամբողջ հասակով կանգնեց արդեն ձեռք բերած փաստական նյութը համակարգելու հարցը, մետաֆիզիկական մեթոդն սկսեց արգելակել բնագիտության զարգացումը, որովհետև փաստական նյութի համակարգումը նշանակում է իրերն ու երևույթները դիտել իրենց փոխադարձ կապակցության և պայմանավորվածության մեջ, իրենց զարգացման և փոփոխման տեսակետից, որը հատուկ չէր մետաֆիզիկային։ Այսպիսով, բնագիտության կուտակած փաստական նյութը պայմաններ ստեղծեց մետաֆիզիկական մեթոդի դուրս մղման ու կործանման համար։ Դա որոշակիորեն հաստատում էր բնության զարգացման դիալեկտիկական բնույթը, որը անհաշտելի հակասության մեջ էր ընկնում բնագետների շրջանում տիրապետող մետաֆիզիկական մտածելակերպի հետ։ Այդ հակասությունը Էնգելսը համարում է 19-րդ դարի բնագիտության հիմնական հակասությունը։

Բնության զարգացման դիալեկտիկական բնույթը հաստատելու և զարգացման վերաբերյալ գիտական տեսակետ մշակելու համար կարևոր նշանակություն ունեցավ գիտության մի շարք ճյուղերի զարգացումը։

Քիմիայի արագ զարգացման շնորհիվ հնարավոր եղավ անօրգանական նյութերից սինթեզել այնպիսի նյութեր, որոնք առաջ սինթեզվում էին բույսերի և կենդանիների մեջ։ Այդ աշխատանքների շնորհիվ պարզվեց, որ ինչպես օրգանական, այնպես էլ անօրգանական աշխարհի հիմքում ընկած են միևնույն քիմիական էլեմենտները։ Պարզվեց, որ այդ աշխարհները ոչ միայն միմյանցից տարբեր են, այլև միաժամանակ ունեն ընդհանուր հիմքեր, այսինքն՝ հանդիսանում են միևնույն մատերիայի զարգացման տարբեր աստիճանները։ Դա կարևոր քայլ էր բնության զարգացման դիալեկտիկական բնույթի ըմբռնման ճանապարհին։

Բնության դիալեկտիկայի ըմբռնման համար խոշոր նշանակություն ունեցան 19-րդ դարում գիտության կատարած հետևյալ երեք հայտնագործությունները։ Դրանցից առաջինը բջիջի հայտնագործումն էր, որի շնորհիվ հաստատ-



վեց, որ բոլոր կենդանի օրգանիզմները, սկսած ամենապարզից և վերջացրած ամենաբարդով, կազմված են բջիջներից, որոնց բոլորի զարգացումն էլ կատարվում է նրանց բաժանման միևնույն կանոնով։ Բոլոր կենդանիների համար ընդհանուր միավորի՝ բջիջի հայտնագործումը արդեն որոշակիորեն վկայում էր նրանց միջև եղած կապի մասին, տալիս էր կենդանի օրգանիզմների զարգացման իդեան, որը կարիք էր զգում հետագա հետազոտությունների ու գիտական հիմնավորման։

Երկրորդ խոշոր հայտնագործությունը էներգիայի պահպանման և փոխակերպման օրենքի հայտնագործումն էր։ Մինչև այդ օրենքի հայտնագործումը բնության մեջ հանդիպող էներգիայի տարբեր տեսակները՝ մեխանիկական, ջերմային, էլեկտրական, քիմիական և այլն դիտվում էին մեկը մյուսից կտրված, մեկը մյուսից մեկուսացված։ Այդ հայտնագործությունը ցույց տվեց, որ բնության մեջ հանդիպող էներգիայի կոնկրետ տեսակները միևնույն ունիվերսալ շարժման դրսևորման տարբեր ձևերն են, որոնք թեև կապված են մեկը մյուսի հետ, պայմանավորում են միմյանց, բայց որակապես տարբերվում են իրարից և որոշակի պայմաններում կարող են վերածվել մեկը մյուսին։ Կնշանակի, այդ հայտնագործության շնորհիվ անօրգանական բնության մեջ մինչ այդ մեկուսացված ուժերը վերածվեցին նրա փոփոխման միասնական շղթայի։

Երրորդ մեծ հայտնագործությունն այն էր, որ Դարվինը, ընդհանրացնելով իր կուտակած հարուստ փաստական նյութը, ցույց տվեց, որ մեզ շրջապատող բոլոր բույսերն ու կենդանիները ոչ թե միանգամից են առաջ եկել, այլ զարգացման երկարատև պրոցեսի արդյունք են։ Այդ պրոցեսի ընթացքում աստիճանաբար միաբջիջ պարզ օրգանիզմներից առաջացել են ավելի բարդ օրգանիզմները, իսկ միաբջիջ օրգանիզմները ծագել են սպիտակուցից, որը քիմիական ճանապարհով առաջացել է անօրգանական նյութերից։ Այդ հայտնագործության շնորհիվ բացահայտվեց, որ տարբեր տեսակի բույսերն ու կենդանիները միևնույն օրգանական աշխարհի զարգացման տարբեր աստիճաններն են։

Այսպիսով, բնագիտության զարգացումն ընդհանուր գծերով արդեն նախապատրաստել էր բնության զարգացման դիալեկտիկական ըմբռնումը։ Անհրաժեշտ էր գիտականորեն ընդհանրացնել այդ բոլոր նվաճումները և զարգացման մասին ստեղծել իսկական ուսմունք։ Բուրժուական բնագետներն ու փիլիսոփաները իրենց դասակարգային սահմանափակվածության պատճառով ի վիճակի չէին այդ անելու։ Չնայած բուրժուազիան իր ժամանակին զարգացրել էր մատերիալիզմը, առաջ էր շարժել այն, բայց այդ մատերիալիզմն ուներ իր դասակարգային և պատմական սահմանափակությունները։

Մարքսը և Էնգելսը քննադատորեն յուրացնելով մարդկային մտքի մինչ այդ ձեռք բերած ողջ արժեքավորը և դրականը՝ ընդհանրացրին բնական գիտությունների ձեռք բերած խոշոր նվաճումներն ու պրոլետարիատի ռևոլյուցիոն պրակտիկան և ստեղծեցին մինչև վերջ հետևողական գիտական փիլիսոփայություն՝ դիալեկտիկական և պատմական մատերիալիզմը։

Մարքսի և Էնգելսի ստեղծած մատերիալիստական դիալեկտիկայի՝ զարգացման վերաբերյալ ամենաբազմակողմանի, խոր և գիտական ուսմունքի գիտակցական կիրառումը բնագիտության մեջ, բնագետներին հնարավորություն ընձեռեց ազատվել մոլորություններից և կանգնել ճիշտ մեթոդոլոգիայի դիրքերի վրա։ Սակայն կապիտալիզմի տիրապետության պայմաններում

մարքսիստական փիլիսոփայությունը չէր կարող դառնալ բնագիտության զարգացման մեթոդոլոգիա։ Վերջինիս ըմբռնմանը կարող էին հասնել և հասան միայն առանձին առաջավոր մտածողներ, իսկ բուրժուական բնագետների ճնշող մեծամասնությունը գտնվում էր և այժմ էլ շարունակում է մնալ բուրժուական փիլիսոփայության ազդեցության տակ։

Էնգելսն իր ժամանակին նշել է, որ թեորիական բնագիտության մեջ իշխող խառնաշփոթության պատճառն այն է, որ բնագիտության մեջ կուտակվող փաստական նյութի դիալեկտիկական բնույթին հակադրվում է բնագետների շրջանում արմատացած մետաֆիզիկական մտածելակերպը։

Հետագայում Լենինն իր «Մատերիալիզմ և էմպիրիոկրիտիցիզմ» աշխատության մեջ ցույց տվեց, որ նոր շրջանի որոշ ֆիզիկոսներ ռելյատիվիզմի վրայով գլորվեցին դեպի իդեալիզմը հենց դիալեկտիկա չգիտենալու հետևանքով։ Մախիզմի ձախորդությունների մեջ Լենինը գլխավորը համարում է դիալեկտիկա չգիտենալը։

✻✻✻

Մատերիալիստական դիալեկտիկան միակ ուղեցույց աստղն է օբյեկտիվ աշխարհի օրինաչափությունների բացահայտման և ըմբռնման համար. նա ոչ միայն օժանդակում է գիտության առաջընթաց զարգացմանը, այլև գիտության կողմից կուտակվող հսկայական փաստական նյութի ընդհանրացման միջոցով անընդհատ կատարելագործվում է և զարգանում։

Գիտության զարգացման ամեն մի առաջընթաց քայլ նոր հաստատում է բերում մատերիալիստական դիալեկտիկային, ապացուցում է մարքսիստական փիլիսոփայության այն նշանավոր թեզը, որ օբյեկտիվ դիալեկտիկան թագավորում է հասարակության և բովանդակ բնության մեջ, որ իրական աշխարհի զարգացումն ունի խոր դիալեկտիկական բնույթ, իսկ սուբյեկտիվ դիալեկտիկան բնության դիալեկտիկայի արտացոլումն է մարդկային մտածողության մեջ։ Կնշանակի մարդկային միտքը որքան խորն է ըմբռնում իրական աշխարհի դիալեկտիկան, այնքան նա խոր և բազմակողմանիորեն է հասկանում այդ աշխարհի շարժումն ու զարգացումը։ Բնության շարժման ու զարգացման ամենաընդհանուր օրենքների իմացությունը բնագիտության առանձին ճյուղերին հնարավորություն է տալիս խոր կերպով հասկանալու իրենց կոնկրետ բնագավառների օրենքներն ու օրինաչափությունները։

Մատերիալիստական դիալեկտիկան մարդկային մտքի մեծագույն նվաճումն է, նա խոր և բազմակողմանիորեն է արտացոլում զարգացման պրոցեսը։ Բնության զարգացման և փոփոխման բոլոր պրոբլեմների լուծման համար մատերիալիստական դիալեկտիկան հանդիսանում է իրոք անփոխարինելի և հզոր միջոց։ Այստեղից պարզ է դառնում, որ բնության զարգացման վերաբերյալ մատերիալիստական դիալեկտիկայի խոր իմացությունն ու մտածված կիրառումը կարող է խոշոր ծառայություն մատուցել բնագիտության զարգացմանը, ճիշտ ուղիներ նշել բնագիտության չլուծված պրոբլեմների լուծման համար։

Էնգելսը իր ժամանակին մատերիալիստական դիալեկտիկան մեծագույն վարպետությամբ է օգտագործել՝ բնագիտության առաջ կանգնած մի շարք կարևոր պրոբլեմներ լուծելու համար։ Նրա օգնությամբ Էնգելսին հաջողվեց



այդ պրոբլեմների լուծման համար նշել ճիշտ և գիտական ուղիներ։ Մինչդեռ մասնագետ բնագետները դիալեկտիկական պատրաստություն չունենալու պատճառով չէին կարողանում ճիշտ կողմնորոշվել այդ հարցերի լուծման մեջ։

Կանգ առնենք այդ պրոբլեմներից միայն մեկի՝ ատոմի բաժանելիության հարցի վրա։

Հայտնի է, որ մատերիայի կառուցվածքի վերաբերյալ եղած ատոմիստական տեսությունն առաջ է քաշվել մեր թվականությունից դեռ շատ առաջ։
Բայց ատոմա-մոլեկուլային տեսությունը գիտության մեջ վերջնականապես
ընդունվեց միայն 19-րդ դարի երկրորդ կեսին՝ սկզբում քիմիայի, ապա ֆի-
զիկայի և մյուս գիտությունների կողմից։ Ատոմա-մոլեկուլային տեսության
մեջ տարբերվում էին մատերիայի երկու տեսակի դիսկրետ մասնիկներ՝
ատոմներ և մոլեկուլներ։ Համաձայն այն ժամանակվա պատկերացման՝ մո-
լեկուլները բաղկացած էին ատոմներից, իսկ ատոմները մատերիայի վերջին,
պարզ, անբաժանելի մասնիկներն էին։ Այս ո՛չ ճիշտ, մետաֆիզիկական տե-
սակետը անցյալում տիրապետող էր բնագետների շրջանում։

Գիտության մեջ ատոմա-մոլեկուլային տեսության ընդունումը բարձր
գնահատեցին Մարքսը և Էնգելսը՝ նրանում տեսնելով դիալեկտիկական մա-
տերիալիզմի դրույթների նոր և փայլուն հաստատումը։ Ի տարբերություն մե-
տաֆիզիկական մտածելակերպ ունեցող բնագետների՝ Էնգելսը ատոմը չէր
համարում մատերիայի բաժանելիության վերջին սահման, ինչ-որ պարզ ան-
բաժանելի բան։ Ընդհակառակն, դիալեկտիկական մատերիալիզմի դիրքերից
ելնելով՝ ատոմա-մոլեկուլային տեսության նվաճումների ընդհանրացման հի-
ման վրա Էնգելսը եկավ այն համոզման, որ «Մոլեկուլը, որպես մատերիայի
փոքրագույն մասնիկ, որն ընդունակ է ինքնուրույն գոյության, միանգամայն
ռացիոնալ կատեգորիա է... դա բաժանումների անսահման շարքում մի
«հանգույց» է, հանգույց, որը չի փակում այդ շարքը, այլ սահմանում է որա-
կական տարբերություն։ Ատոմը, որ առաջ պատկերացվում էր որպես բաժա-
նելիության սահման, այժմ միայն հարաբերություն է...» (К. Маркс и
Ф. Энгельс. Избр. письма, стр. 187, 1948 г.)։

Գիտության զարգացման հետագա ընթացքը փայլուն կերպով հաստատեց
Էնգելսի այս մտքերը։ Էնգելսի մահից հետո բնագիտության հսկայական
նվաճումները ոչ միայն ապացուցեցին, որ ատոմը մատերիայի բաժանելիու-
թյան վերջին սահմանը չէ, այլև հնարավորություն տվեցին պարզելու ատոմի
բարդ կառուցվածքը։ Գիտության նվաճումները նոր հաստատում բերեցին
մատերիալիստական դիալեկտիկային, նրանք ցույց տվին, որ ատոմը ոչ թե
մատերիայի բաժանելիության վերջին սահմանն է, այլ նրա բաժանման ան-
սահման հանգույցներից մեկը, որ անսպառ են ոչ միայն բնությունը, մա-
տերիան ամբողջությամբ վերցրած, այլև նրանց ամեն մի մասնիկ, այդ
թվում և ատոմը։

Ատոմի կառուցվածքի բացահայտումը նոր հաստատում բերեց պարզի և
բարդի, վերջավորի և անվերջի, բաժանելիի և անբաժանելիի դիալեկտիկային։
Ատոմը որպես ամբողջական օբյեկտ մնում է քիմիական ռեակցիաների մեջ,
առաջացնում է պարզ և բարդ մոլեկուլներ։ Նա այդ մոլեկուլների համեմա-
տությամբ պարզ է։ Բայց ատոմն իր հերթին բաղկացած է պրոտոններից,
նեյտրոններից, էլեկտրոններից և որոշակի պայմաններում կարող է վերած-

վել իր բաղադրիչ մասերին, դրա համար էլ նա, համեմատած այդ մասնիկների հետ, բարդ է։

Որպես մատերիայի բաժանման անսահման հանգուցագծի հանգույցներից մեկը՝ ատոմը վերջավոր է, բայց քանի որ այդ վերջավոր ատոմների անվերջ մեծ գումարից գոյանում է անսահման տիեզերքը, ապա բնական է, որ այդ վերջավոր ատոմը մտնում է տիեզերքի անվերջության մեջ՝ կազմելով նրա կողմերից մեկը։ Այդ իմաստով ատոմը ոչ միայն վերջավոր է, այլև անվերջ։ Ատոմը որոշ պայմաններում, հատկապես քիմիական պրոցեսների ժամանակ հանդես է գալիս որպես որոշակի որակ։ Այդ դեպքում իմաստ ունի և կարելի է խոսել ատոմի անբաժանելիության մասին։ Սակայն այդ պայմանների բացակայության դեպքում նա ենթարկվում է բաժանման, դրա համար էլ անհրաժեշտ է խոսել ատոմի բաժանելիության մասին։ Հետևապես, ատոմի, որպես նյութական օբյեկտի էության ճիշտ հասկանալու համար, հարկավոր է նրա ուսումնասիրության նկատմամբ ցուցաբերել դիալեկտիկական մոտեցում, որովհետև ատոմի հետ կատարվող բոլոր փոփոխություններն ունեն դիալեկտիկական բնույթ։

Եթե մինչև Մենդելեևի պարբերական սիստեմի ստեղծումը քիմիական էլեմենտների նկատմամբ ցուցաբերվող մետաֆիզիկական մոտեցումը հնարավորություն չէր տալիս այդ էլեմենտները դիտել իրենց փոխադարձ կապակցության, փոփոխման և զարգացման տեսակետից, ապա Մենդելեևի ստեղծած պարբերական սիստեմը ոչ միայն ցույց տվեց քիմիական էլեմենտների միջև եղած օրգանական կապը, այլև հնարավորություն տվեց բացահայտելու այդ սիստեմի հիմքում ընկած պարբերականության օրենքը։ Պարբերականության օրենքը բացահայտեց քիմիական էլեմենտների մեջ եղած ընդհանուրը և կապ հաստատեց եզակիի և ընդհանուրի միջև։ Պարզվեց, որ էլեմենտների ֆիզիկո-քիմիական հատկությունները նրանց ատոմական կշիռների պարբերական ֆունկցիան են, այսինքն, ատոմական կշիռների քանակական փոփոխությունն առաջ է բերում նրանց ֆիզիկո-քիմիական հատկությունների պարբերական, որակական փոփոխություն։

Պարբերականության օրենքը ցույց տվեց, որ քանակական փոփոխություններից որակական փոփոխություններին անցնելու օրենքն իր ուժը պահպանում է նաև քիմիական էլեմենտների բնագավառում։ Ինքը, պարբերականության օրենքը, քանակական փոփոխություններից որակական փոփոխություններին անցնելու դիալեկտիկայի օրենքի դրսևորման ձևն է քիմիական էլեմենտների բնագավառում։ Պարբերական սիստեմը և նրա հիմքում ընկած պարբերականության օրենքը, մինչ այդ մեկը մյուսից անջատ դիտվող քիմիական էլեմենտները վերածեցին զարգացման մեկ միասնական շղթայի։ Պարզվեց, որ այդ բոլոր էլեմենտները ոչ միայն կապված են միմյանց հետ, այլև որոշակի պայմաններում կարող են վերածվել մեկը մյուսի։ Պարբերականության օրենքն ուղղակի հաստատում էր, որ քիմիական էլեմենտների ատոմական կշիռների քանակական փոփոխման ճանապարհով կարելի է իրականացնել անցումը մեկ էլեմենտից մյուսին։

Հետագայում, գիտության զարգացման շնորհիվ, հաստատվեց քիմիական էլեմենտների փոփոխման և զարգացման իդեան։ Այդ իդեային փայլուն հաստատում բերեց սկզբում բնական ռադիոակտիվության, իսկ հետագայում արհեստական ռադիոակտիվության հայտնագործումը։ Քիմիական էլեմենտ-



ների ռադիոակտիվ փոխարկումների ուսումնասիրությունը ցույց տվեց, որ մեկ քիմիական էլեմենտ կարող է առաջանալ մյուսից։ Այդ տեսակետը հաստատվեց ռադիոակտիվ շարքերի հայտնագործմամբ։ Ռադիոակտիվ շարքերը հանդիսացան քանակական փոփոխություններից որակական փոփոխությունների անցման յուրատեսակ շղթաներ, որտեղ էլեմենտների միջուկի դրական լիցքերի քանակական փոփոխությունը հանգեցնում է այդ էլեմենտների արմատական, որակական փոփոխության։

Այսպիսով, գիտության ձեռք բերած նվաճումները ոչ միայն հնարավոր դարձրին քիմիական էլեմենտների փոփոխման և զարգացման դիալեկտիկական բնույթի հիմնավորումը, այլև էլեմենտների զարգացման էության բացահայտումը, որը հնարավորություն տվեց ըմբռնել միջուկային պրոցեսները և այդ պրոցեսների ժամանակ առաջացած էներգետիկ էֆեկտները ծառայեցնել մարդու պրակտիկ կարիքներին։ Այդ ճանապարհով բացահայտվեց ատոմային էներգիան, որը մարդկային մտքի մեծագույն նվաճումներից մեկն է։

Ներատոմային և հատկապես միջուկային պրոցեսների ուսումնասիրությունը ցույց տվեց, որ ինչպես ամբողջ ատոմը, այնպես էլ նրա միջուկը, իրենցից ներկայացնում են հակադիր կողմերի, տենդենցների միասնություն, որ նրանց փոփոխությունների պատճառը հենց այդ հակադիր տենդենցների պայքարն է։ Այդ բոլորը նոր հաստատում բերեց մատերիալիստական դիալեկտիկայի այն նշանավոր դրույթին, որ իրերի և երևույթների փոփոխման և զարգացման աղբյուրը նրանց ինքնաշարժումն է։

Միկրոաշխարհի երևույթների ըմբռնումը շատ դեպքերում ուղղակի անհնար է դառնում առանց դիալեկտիկական մոտեցման։

Այսպես, օրինակ, ֆիզիկայում երկար ժամանակ պայքար է ընթացել լույսի շուրջը եղած երկու հակադիր տեսակետների միջև։ Այդ տեսակետներից մեկը գտնում էր, որ լույսը հանդիսանում է կորպուսկուլների, կամ մասնիկների հոսանք, դրա համար էլ լույսի վերաբերյալ եղած այդ թեորիան կոչվում է կորպուսկուլյար, իսկ մյուս տեսակետը լույսին վերագրում էր բացառապես ալիքային հատկություն։ Լույսի վերաբերյալ եղած այս երկու տեսակետների կողմնակիցները մատերիայի ալիքային և մասնիկային բնույթը հակադրում էին մեկը մյուսին։ Նրանց կարծիքով մատերիայի ալիքային հատկությունը բացառում է մասնիկայինը և ընդհակառակը։ Լույսի ունեցած այս երկու անբաժանելի հատկությունների անջատումը մեկը մյուսից և իրար հակադրելը հնարավորություն չէր տալիս հասկանալ լույսի բնույթը։

Միայն 20-րդ դարի սկզբին լույսի կվանտային թեորիան ապացուցեց, որ լույսն ունի երկակի բնույթ, այսինքն՝ լույսային ֆոտոնները միաժամանակ ունեն թե՛ մասնիկային և թե՛ ալիքային հատկություն։ Պարզվեց, որ լույսի մասնիկները՝ ֆոտոնները իրենցից ներկայացնում են յուրատեսակ հակադրությունների միասնություն, նրանց միաժամանակ բնորոշ են և՛ ալիքային, և՛ մասնիկային հատկությունները։ Ալիքային և մասնիկային հատկությունների անխզելի միասնությունը բխում է ֆոտոնների բուն էությունից, այդ միասնությունը հնարավորություն է տալիս ոչ միայն խոր կերպով հասկանալ լույսային երևույթները, այլև ըմբռնել լույսի բնույթը։ Կնշանակի, լույսային երևույթների գիտական ըմբռնման կարևոր պայմաններից մեկը հանդիսանում է դիալեկտիկական մոտեցումը։

Մարդկային միտքը 20-րդ դարում հսկայական քայլ է կատարել բնու-

թյան, հատկապես միկրոաշխարհի ըմբռնման բնագավառում: Այդ ասպարեզում ձեռք բերած նվաճումներն է՛լ ավելի որոշակիորեն ցույց տվին բնության զարգացման դիալեկտիկական բնույթը: Պարզվեց, որ միկրոաշխարհի զարգացման օրենքները որակապես տարբերվում են մինչ այդ մարդուն ծանոթ միկրոաշխարհի զարգացման օրենքներից: Մատերիալիստական դիալեկտիկայի տեսակետից դա հասկանալի է և բնական, որովհետև անցումը մակրոաշխարհից միկրոաշխարհին և ընդհակառակը, կատարվում է ոչ թե աստիճանաբար, այլ թռիչքաձև: Այդ պատճառով էլ մենք գործ ունենք երկու աշխարհների հետ, որոնք ոչ միայն կապված են մեկը մյուսի հետ, այլև որակապես տարբերվում են իրարից: Նրանց որակական տարբերությունն իր արտահայտությունն է գտնում այդ աշխարհներն արտացոլող օրենքների տարբերությունների մեջ: Մինչդեռ դիալեկտիկական մտածելակերպ չունեցող բուրժուական բնագետները մակրո և միկրո աշխարհների տարբերությունը համարում են զուտ քանակական, դրա համար էլ փորձում են մակրոաշխարհի զարգացման օրենքները մեխանիկորեն փոխադրել միկրոաշխարհի վրա: Քանի որ նրանց որակական տարբերությունների պատճառով այդպիսի փոխադրում հնարավոր չէ, ապա դրանից բուրժուական բնագետները կատարում են ո՛չ ճիշտ իմացաբանական եզրակացություններ՝ հօգուտ իդեալիզմի և ագնոստիցիզմի... 

Մեր դարի գիտությունը ոչ միայն ընդհանուր գծերով է պարզել ատոմի կառուցվածքը, այլև հայտաբերել է բավական թվով «էլեմենտար» մասնիկներ: Այդ մասնիկների թվին են պատկանում ֆոտոնները, էլեկտրոնները, պոզիտրոնները, պրոտոնները, անտիպրոտոնները, նեյտրոնները, տարբեր մասսաների դրական, բացասական և չեզոք մեզոտրոնները: Ենթադրվում է, որ գոյություն ունեն դեռևս չհայտնագործված էլեմենտար մասնիկներ՝ գրավիտոններ և նեյտրինո:

Գիտական ուսումնասիրությունները հնարավորություն են տվել պարզելու այդ մասնիկների միջև եղած փոխադարձ կապը: Ապացուցվել է, որ միկրոաշխարհի բոլոր օբյեկտները, այդ թվում և էլեմենտար մասնիկներն ունեն երկակի՝ ալիքային և մասնիկային բնույթ, դրա համար էլ միկրոաշխարհի օրենքներն իրենց մեջ արտացոլում են միկրոօբյեկտների այդ էական հատկանիշը: Կնշանակի, բոլոր միկրոօբյեկտներն իրենցից ներկայացնում են հակադրությունների միասնություն:

«Էլեմենտար» մասնիկների ուսումնասիրությունը ցույց է տալիս, որ էլեկտրոնը և պոզիտրոնը ընդհարվելով՝ որոշ պայմաններում վեր են ածվում լուսային ֆոտոնների, իսկ մեծ էներգիա ունեցող լուսային ֆոտոններն ատոմի էլեկտրամագնիսական դաշտում վերածվում են էլեկտրոնի և պոզիտրոնի: Էլեկտրոնները, պոզիտրոնները և լուսային ֆոտոններն իրենց հերթին կարող են ծագել դրական, բացասական և չեզոք մեզոտրոնների քայքայման հետևանքով: Ավելի թեթև մեզոտրոնները կարող են առաջանալ ոչ միայն ատոմի միջուկում պրոտոնների և նեյտրոնների փոխադարձ վերածման պրոցեսում, այլև ավելի ծանր մեզոնների քայքայման հետևանքով և այլն: Հետևապես, «էլեմենտար» մասնիկների մասին այսօրվա մեր ունեցած տեղեկությունները որոշակիորեն ցույց են տալիս ոչ միայն այդ մասնիկների միջև եղած կապը, այլև այդ մասնիկների փոխադարձ վերածման պրոցեսների խոր դիալեկտիկական բնույթը:



Դիալեկտիկորեն են կատարվում ոչ միայն «էլեմենտար» մասնիկների փոխադարձ վերածման պրոցեսները, այլև անցումը էլեմենտար մասնիկներից դեպի ատոմի միջուկը: Ատոմի միջուկը կազմվում է պրոտոններից և նեյտրոններից, բայց նա որակապես տարբերվում է իր բաղադրիչ մասերից: Հետևապես, ատոմի միջուկը ոչ թե պրոտոնների և նեյտրոնների մեխանիկական գումար է, այլ բոլորովին նոր որակ, համեմատած իր բաղադրիչ մասերի հետ:

Այսպիսով, պարզ է դառնում, որ մատերիայի շարժման, փոփոխման և զարգացման պրոցեսը դիալեկտիկական պրոցես է, քանակական փոփոխություններից արմատական որակական փոփոխություններին անցնելու պրոցես. այդ պրոցեսի բովանդակությունը մատերիայի և նրա կոնկրետ ձևերին հատուկ հակադրությունների պայքարն է:

***

Թեև արդեն մոտավորապես մեկ դար է, ինչ մարքսիստական փիլիսոփայությունը զարգացման մասին ստեղծել է գիտական ուսմունք՝ մատերիալիստական դիալեկտիկան, սակայն այդ ուսմունքը բնագիտության համար հետազոտության հզոր զենք է դարձել միայն սոցիալիզմի երկրներում, որտեղ տիրապետում է մարքս-լենինյան աշխարհայացքը: Մինչդեռ կապիտալիստական երկրներում այդ զենքից օգտվում են միայն առանձին առաջավոր մտածողներ, իսկ բնագետների ճնշող մեծամասնությունը գտնվում է բուրժուական փիլիսոփայության ազդեցության տակ: Բուրժուական փիլիսոփայությունը ոչ միայն քարոզում է իդեալիզմ, այլև աղավաղում է զարգացման իդեան, գիտության նվաճումները օգտագործում է իդեալիզմն ու տերտերականությունը հիմնավորելու համար, որովհետև այդպես է պահանջում տիրող դասակարգի շահը:

Համաձայն մատերիալիստական դիալեկտիկայի բնությունը գտնվում է փոփոխման և զարգացման հավիտենական պրոցեսում, այդ փոփոխումն ու զարգացումը կատարվում են վերընթաց գծով՝ պարզից դեպի բարդը, ստորինից դեպի բարձրագույնը:

Գիտության զարգացման տվյալ էտապում մարդկությունը կարողացել է ըմբռնել մատերիայի զարգացման անսահման շղթայի միայն մի հատվածը: Այդ հատվածի ուսումնասիրությունը հնարավորություն է տալիս բացահայտել մատերիայի փոփոխման ու զարգացման իրական բնույթը: Գիտության զարգացումը հնարավորություն է տալիս բացահայտել ոչ միայն մատերիայի զարգացման տարբեր աստիճանների միջև եղած կապը, այլև մատերիայի զարգացման վերընթաց բնույթը: Այժմյան գիտության տվյալների հիման վրա մատերիայի զարգացման պատկերն ընդհանուր ձևով կարելի է ներկայացնել հետևյալ կերպ՝ «էլեմենտար» մասնիկներից գոյանում է ատոմի միջուկը, ատոմի միջուկից և էլեկտրոններից՝ չեզոք ատոմը, չեզոք ատոմներից՝ պարզ մոլեկուլներ, պարզ մոլեկուլներից պոլիմերիզացիայի և կոնդենսացիայի ճանապարհով առաջանում են ավելի բարդ մոլեկուլներ, բարդ մոլեկուլներից՝ անկառուցվածք սպիտակուցը, որը դիֆերենցման շնորհիվ վերածվում է միաբջիջ օրգանիզմների, որոնք հետագայում բաժանվելով սկիզբ են դնում բուսական և կենդանական աշխարհին: Կենդանիների և բույսերի պարզ տեսակներն աստիճանաբար զարգանալով վեր են ածվում ավելի բարդ տեսակների,

ընդհուպ մինչև ժամանակակից ամենաբարդ բույսերը և ամենաբարդ կենդանին՝ մարդը։

Բնական է, որ շատ ընդհանուր ձևով ներկայացված զարգացման այս պատկերը կարիք ունի երկար հետազոտությունների, որովհետև մեր օրերի գիտությունը դեռ չի կարողացել ապացուցել զարգացման այդ միասնական շղթայի բոլոր օղակների անցումը մեկը մյուսին։ Այդ բոլոր անցումների գիտական ապացուցման համար դեռ շատ երկար ժամանակ կպահանջվի, որի ընթացքում կարող են բացահայտվել նոր միջանկյալ օղակներ։ Բայց այդ հանգամանքը չի կարող ոչ մի կերպ հերքել արդեն հաստատված և գիտականորեն հիմնավորված այն ուսմունքը, որ մատերիայի զարգացումն ու փոփոխությունը կատարվում է վերընթաց գծով, որ անցումը մի որակից մյուսը կատարվում է թռիչքաձև, քանակական փոփոխություններից որակականին անցնելու ճանապարհով, որ առարկաների և երևույթների շարժման, ինքնաշարժման աղբյուրը հանդիսանում են նրանց հատուկ ներքին հակասությունները և այլն։

Մատերիալիստական դիալեկտիկայի ստեղծման օրից մինչև այսօր բնագիտության զարգացման ամեն մի առաջընթաց քայլը նոր հաստատում է բերել զարգացման այդ խոր և բազմակողմանի ուսմունքին։ Այդ ուսմունքն իր հերթին խոշոր ազդեցություն է ունեցել բնագիտության զարգացման վրա։ Զարգացման վերաբերյալ եղած դիալեկտիկական պատկերացումը հնարավորություն է տվել խոր կերպով թափանցել միկրոաշխարհի իմացության մեջ, որտեղ է՛լ ավելի որոշակիորեն է դրսևորվում մատերիայի զարգացման դիալեկտիկական բնույթը։

Մարքսիստական փիլիսոփայությունը որպես ուղեցույց աստղ, լուսավորում է բնագիտության զարգացման ուղին։ Զարգացման վերաբերյալ մարքս-լենինյան իդեան ժամանակակից բնագիտության զարգացման միակ ճիշտ իդեան է։

Մարքսիստական փիլիսոփայության անբաժան տիրապետությունը բնագիտության բոլոր ճյուղերում, զարգացման դիալեկտիկայի գաղափարի յուրացումը բնագիտության կողմից, որպես միակ ճիշտ և գիտական գաղափարի, հանդիսանում է բնագիտության արագ զարգացման կարևոր պայմաններից մեկը։

Մենք փորձել ենք զարգացման իդեան ժամանակակից բնագիտության մեջ ցույց տալ ֆիզիկայի ու քիմիայի փաստական նվաճումների հիման վրա։ Հոդվածի ծավալի սահմանափակ լինելու պատճառով հնարավոր չէ այդ նպատակի համար օգտագործել բնագիտության մյուս ճյուղերի նվաճումները։

Հոդվածում բերված փաստական նյութն էլ բավական է համոզվելու, որ ժամանակակից բնագիտության համար զարգացման միակ գիտական մեթոդը մատերիալիստական դիալեկտիկան է։

---



# ՌԵՎՈԼՅՈՒՑԻԱՅԻ ԼԵԳԵՆԴԱՐ ՄԱՐՏԻԿԸ

1957 թվականի մայիսին լրացավ հայտնի ռևոլյուցիոներ, հավատարիմ լենինյան, լեգենդար հերոս ՍԻՄՈՆ ՏԵՐ-ՊԵՏՐՈՍՅԱՆԻ (ԿԱՄՈՅԻ) ծննդյան 75 ամյակը։

Այդ կապակցությամբ տպագրում ենք հին ռևոլյուցիոներ ԱՍՏՈՒՐ ԿԱԽՈՅԱՆԻ (ԲԱՆՎՈՐ ԽԵՉՈ) հիշողություններից մի դրվագ՝ նվիրված Կամոյի նախառևոլյուցիոն շրջանի գործունեությանը։

Թիֆլիսի Միքայելյան հիվանդանոցին կից գտնվող հոգեկան հիվանդների բաժանմունքից փախչելով՝ Կամոն անցավ արտասահման, ուր մի տարի մնալուց հետո նորից վերադարձավ Թիֆլիս։

Ես նրան հանդիպեցի մի գինետան մեջ։ Մեր հին ընկեր Աբրահամ Գրիգորյանը գալով ինձ մոտ հայտնեց, թե Կամոն ուզում է ինձ տեսնել։ Աբրահամի ուղեկցությամբ ես գնացի Երուսալիմսկայա փողոցում գտնվող Արչիլի գինետունը, որին կից խցերից մեկում նստած էր Կամոն մի հին ընկերոջ հետ։ Մեր ներս մտնելուն պես նա վեր կացավ և իր սովորական ձևով համբուրվեց։ Նրա դեմքի վրա ինչ-որ բշտիկներ կային, որոնցից առաջացած ջուրը նա երբեմն թաշկինակով, երբեմն էլ ձեռքին բռնած բամբակի կտորներով ցամաքեցնում էր։ Նկատելով այդ, ես հարցրի.

— Այդ ի՞նչ է պատահել, Կամո։

— Վառել եմ, պատասխանեց նա։

— Բաղնիսի ցեխո՞վ,— հարցրի ես։ Նա ծիծաղեց և հարցրեց.

— Հիշո՞ւմ ես, Բաթումում բանտից փախչելուց հետո ցեխով երեսս վառեցիք։

— Ինչպես չեմ հիշում, դրա համար էլ հարցնում եմ,— ասացի ես։

— Ոչ, սա ցեխով չեմ վառել, այլ դեղերով։ Եղբայր, երեսս էլ է ինձանից երես դարձրել, այլևս դեղեր չի ընդունում,— ասաց նա և շարունակեց պատմել, թե ինչպես կերպարանափոխվելու համար ստիպված է լինում զանազան դեղեր ու ներկեր գործածել, որոնց շնորհիվ դեմքի կաշին բարակել էր…

Բաթումի ցեխի մասին խոսելով՝ նա ինձ հիշեցրեց այդ տրագիկոմեդիան։

1905 թ. գարնանը Կամոն Բաթումի բանտից մի նամակ էր գրել ինձ, որ ես տեղական կոմիտեին հայտնեի նրա բանտից փախչելու մտադրության մասին։ Բայց Բաթումի կոմիտեն արգելել էր, պատճառաբանելով, թե փախ-

չելու ժամանակ կարող են սպանել: Ես այդպես էլ պատասխանեցի Կամոյին: Նա կոմիտեին մի լավ հայհոյելուց հետո ինձ խնդրել էր, որ բանտին մոտ գտնվող թաղամասերում մի բնակարան ճարեմ, որպեսզի փախչելուց հետո նա հնարավորություն ունենա թաքնվելու: Այդպիսի բնակարան ես գտել էի և Կամոյին տվել «Նուրիա» բաղարում քաղցրեղենի խանութատեր Խաչատուր Մակեդոնյանի հասցեն: Նա առանց սպասելու որոշյալ ժամին, հարմար մոմենտից օգտվել ու փախել էր: Իմանալով նրա փախուստը, ես գնացի նրա մոտ: Նա առաջարկեց գտնել մի ածելի, բեխերն ու երեսը սափրելու համար:

Զատկի կիրակի օրն էր, խանութները փակ էին, ոչ մի տեղ սափրիչ չգտանք, ստիպված էինք Թուրքերի բաղնիքից ցեխ բերել և քսել երեսին ու բեղերին, որից հետո նա սկսեց պատմել իր փախուստի մասին: Մենք այնքան տարվեցինք նրա հետաքրքիր պատմությամբ, որ մոռացանք դեմքին քսած ցեխը: Կես ժամից հետո նա դեմքին քոր զգալով, սկսեց մատով քորել, բայց ի՜նչ. եղունգը մտավ կաշվի մեջ, սաստիկ ցավ զգաց. մենք նոր ուշքի եկանք և տեսանք, որ դեմքը այրվել է: Երբ գլխին ջուր ածեցինք, ցեխի հետ պոկվեց դեմքի կաշին, այնպես որ սարսափելի ցավից Կամոն սկսեց ուղղակի արտասվել:

Այդ դեպքի մասին էր հիշեցնում Կամոն ինձ, երբ հանդիպեցի Արշիլի գինետանը:

Կամոյին մոտ ընկերներս նրան հանդիպելու ժամանակ սիրում էինք հարցեր տալ, իսկ Կամոն էլ սովորություն ուներ իր «ֆանտազիաների» մասին պատմել, բայց իր սովորության հակառակ՝ նա այդ օրը չուզեց ժամանակ կորցնել: Ինձ պատահելու հենց առաջին րոպեներից սկսեց խոսել իր անելիքների մասին... «Պետք է մի թեթև գործ անել,— ասաց նա,— իսկ հետո՝ մեծը»:

— Ինչպիսի՞ գործ է և որտե՞ղ,— հարցրի ես:

— Մի թեթև «էքս» այստեղ, քաղաքում:

— Մարդիկ ունե՞ս,— հարցրի ես:

— Մարդիկ գտնելը հեշտ է, բայց փող չունեմ, հարկավոր է մի քիչ փող գտնել: Մեր ընկերները քաղցած կոտորվում են, նրանցից հույս չկա:

— Ի՞նչ բաների համար է հարկավոր փողը,— հարցրի ես:

— Հարկավոր է դինամիտ ձեռք բերել, ռումբերի համար նյութեր գնել և մասնիկներ պատրաստել տալ: Բացի այդ, հինգ հոգու համար մի շաբաթվա սնունդ է հարկավոր...

— Առնվազն հարկավոր է մոտ երկու հարյուր ռուբլի ունենալ, որը երբեք չենք կարող ձեռք բերել մեր ընկերների շրջանում:

— Դու ինձ տուր մի քանի ընկերների հասցեն, ես անձամբ կգնամ, գուցե մի բան դուրս գա,— ասաց նա:

Կամոն գործ կազմակերպելու մեջ արտիստ էր: Կազմակերպչական գործերում առաջին տեղն էր բռնում փողը, եթե այդ ճարվեց, ապա մնացածը հեշտ էր: Նա ուզում էր անձամբ դիմել ընկերներին. հույս ուներ, որ պիտի կարողանա մի թեթև գումար ճարել: Ես նրան տվի մի քանի ընկերների հասցեները:

Թիֆլիսում Կամոն չկարողացավ փող գտնել: Նա ճանապարհ ընկավ դեպի Բաքու: Մի ամսից հետո նա նորից վերադարձավ առանց փողի:

Հանդիպելով ինձ, հայտնեց, որ ինքը մտադիր է դիմել հայտնի վաճառական Աֆրիկյանին՝ փոխարինաբար 500—1000 ռուբլի խնդրելու և միանգամայն վստահ է, որ կստանա:



Ես փորձեցի նրան նախազգուշացնել, թե Աֆրիկյանը կարող է մատնել, բայց համառ էր, ինձ չլսեց: Նա ներկայանում է Աֆրիկյանին, հայտնում է իր ով լինելը և խնդրում փոխարինաբար այդ գումարը:

Աֆրիկյանը Կամոյին ընդունում է շատ սիրալիր, բայց մերժում է, ցավ հայտնելով, որ ինքը մեծ կարծիք ունի Կամոյի մասին, սակայն որովհետև անձամբ չի ճանաչում նրան, դրա համար էլ կասկածում է, թե միգուցե ուրիշ մեկն ուզում է շահագործել Կամոյի անունը, և փող ստանալու համար դիմել է իրեն:

Կամոն փորձում է համոզել, որ ինքը հենց Կամոն է և ապացուցելու համար խոստանում է քաղաքային վարչության անդամ Արղությանից վկայական տանել:

Աֆրիկյանն ընդունում է այդ առաջարկը: Բայց Արղությանը մերժում է Կամոյին այդպիսի վկայական տալ, պատճառաբանելով, թե ինքը չի ուզում, որ Աֆրիկյանի պես վաճառական մարդը գիտենա իր ծանոթությունը Կամոյի հետ:

Կամոն կոտրված վերադառնում է Աֆրիկյանի մոտ և հայտնում, թե Արղությանը չի համաձայնվում այդպիսի վկայական տալ:

Աֆրիկյանը «ցավ է հայտնում», որ վստահությունն «ապահովված» չէ, բայց խոստանում է, համենայն դեպս մի փոքրիկ գումար տալ, որպես կարիքավոր մարդու, առանց ետ ստանալու: Սակայն այդ րոպեին մոտը փող չունենալու պատճառով խոստանում է տալ հաջորդ օրը:

Հաջորդ օրը Կամոն Աֆրիկյանի տան մոտ նկատում է կասկածելի մարդիկ, որոնք սկսում են նրան հետևել, բայց նա անհետանում է նրանց աչքից: Մենք եկանք այն եզրակացության, որ Աֆրիկյանը Կամոյին աֆերիստի տեղ էր դրել և դիմել ոստիկանությանը՝ ձերբակալել տալու համար, կամ ավելի ճիշտ՝ ուզում էր նրանից ազատվել:

Բացի այդ, Կամոն մի անգամ տրամվայի մեջ նկատում է բանտապետ Ռիմկևիչին և տրամվայից իջնելով անհետանում է: Դրանից հետո ոստիկանության մեջ նկատվում է արտասովոր շարժում. երևում է, որ մարդու են ման գալիս:

Կամոյի Թիֆլիսում մնալն անհնարին էր դառնում, նրա հետքը կորցնելու համար ընկերները նրան առաջարկում են առժամանակ հեռանալ և միակ ապահով տեղը գտնում են Երևանը:

Աբրահամ Գրիգորյանն ուղարկվում է Թիֆլիսի կայարանից տոմս վերցնելու, իսկ ես Կամոյին մեր տնից վերցնում և ճանապարհ ենք ընկնում դեպի Նավթլուղ: Կայարանից հեռու Կամոն սպասում է, իսկ ես գնում եմ կայարանը հետազոտելու: Այնտեղ չեն նկատվում ո՛չ ոստիկաններ և ո՛չ էլ լրտեսներ: Նորից վերադառնում եմ Կամոյի մոտ և հայտնում դրության մասին: Այդ դրության վրա չէր կարելի վստահանալ, ուստի Կամոն առաջարկեց մոտենալ գծին՝ կայարանից վերև: Աբրահամին կարգադրված էր, որ գնացքը Նավթլուղում դեռ կանգ չառած՝ վագոնից իջնի: Գիշերվա ժամը մեկն էր. հնչեց կայարանին մոտեցող գնացքի սուլոցը: Այդ վայրկյանին կայարանը շրջապատվեց ոստիկաններով: Կամոն նկատեց Աբրահամին, իսկույն թռավ նրա մոտ և տոմսն ստանալով մտավ վագոն: Աբրահամն իջավ և եկավ ինձ մոտ: Այդ

գործողությունը կատարվեց այնքան արագ, որ ոչ ոք չնկատեց։ Ես և Աբրահամը մտանք բուֆետ և պահանջեցինք մեզ ուտելու բան տալ, հետո էլ՝ գինի։ Գինու շիշը առաջներս դրած, քիչ էլ հարբած ձևանալով, սպասում էինք գնացքի շարժվելուն, որպեսզի տեսնենք Կամոյին վագոնից դուրս բերի՞ն, թե ոչ։ Գնացքը շարժվեց, ոստիկանները զատարկաձեռն վերադարձան, մեզ խեթխեթ նայելով ցրվեցին։ Մենք էլ մեր «ընթրիքը» վերջացնելուց հետո վերադարձանք տուն։

Կամոն ապահով հասել էր Երևան։ Բայց մի ամսից հետո նորից հայտնըվեց Թիֆլիսում։

Աբրահամի հասցեն հայտնի էր։ Կամոն սովորաբար դիմում էր նրան ու նրա միջոցով մեզ գտնում։ Մի օր Աբրահամը ինձ մոտ գալով հայտնեց, թե «գիժը» եկել է։

Կամոն բանտում գիժ էր ձևացել, որի պատճառով նրան տեղափոխել էին գժանոց։ Այնտեղից փախչելուց հետո մենք նրան գիժ էինք կոչում։ Աբրահամից իմանալով նրա գալը, ես բարկացա...

— Էդ ո՞ւր է եկել «գիժը»,— հարցրի ես։

— Ուզում է քեզ տեսնել,— հայտնեց Աբրահամը։

— Թող գա,— ասացի ես։

— Ոչ, վեր կաց գնանք, մեր տանն սպասում է,— ասաց նա։

Աբրահամի հետ գնացինք նրա մոտ։

Կամոն Աբրահամի տանը գրիմ էր պատրաստում։

— Հը, «գիժ», էլի եկա՞ր,— հարցրի ես։

— Եկա, հա, ուզում էիք ազատվե՞լ... շան որդիք, ուղարկեցիք կատորգա։

— Ի՞նչ կատորգա,— հարցրի ես։

— Բաս Երևանը կատորգա չի՞։ Ինչ պիտի անեի այնտեղ,— դժգոհությամբ ասաց Կամոն։

Ճիշտ որ, Կամոն անգործ մնալ չէր կարող, մանավանդ, երբ մտադրվում էր մի բանի ձեռնարկել, թեև նրա միտքը միշտ զբաղված էր որևէ գործով։

— Հիմա ի՞նչ ես անելու։ Մնալու ես այստե՞ղ, թե՞ գնալու ես ուրիշ տեղ,— հարցրի ես։

— Ո՞ւր պիտի գնամ։ Պետք է մի բան անել։ Այսպես մնալ անհնարին է։

— Փող ճարեցի՞ր,— հարցրի ես։

— Ոչ, պատասխանեց նա։

— Հապա ինչո՞վ ես գործ անելու։

— Առայժմ հարկավոր է մի քանի ֆունտ դինամիտ գտնել, իսկ մնացածը հեշտ է,— ասաց նա,— դու պետք է գնաս Ալավերդու հանքերը՝ դինամիտ բերելու,— ուլտիմատումի ձևով առաջարկեց նա ինձ։

Ես գիտեի, որ հրաժարվելու դեպքում չէի ազատվելու նրա ձեռքից։

— Ախպար, տո «գիժ», ես Ալավերդի չեմ կարող գնալ, այնտեղ ինձ ճանաչում են, իսկույն կձերբակալեն։

— Ես չգիտեմ, ինչ ուզում ես արա, ուզում ես դեմքդ շուռ տուր ծոծրակիցդ կպցրու, կերպարանափոխվիր և այնպես գնա... Երկու օր ժամանակ եմ տալիս։

Կամոն հակաճառել չէր սիրում, պատճառաբանությունները նրա համար ոչ մի արժեք չունեին, նրա խոսքը պիտի կատարվեր։

Նրա կարծիքով հեղափոխականն ամեն բանի ընդունակ պիտի լինի։ Ես



գիտեմ դեպք, երբ ճանապարհորդելու ժամանակ, գնացքի մեջ իր կուպեում նա շրջապատվել է բարձրաստիճան ռեակցիոն տարրերով՝ գեներալներով, ժանդարմական սպաներով, դատախազով և հեղափոխության այլ թշնամիներով, որոնց խոսակցությունը պտտվել է հեղափոխության և նրան ճնշելու շուրջը։ Կամոն իրեն ներկայացրել է կալվածատեր իշխան և այնպիսի ռեակցիոն կարծիքներ ու ցանկություններ է հայտնել, որ նրա շրջապատողները նսեմացել են նրա առաջ... Նույնիսկ խոսակցության նյութը եղել է հենց ինքը Կամոն։ Երբ նրանցից մեկն ու մեկը նրա հնարագիտությունն ու քաջագործությունները նկարագրելով սարսափ է ազդել մյուսների վրա, Կամոն հարձակվել է նրանց վրա, դատապարտել կառավարության պաշտոնյաներին, որոնք անշնորհք են արմատախիլ անելու թե՛ հեղափոխականներին և թե հենց իրեն՝ Կամոյի պես «մի լակոտի», որին ձերբակալում, նստեցնում են բանտը, հետո հնարավորություն տալիս փախչելու և շարունակելու իր «սրիկայությունները»։ Նա կարծիք է հայտնել, թե երկրի փրկությունը կախված է «իսկական ռուս մարդկանցից» և վերջիններս պիտի փոխարինեն բոլոր պաշտոնյաներին...

Ես համոզված եմ, որ եթե մեր գործիչներից մեկն ու մեկը նրա բերանից լսեր այդպիսի արտահայտություններ, ինչ գնով էլ լիներ, նրան կգընդակահարեր... Կամոն ընդունակ էր հետքը կորցնելու համար դիմելու այնպիսի միջոցների, որ մեզանից ոչ ոքի մտքովը չէր անցնի։

Ես ստիպված էի Կամոյի առաջարկն ընդունել։ Բայց փոխանակ Ալավերդի գնալու, գնացի Հաղպատ և տեղական ընկերներից մեկի միջոցով կանչեցի Մանուկ Խաչատրյանին, որը կոշկակարի մի փոքր արհեստանոց ուներ Ալավերդում։ Նրան պարտավորեցրի իր հաշվով քանի ֆունտ դինամիտ գնել և տանել քաղաք, խոստանալով մոտ ապագայում վճարել թե՛ դինամիտի գինը և թե մի որոշ գումար էլ իրեն նվեր։ Մանուկն ուրախությամբ հանձն առավ գնել, մանավանդ, որ խոստացա մի գումար էլ ավելի տալ։

Ես վերադարձա Թիֆլիս։ Մյուս օրն էլ եկավ Մանուկը, բերելով դինամիտը։

Կամոն որոշ բնակարան չուներ և մեզանից ոչ ոք չէր իմանում նրա տեղը։ Նրան գտնելու համար պետք էր դիմել Աբրահամին, որի մոտ օրական մի անգամ կամ ինքն էր անցնում, կամ մեկին ուղարկում էր որևէ բան ասելու և տեղեկություն իմանալու համար։ Ես Աբրահամին ասացի, որ նրան հայտնի իմ Ալավերդուց վերադառնալը։

Կամոն եկավ ինձ մոտ և պահանջեց մի ապահով տեղ գտնել մեկ շաբաթ ժամանակով։ Իմացա, որ նա ուզում է ռումբեր պատրաստել, բայց որովհետև այդպիսի տեղ քաղաքում անհնարին էր գտնել, ուստի առաջարկեցի Հաղպատ գյուղը։ Նա մերժեց, պատճառաբանելով, թե գնալ գալու և տեղափոխության ժամանակ կարող է վտանգվել։

Կամոն ձեռք չէր քաշելու մեզանից։ Թիֆլիսում ընկերներից շատերը նրան մոտ չէին թողնում, մանավանդ որ նրան առաջարկել էին մի որոշ ժամանակով հեռանալ քաղաքից, մինչև նրա հետքը կորցնեին ոստիկանները։ Մնացել էինք ես և Աբրահամը։ Ես ստիպված էի Կամոյի կամքը կատարել։

Հավլաբարի վերևքի վրա դեղատան պահեստ ունեցող Մարտիրոսյանին մոտ ծանոթ լինելով՝ դիմեցի նրան, և նա չմերժեց։ Կամոն իր լաբորատորիան հիմնեց խանութի տակը գտնվող ներքնահարկում, որի մուտքը խանութի ներսից էր։ Նա դրանով չբավականացավ. պահանջեց մի սենյակ ևս մի քանի

*օրով։ Ես դիմեցի Աշոտ Թումանյանին, իմանալով, որ նրանց ընտանիքը ամառանոցումն է, իսկ ինքն ապրում է մենակ։ Աշոտն ինքն էլ գնալու էր ամառանոց, դրա համար էլ համաձայնվեց այն պայմանով միայն, որ Կամոն այնտեղ ժողովներ չանի և հարևանների ուշադրությունը չգրավի։*

*Ա. Թումանյանի բնակարանը գտնվում էր Իսիդորովսկի փողոցում։ Ես Կամոյին տարա նրա մոտ։ Աշոտն ուրախությամբ ընդունեց նրան և հետո էլ կրկնեց այն, ինչ որ ասել էր ինձ։ Կամոն խոստացավ «ճշտությամբ կատարել իր ասածը»... Աշոտը մեզ տանը թողնելով ճանապարհ ընկավ ամառանոց՝ իր ընտանիքի մոտ։*

*Նրա գնալուց հետո ես Կամոյին հարցրի։*

*— Տո, «գիժ», որ խաբեցիր, թե ժողով չես անելու, կատարելո՞ւ ես խոստումդ։*

*— Գնացե՛ք, ռադ եղեք։ Էնա է՛լի, դուք միշտ էլ ճշմարտախոս եք... մտել եք ձեր բներն ու դուրս էլ չեք գալիս... ինքներդ անշնորհք՝ մի բան անելու, հալա ուրիշին էլ հնարավորություն չեք տալիս...*

*Կամոն հայհոյելու մեջ էլ էր վարպետ. խոսելու ժամանակ նրա ձայնը քթի մեջ արձագանք էր տալիս և որքան էլ գռեհիկ լինեին նրա հայհոյանքները, արտահայտության ձևը ծիծաղ էր պատճառում լսողին։*

*— Տո «գիժ», դու ուզում ես, որ մեր բոլոր ընկերները Կամո դառնա՞ն։ Դու արդեն անտուն ես դարձել, քեզ ձերբակալել դժվար է, բայց այն ընկերները, որոնք կապված են թե՛ ընտանիքի և թե՛ կազմակերպչական գործի հետ, հո չե՛ն կարող քեզ պես անվերջ թափառել... Մի օր այստեղ ես, մյուս օրը Մոսկվա, Պետերբուրգ կամ արտասահմանյան քաղաքներից մեկում... եռևիցդ լաց լինող չունես. ուզում ես, որ մենք բոլորս էլ քեզ պես թափառական դառնա՞նք...*

*— Տո, եթե էսեռներից մտնում են պահնորդական բաժին ու տարիներով մատնում իրենց ընկերներին, որպեսզի ժանդարմների վստահությունը գրավեն, թե ինչ է, մի մինիստր պիտի սպանեն, ապա ես իրավունք չունե՞մ մտնելու մի ընկերոջ տուն և այնտեղ կազմակերպչական աշխատանք տանել՝ ռեակցիայի հիմքը քանդելու համար... Կամոն հակաճառության ժամանակ սովորություն ուներ օրինակներ բերել ուրիշներից։*

*Կամոյին թողնելով Աշոտի բնակարանում՝ ես գնացի։ Մի շաբաթից հետո, գիշերվա ժամը 12-ին վերադառնում եմ իմ բնակարանը, կինս ցույց է տալիս սեղանիս վրա դրված տոմսը, որը բերել էր Աբրահամը և ինքը գնացել. տոմսը գրված էր այսպես։ «Ընկ. Աս. այս տոմսը ստանալուդ պես, գիշերվա որ ժամն էլ ուզում է լինի, առանց այլևայլության գաս ինձ մոտ։ Ես այն բնակարանումն եմ, որը դու ճարեցիր։ Կամո»։ Ես կնոջս ոչինչ չեմ ասում, թե ով է կանչել, գնում եմ այնտեղ։ Ներս եմ մտնում սենյակը, որտեղ մի անծանոթ մարդ, ատրճանակը ձեռքին, կանգնած էր դռան եռևը. ես զարմացած կանգ եմ առնում, կարծելով, թե նա գաղտնի ոստիկան է, եկել է խուզարկություն կատարելու։ Այդ մոմենտին, Կամոն ներսի սենյակից լսելով ոտքի ձայն, առաջ եկավ և տեսնելով ինձ, ուրախությամբ հարցրեց.*

*— Օ՜, էդ ինչ լավ ես արել, որ եկել ես, ես գիտեի, որ տոմսն ստանալուն պես՝ կգաս։ Դե արի, հանգստացիր։*

*— Ինչո՞ւ հանգստանամ, տո, ինչո՞ւ ես կանչել,— դեպի մյուս սենյակն անցնելով հարցրի ես։*



*— Քնիր,— պատասխանեց նա։*

*— Ինչպե՞ս թե քնիր, ես քնելու տե՞ղ չունեմ...*

*— Այս գիշեր մեզ մոտ պիտի քնես։*

*— Տո, իսկապես, որ «գիժ» ես, ինձ գործի համար ես կանչե՞լ, թե՞ քնեցնելու։*

*— Գործի համար, իսկ եթե քնել չես ուզում, վերցրու այն գրքերից մեկը և կարդա,— վրա բերեց նա՝ ցույց տալով Աշոտի սեղանը։*

*— Ոչ էլ կարդալու տրամադրություն ունեմ,— ասացի ես,— ավելի լավ է գործի մասին խոսենք։*

*— Գործի մասին խոսված է,— ասաց նա,— ժամը 4-ին պետք է գնանք...*

*— Ո՞ւր, որտե՞ղ...*

*— Դու կիմանաս ժամը երեք և կեսին...*

*Ես նոր գլխի ընկա, որ այդ գիշեր Կամոն դիմելու է հարձակման, բայց թե որտե՞ղ, նա դեռ ոչ ոքի ոչինչ չէր ասել։*

*— Ի՞նչ ես ասում, տո, երկու ժամից հետո հարձակման դիմելու մասին ինձ նոր ես հայտնում...*

*— Էլի շուտ է... Ես պետք է ասեի այն ժամանակ, երբ պետք էր ռումբերը նետել...*

*— Զարմանալի մարդ ես դու, Կամո՛, ինձ ուզում ես գործադրել ճիշտ այնպես, ինչպես ձեռքիդ զենքը... Երբեք չես ուզում խորհրդակցել և ընկերոջ կարծիքն իմանալ։ Վերջապես, ես հո նրանցից չեմ, որոնց խորհրդակցությունը կարևոր չէ նման գործի համար։*

*— Ինչո՞ւ ես կարծում, թե քո խորհրդակցությունն անհրաժեշտ է։*

*— Որովհետև ես փորձառություն ունեմ...*

*— Քո փորձառությունն ինձ հարկավոր չէ. ինձ հարկավոր է այն, ինչի համար որ պետք է գործադրել քեզ... դու պիտի կատարես միայն մի դեր, և այստեղ գտնվողներից յուրաքանչյուրը կատարելու է մի գործողություն. Նա ցույց տվեց սենյակում քնած մարդկանց։ Ես ուշի-ուշով նայեցի այդ քնածներին, որոնցից շատերը կասկածելի տպավորություն թողին ինձ վրա... Դառնալով Կամոյին, հարցրի.*

*— Տո, ովքե՞ր են սրանք...*

*— Էհ, ովքեր էլ լինեն, ինձ ինչ։ Ես սրանցից վերցնելու եմ այն, ինչ որ պետք է, իսկ այն, ինչ որ ինձ պետք չէ, թող իրենց մնա։ Բայց մենք երկար չխոսենք այս հարցի շուրջը։ Ես ժամանակ չունեմ, պետք է կարգի բերեմ ռումբերը։ Դու ուզում ես քնիր, ուզում ես կարդա։*

*— Շնորհակալ եմ։ Ինձ ոչինչ հարկավոր չէ։ Ես կգնամ տուն և ատրճանակս վերցնելով կգամ այնտեղ, ուր որ դու կասես։*

*— Ոչ, դու ոչ մի տեղ չես կարող գնալ... կարգադրված է այստեղից ոչ ոքի դուրս չթողնել...*

*— Ուրեմն ես բանտարկվա՞ծ եմ,— հարցրի ես։*

*— Այո, մենք բոլորս այդ դրության մեջ ենք, մինչև ժամը չորսը,— պատասխանեց Կամոն։*

*Եվ իսկապես դռան մոտ կանգնած պահապանը ոչ ոքի դուրս գնալ չէր թողնում։*

*Կամոն ինձ դրեց անհարմար դրության մեջ... Բոլոր իրավունքներից զրկված՝ միայն գործիքի դեր էի խաղալու։ Թեև գործի հաջողության համար*

digitised by A.R.A.R.@

կարելի էր հաշտվել, բայց իմանալով նրա ֆանտազիաները, ես համենայն դեպս ուզում էի իմանալ, թե գործողությունը որտեղ է կատարվելու. տեղն ու դիրքը նպաստավո՞ր էին լինելու, թե՞ զոհեր շատ էինք տալու: Գործի հաջողության գլխավոր պայմանը լինելու էր տեղի դիրքը:

Կամոն իր գլխում շատ ֆանտազիաներ ուներ... Նա մտածում էր մի աերոպլան ձեռք բերել և օդից հարձակում գործել պետական գանձարանների վրա...

Նա նույնիսկ ծրագրել էր Պետերբուրգը (այժմ Լենինգրադ) մի ժամով գրավել, այսինքն՝ հարձակվել օդից և ռմբակոծել զորանոցները, կառավարությանը շփոթության մեջ գցելու համար և ցույց տալու, որ բոլշևիկ հեղափոխականները, բացի բանվորական գործադուլներից, ցամաքային ցույցերից, կարող են նաև կռվել օդից ու սարսափ տարածել կառավարության վրա: Այն ժամանակ դրանք ֆանտազիաներ էին, որոնց վրա միայն ծիծաղել կարելի էր...

Ծրագրած գործողության համար Կամոն իր շուրջն էր հավաքել բոլորովին պատահական մարդկանց: Ես համոզված էի, որ նա նրանց յուրաքանչյուրին խոստացել էր մի որոշ գումար տալ հափշտակված դրամից, բայց համոզված էի նաև, որ ոչ մեկին մի կոպեկ չի տալու: Կամոյից վրեժ լուծել նրանք չէին կարող, որովհետև այլևս չէին տեսնելու նրան: Մեջտեղը մնալու էի ես, որովհետև քաղաքում նրանցից մեկն ու մեկին հանդիպելու էի, որը պիտի բռներ օձիքիցս և պահանջեր հատուցումը: Դրա համար էլ ես դիմեցի Կամոյին:

— Կամո, այդ մարդկանց հետ այս դրությամբ չեմ կարող գործի գնալ, ինձ հարկավոր է կերպարանափոխվել, տուր ինձ քո գրիմներից մեկը, և բացի այդ, գործողության տեղն ասա, որ այստեղից դուրս գալուց հետո կերպարանափոխվեմ և գամ ձեզ հետ միանալու: Հո գիտե՞ս, թե հետևանքն ինչ կտացվի... Դու ծաղրում ես էսեռներին, բայց ներկա գործը նույն բնույթն է կրելու... դու գլուխդ կազատես, տուժողը ես եմ լինելու:

Կամոն մի քիչ բարկացավ և սկսեց հայհոյել, բայց հետո հանդարտվեց և իր արկղից հանելով թղթի մեջ փաթաթած մի բան, տվեց ինձ ու ասաց.

— Առավոտյան ժամը չորսին մեզ կսպասես Կոջորի խճուղու վրա, Բուսաբանական այգուց վերև, պանդոկի հարավային կողմը, առաջին շրջադարձի մոտ: Դրանից հետո նա դռան մեջ կանգնած պահապանին ասաց, որ ինձ թույլ տա գնալու:



Ես վերադարձա տուն: Կնոջս ասացի, որ գնում եմ Կոջոր՝ Ֆլորա Վարդանյանի մոտ, կուսակցության կողմից առաջարկելու, որ նա հանձն առնի այնտեղ մի գրասանք սարքելու հօգուտ մեր կազմակերպության: Ֆլորան իր մանկապարտեզով փոխադրվել էր այնտեղ:

Ժամը երեքն էր, ես ճանապարհ ընկա: Կես ժամվա մեջ հասա նշանակված տեղը: Թե՛ գրիմը և թե՛ «մաուզերը» մի տոփի մեջ կռանս տակ դրած՝ սպասում էի բարձունքի վրա: Արդեն լույս էր: Ճանապարհի վրա իմ սպասած մարդկանցից ոչ ոք չէր երևում:

Գրիմը բաղկացած էր գլխի մազից, մորուքից ու բեղերից, որով ծպտրվելը հեշտ էր. ես չէի ուզում հենց սկզբից կերպարանափոխվել, սպասում էի, որ նրանք երևան, հետո անմիջապես փոխվեմ: Ժամը հինգն անցավ, մոտեցավ վեցը, բայց ոչ ոք չերևաց: Արդեն ուշ էր. մինչև այդ եթե չեկան, ուրեմն էլ չէին գա, որովհետև պոստի անցնելու ժամանակն էր, չէին կարող պատրաստվել, դերերը բաժանել ու դիրքերը բռնել: Ես զգուշությամբ իջա և մտնելով քաղաք, հանդիպեցի Վոզնեսենսկայա փողոցով եկող փոստատար կառքերին, ստրաժնիկներով շրջապատված: Ինչպես երևաց, նրանք բաց էին թողել, կամ հետաձգել էին: Շտապեցի գնալ Կամոյի մոտ:



Կամոն մենակ էր. չկային ոչ դռան մոտ կանգնած պահապանը և ոչ էլ սենյակում պառկած մարդիկ:

— Հը՛, տո «գիժ», ինչո՞ւ խաբեցիր,— հարցրի ես:

— Հետաձգեցինք,— պատասխանեց նա:

— Պատճառը:

— Քո գնալուց հետո այդպես որոշեցինք:

— Իսկ այստեղ գտնված մարդիկ ո՞ւր են: Նրանք կարող են ենիչերներ դառնալ գլխիդ...

— Ընդմիշտ արձակեցի նրանց:

— Բայց խոստացա՞ր, որ հետո նրանց հրավիրելու ես:

— Այո, նայելով թե ինչպիսի գործ ենք շինելու: Եթե նրանց մասնակցությունն անհրաժեշտ լինի, կհրավիրենք:

— Իսկ եթե ո՞չ...

— Չենք հրավիրի:

— Բայց դուռդ միշտ կթակեն:

— Չեն գտնի...

— Ճիշտ է, բայց նրանք այստեղ կգան և Աշոտի օձիքից կբռնեն...

— Այդ մասին թող Աշոտը ինքը մտածի...

— Ահա, տեսա՞ր հետևանքը... Եվ դու պահանջում ես, որ ընկերներն իրենց բնակարանները տրամադրեն քեզ, և հետո ստեղծվի այնպիսի դրություն, որ ստիպված լինեն ընտանիքից ու գործից հրաժարվել...

— Հոգ չէ, եթե ռեակցիայի հիմքը քանդելու համար մի ընտանիք մի քիչ քայքայվի...— ժպտալով ասաց նա:

Կամոյի հետ երկար վիճելը և նրան համոզելը անհնարին էր: Նա յուրաքանչյուր հարձակման գործի համար իր շուրջը նոր մարդիկ էր համախմբում: Եվ այդ նրա համար, որպեսզի ծախս չաներ նրանց պահելու վրա: Նա սովորություն չուներ նրանց վարձատրելու անմիջապես: Մի քանի ռուբլի ծախսի փող էր տալիս և խոստումը հետո կատարում:

Զգալով, որ Կամոյի հետ երկար վիճելն անօգուտ է, ընդհատեցի, բայց ուզեցի իմանալ, թե ինչ է մտադիր անելու դրանից հետո:

— Հապա ի՞նչ ես անելու սրանից հետո:

— Սրանից հետո, նախ և առաջ հարկավոր է ինձ այս բնակարանից փոխվել ուրիշ տեղ, իսկ այնուհետև կմտածեմ, թե ինչ պետք է անել: Այդ մասին քեզ հետո կասեմ: Իսկ այժմ դու գնա և Աբրահամին ասա, որ գա ինձ մոտ:

Թողնելով Կամոյին այդտեղ, ես գնացի Աբրահամի մոտ և հայտնեցի, որ «գիժը» իրեն կանչում է, իսկ ինքս գնացի աշխատելու:

Կամոն այդտեղից փոխադրվում է Մարտիրոսյանի բնակարանը, որը գտնվում էր Հավլաբարում՝ Ալազանսկի տուպիկի վրա։

Նա երեկոները երբեմն լինում էր Ս. Կասյանի մոտ։ Վերջինս իր ռոճիկի մի մասը տալիս էր Կամոյին՝ նրա առօրյա ծախսերի համար։ Այսպես մի որոշ ժամանակ մնալուց հետո Աբրահամը եկավ ինձ մոտ և ասաց, որ առավոտյան ժամը 6-ին ես լինեմ Արչիլի գինետանը։

Հաջորդ օրն առավոտյան վաղ ես գնացի արհեստանոց, ձեռքիս կիսատ գործը վերջացրի և վերադարձա։ Ժամը վեցից քառորդ պակաս ես Ցիցիանովի վերելքի գլխին էի։ Այնտեղ դեպի Կոջորի խճուղին նայելով անցնում էի, երբ աչքովս ընկավ հանկարծ բարձրացող ծուխ, իսկ մի քանի վայրկյանից հետ մի ուժեղ պայթյուն։ Իսկույն զգացի, որ դա մեր «գժի» գործն է լինելու։ Դրանից հետո մի ծուխ եա բարձրացավ, բայց պայթյունն առաջինից բավական ուշ լսվեց... Հետո նկատելի դարձավ դեպքի տեղում մարդկանց շարժումն ու փախուստը։ Ես շտապեցի հասնել Արչիլի խանութը։ Աբրահամին պատահեցի այնտեղ։ Նա շատ ուրախ էր։ Ես հարցրի.

— Ի՞նչ է եղել։

— Այն է եղել, որ հիմա փողերը կբերեն և կհանձնեն մեզ, իսկ մենք էլ պետք է անհետացնենք, որպեսզի խուզարկության ժամանակ չգտնեն։ Կամոն այսպես է կարգադրել,— ասաց Աբրահամը։

— Ուրեմն էդ Կամոյի ռումբերի ձա՞յնն էր,— հարցրի ես։

— Այո,— ինքնաբավական պատասխանեց նա և ավելացրեց.

— Ուզում է գնալ ընկ. Լենինի մոտ, փողերը հանձնել կուսակցության։ Էդ մունդռիկի խելոք ժամանակ Երևանյան հրապարակից փոխցրած փողերը կայարանը փոխադրելուց հետո ես և Կոտեն (ոչ Ցինցաձեն—Ա. Կ.) միմիայն 25 կոպ. ստացանք։

«Գնացեք, մի կվարտ գինի խմեցեք»,— ասաց Կամոն։ Իսկ հիմա, որ «գիժ» է, խկի ոչինչ էլ չի տա, այնինչ նրա հաշվին այսօր Արչիլի մոտ երկու կվարտ արդեն խմել եմ։

Աբրահամին ներկայումս մեր ընկերներից շատերը լավ են ճանաչում, բայց որովհետև կան և չճանաչողներ, ուստի ավելորդ չէր լինի մի քանի խոսքով տալ նրա բնութագիրը։

Աբրահամը կուսակցության համար օգտակար գործեր շատ է կատարել թե՛ գաղտնի տպարանի կազմակերպչական աշխատանքի մեջ և թե՛ այս կամ այն անլեգալ ընկերոջը տեղավորելու և նրան փոխադրելու գործում։ Նա գինի շատ էր սիրում, բայց կուսակցական գաղտնիքների մասին շատախոսություն և բերանբացություն չի արել։

Արչիլի գինետանը մենք սպասեցինք համարյա մի ժամ, բայց մեզ ոչ թե փող, այլ տեղեկություն էլ բերող չեղավ։

— Աբրահա՛մ, ուշացան,— ասացի ես։

— Հա՛, ինձ էլ է թվում, որ ուշացան։

— Երևի այլևս չեն գա։ Ավելի լավ է գնանք մեր գործին, երևի ինքն իմաց կտա քեզ։

Այդ խոսակցության ժամանակ փողոցում երևացին ոստիկաններ, որոնց արտակարգ շարժումն ու իրարանցումը նշան էր արտակարգ հրահանգի։ Նկատելով այդ՝ մենք ցրվեցինք։

Այդտեղից ես գնացի տուն։



Եղանակն ամպամած էր։ Սկսվեց անձրևը։ Ես մտա տուն և տեսա Կամոյին և մի ուրիշ ընկերոջ, որին «դեդալ» Գիգո էին կոչում։ Այդ ժամանակ կինս նոր էր դուրս եկել ծննդաբերության տեղից և պառկած էր, բայց տեսնելով Կամոյին և իր ընկերոջը, որը վիրավորված էր ծնկից, վեր էր կացել, նրա վերքն էր կապում։ Ինձ համար այդ անսպասելի էր։

— Հը՞, ինչպե՞ս եղավ,— հարցրի ես։

— Անհաջող,— պատասխանեց Կամոն,— ռումբերից մեկի ուշ պայթելու պատճառով կառքը փախցրին, և ստրաժնիկները դիրք բռնելով՝ սկսեցին կրակել մեզ վրա։ Մենք ստիպված էինք փախուստի դիմել...

Սեղանի վրա դրված էր մի պաշտոնյայի գլխարկ, տեսնելով այդ, ես հարցրի.

— Էս ո՞ւմ գլխարկն է։

— Իմ գլխարկն ընկավ, դա փոստը տեղափոխող արտելշչիկի գլխարկն է. նա կարծեմ էն աշխարհը գնաց...

Սարսափելի դրություն էր ստեղծվել։ Կինս հիվանդ, ոտի վրա կանգնել չէր կարողանում, բայց տեսնելով վիրավորված ընկերոջը, իր հիվանդությունը մոռացել էր, նրան էր խնամում։ Իսկ մյուս կողմից ոստիկանությունն ու կոզակները փողոցները լցվել, շուրջկալ էին անում և ձերբակալություններ կատարում։ Կամոն ու Գիգոն եթե դուրս գնային, կարող էին ձերբակալվել։ Ինձ մոտ մնալն էլ վտանգավոր էր, որովհետև իմ սենյակն այնքան փոքր էր, որ նմանվում էր բանտի խցիկի։ Բակի մեջ ապրողներից թաքցնել և մարդ պահել այդ սենյակում, ուր շարժվել չէր լինում, անկարելի էր. կտեսնեին, և ամենաշատը մի օրից հետո կիմացվեր, որ Կամոն մեր տանն է ապրում... Նրանց ձերբակալելով կձերբակալեին և ինձ, կնոջս, երեխաներիս և ամեն ինչ վերջացավ...

Բացի ոստիկաններից ու կոզակներից, խուզարկու շներ էլ էին դուրս բերել և սկսել հետախուզումներ կատարել։ Ես վախենում էի, որ այդ շների օգնությամբ մեր տունը գտնեն։ Իմ առաջին գործը եղավ պաշտոնյայի գլխարկը ոչնչացնելը. տարա խոհանոց, նավթով թրջեցի և վառեցի։ Հետո գնացի տուն, նրանց հարցրի, թե ի՞նչ են անելու ստեղծված դրությունից դուրս գալու համար։

Բարեբախտաբար այն վայրկյանին, երբ նրանք մտել էին մեր բակը, բնակիչներից ոչ ոք չէր նկատել։ Անձրևի պատճառով բոլորը սենյակները մտած էին եղել։ Անձրևը շարունակվում էր։ Ես մի քանի անգամ ներս ու դուրս արի, բայց դրսում ոչ ոքի չնկատեցի։ Պայմանները նպաստավոր էին։ Շարունակվող անձրևը հնարավորություն կտար նրանց տեղափոխվելու։ Ասում էին, թե անձրևի ժամանակ խուզարկու շները հետքը կորցնում են...

— Այստեղ մնալ անհնարին է, պետք է տեղափոխվել, հակառակ դեպքում զոհերի թիվը կավելացնենք... Բնությունը մեր կողմն է, պետք է շտապել,— ասացի ես։

— Այո, բայց ո՞ւր գնալ,— հարցրեց Կամոն։

— Կասյանի տուն, միակ հարմար տեղը, եթե հաջողվի անվտանգ գնալ, որովհետև նա երեք սենյակ ունի։

— Լավ, ուրեմն մենք կերթանք այնտեղ։

— Մի քանի րոպեից հետո էլ ես կգամ,— ասացի։

Ընկերոջ վերքը կապելուց հետո նրանք գնացին։ Կինս վատ զգալով իրեն՝

նորից պառկեց։ Ես նրան թողի այդ դրության մեջ և գնացի նրանց տնից։

Հետզհետե ուժեղացող անձրևից փողոցներում գետակներ ու լճակներ էին առաջացել։ Հովանոցը գլխին բռնած, գետակների վրայից ցատկելով անցնում էի փողոցները։ Նկատում էի պատշգամբների տակ և մուտքերի մեջ անձրևից պատսպարան գտած վարձկան ոստիկանների խմբեր. նրանք հարց ու փորձ էին անում երթևեկողներին։

Մտնելով Կասյանի սենյակը, տեսա, որ տղաներն անվտանգ հասել են այնտեղ։ Սոնյա ու Սարգիս Կասյանները ոտքի վրա՝ Գիգոյի վերքի փաթաթանն էին փոխում, իսկ Կամոն դրիմ էր պատրաստում...

— Տղերք, թեև աշխատանքներդ փուստ դուրս եկավ, բայց գլուխներդ լավ եք ազատել,— ասացի ես,— ամբողջ ոստիկանությունը ոտքի վրա է, բայց ամեն մի ոստիկան այնպես խելոք ու հանգիստ կանգնած է իր տեղը, որ կարծես առանձին հրահանգ ստացած չլինի վերևից։

— Եղանակը մեզ օգնեց, ապա թե ոչ կձերբակալվեինք,— ասաց Կամոն։

Երբ Գիգոյի վերքն արդեն փաթաթված էր, ես և Կասյան ամուսինները նրանց թողնելով այդ առանձին սենյակում, անցանք մյուս սենյակը։ Պետք էր նրանց տեղափոխել. Կասյանի մոտ երկար պահել չէր կարելի։ Թեև արտաքնոցը սենյակներին կից էր, նրանք բակը դուրս գալու կարիք չէին ունենա, հետևաբար բնակիչները նրանց չէին նկատի իբրև օտար մարդկանց, բայց և այնպես Կամոն երեկոները դուրս էր գալու իր գործի համար և կարող էր պատահել, որ այդպիսի դեպքերում լրտեսների պատահեր ու վտանգավոր դրություն ստեղծվեր թե՛ իրեն, և թե՛ Կասյանի համար։

Մեր խորհրդակցությունը հետևյալ եզրակացության հանգավ. Կամոյին մի քանի օր այդտեղ պահելուց հետո նորից ուղարկել Բաքու կամ Երևան։ Նրան պատվիրել, որ մի առ ժամանակ դադարի «էքսով» զբաղվել, որպեսզի ոստիկանությունը ձեռք քաշի նրան փնտրելուց։ Իսկ մինչև այդ, մենք միջոցներ կգտնենք իր ժամանակին նպաստելու Կամոյի «էքսը» գլուխ բերելու համար։ Այդ որոշումը հայտնեցինք Կամոյին, բայց նա որոշ պատասխան չտվավ։

— Ես գիտեմ,— ասաց նա,— որ այստեղ երկար մնալ չի կարելի, դրա համար էլ վաղը կտեղափոխվեմ ուրիշ բնակարան, իսկ հետո կտեսնենք, թե ինչ ենք անելու...

Կամոն մի տասն օրից հետո Կասյանի բնակարանից տեղափոխվեց ուրիշ բնակարան։

Այնուհետև ես Կամոյին ուշ-ուշ էի պատահում։ Նրան երբեմն պատահում էի Մարտիրոսյանի մոտ, երբեմն էլ Պուշկինյան պասաժում՝ դերձակի արհեստանոցի տեր Հարություն անունով մի դերձակի մոտ։ Նա լինում էր նաև պասաժից դեպի Արմյանսկի Բազար տանող փողոցի անկյունում գտնվող թիթեղագործի մոտ, որին ռումբերի համար արկղների մասեր էր պատրաստել տալիս։

Կամոն ինչ-որ բան էր պատրաստում... Նա մեզ ոչինչ չէր ասում։ Ըստ երևույթին լրտեսները Կամոյի հոտն առել և սկսել էին հետևել. նրանք կարողացել էին իմանալ, թե նրա բնակարանը և թե այն մարդկանց տեղերը, որոնց հետ շփվում էր նա։

Մի օր, երբ Մարտիրոսյանի մոտից նրա խանութի աշակերտը Կամոյի արկղը տանում է դերձակ Հարությունի խանութը, որի մեջ ռումբեր են լինում,



հենց խանութում ձերբակալվում է։ Ձերբակալվում է Աբրահամը, ձերբակալվում են Մարտիրոսյանն իր կնոջ և երկու երեխաների հետ, և Կամոն, որն ապրելիս է եղել Սապիորնի փողոցի վրա՝ Տիգրան Վախտանգովի բնակարանում։ Վերջինս էլ իր կնոջ հետ ձերբակալվում և տարվում է Մետեխի բանտը։

Կամոն այդ մի շարք մարդկանց հետ ընկնում է Մետեխի բանտը։ Նա իր ձերբակալության մեջ կասկածում է Գեորգի Մայսուրաձեի վրա, որին մեր շրջանում տալիս էին «Տուրա» կեղծ անունը։

Նախնական քննության ժամանակ Կամոն հայտնում է, որ իր ընկերը Գ. Մայսուրաձեն է։ Վերջինս նույնպես ձերբակալվում է։

Գ. Մայսուրաձեն Կամոյի հետ մեկտեղ ինչ-որ գործի պատրաստություն են տեսնելիս եղել։ Կամոյի ձերբակալման նախընթաց օրը Գ. Մայսուրաձեն պետք է գնար Կամոյի մոտ, բայց չի գնում։ Ահա այդ է լինում Կամոյի կասկածի գլխավոր պատճառը և նրանից վրեժ լուծելու համար հայտնում է, թե նա իր ընկերն է...

Գ. Մայսուրաձեն Մետեխում իմանում է, որ Կամոն իրեն թույլ է տվել այդպիսի քայլ անելու։ Նա բանտի ընկերների առաջ բողոք է հայտնում. վերջիններս քննելով այդ գործը, Կամոյին մեղադրում են, որ նա առանց իրական փաստերի անբաստանել է ընկերոջը։

Մենք ամենքս, ինչպես և ինքը Կամոն, համոզված էինք, որ նրան երկար չէին պահելու բանտում, այլ գնդակահարելու կամ կախաղան էին հանելու։ Բայց Ռոմանովների տան երեք հարյուր ամյակի առթիվ տված ամնիստիան ազատեց Կամոյին, որին դատապարտեցին 20 տարվա տաժանակիր աշխատանքի։ Դատավճռից հետո Կամոյի հետ տեսակցության էին թողնում իր քույրերին։

Մի անգամ նրա քույր Արուսյակը Կամոյին տեսակցության գնալուց հետո գալով ինձ մոտ հայտնեց, որ Կամոն շատ անհանգիստ է։ Նա գանգատվել էր, թե երբ իրեն ձերբակալեցին և դրին բանտ, այն ժամանակ նա շատ հանգիստ էր, որովհետև գիտեր, որ երկար չեն պահի, որպեսզի ինքը օգտվի հանգամանքից և բանտից փախչելու միջոցներ ձեռք առնի։ Բայց երբ վճռեցին 20 տարի, քունն ու հանգիստը կորցրեց և գլխում ծագեցին բանտից փախչելու զանազան ծրագրեր։ Նա Արուսյակի միջոցով ինձ հայտնում էր, որ ես աջակցեմ իրեն՝ այդ փախուստը կազմակերպելու գործում։ Ես տվի համաձայնություն։

Կամոն բանտարկված էր Մետեխի բանտի նոր շենքում։ Նրա կամերայի լուսամուտները նայում էին դեպի Բախկալնայա փողոցը։ Ես այդ նոր շենքում չեմ նստել, բայց նրա՝ ինձ գրած նամակից երևում էր, որ իր փախուստը լուսամուտից է ծրագրել։ Բանտի տակ, փողոցում շինված պահապանի բուդկայի հենց հարավ-արևմտյան կողմը, բանտի փոսաձև պատի գլխին լուսամուտի վանդակները կտրելով պիտի փախչեր։ Նա հայտնում էր, թե ինքը պայմանավորվել է ներսի պահապաններից մեկի հետ, որին խոստացել էր մեծ գումար տալ. պահապանը համաձայնվել էր իր հերթապահության ժամանակ հնարավորություն տալ լուսամուտի վանդակները կտրելու։ Կամոն ինձ խնդրում էր, որ ես ձեռք բերեմ սպիտակ և կարմիր ապակիներով մի լապտեր և գիշերը բարձրանամ Բախկալնայա փողոցի դիմաց, Խիտարովի պասաժում գտնվող թեյատունը (որի պատշգամբը նույնպես դեպի բանտն էր նայում) և այդտեղից նշան տամ իրեն։

Կամոն արդեն գործի էր կպել։ Գործիքները՝ աղոցն ու պարանը ստացել էր Արուսյակի միջոցով։ Պարանը նա հյուսել էր զանազան ժամանակներում ստացած մետաքսի կոճի թելերից։

Ամեն ինչ պատրաստ էր։ Լուսամուտի վանդակները համարյա կտրված էին և իրենց տեղը թողնված. մնում է սպասել մի նպաստավոր եղանակի։

Փախուստը տեղի պիտի ունենար երեկոյան, ուժեղ անձրևի ժամանակ, երբ պահապանը մտած լիներ իր ապաստարանը—բուդկան։ Այդ առթիվ ես թեյատան պատշգամբից նշան պիտի տայի իմ լապտերի կարմիր ու սպիտակ լույսերով. կարմիրը վտանգ էր նշանակելու, սպիտակը՝ Կամոյին գործի էր կոչելու։

Չնայելով, որ ամեն բան պատրաստ էր, բայց անձրև չէր գալիս... Չորային եղանակը շարունակվեց բավական երկար, և ահա մի օր բանտի վարչությունը նկատում է լուսամուտի վանդակների աղոցանքը ու երևան հանում Կամոյի փախուստի ծրագիրը։ Նրան տեղափոխում են մահվան դատապարտվածների բաժանմունքը և պահում խիստ հսկողության տակ։

Այդ դեպքից հետո Կամոյին երկար չեն պահում Թիֆլիսի բանտում, համոզված լինելով, որ վաղ թե ուշ նա փախչելու է. շատ չանցած՝ ուղարկում են Ռուսաստանի խորքերը, ավելի ամուր բանտերից մեկը։

---

# ՀՈԿՏԵՄԲԵՐՅԱՆ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՄԵԾ ՌԵՎՈԼՅՈՒՑԻԱՅԻ 40-ԱՄՅԱԿԻ ԱՌԹԻՎ

(Զեկուցումների, դասախոսությունների և զրույցների թեմատիկա)

1. Սոցիալիստական ռևոլյուցիայի տնտեսական և քաղաքական նախադրյալները Ռուսաստանում։
2. Վ. Ի. Լենինի «Սպառնացող աղետը և ինչպես պայքարել նրա դեմ» աշխատության պատմական նշանակությունը։
3. Վ. Ի. Լենինը Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի առաջնորդն է։
4. Կոմունիստական պարտիան որպես աշխատավորության առաջնորդ և կազմակերպիչ Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի հաղթանակի համար մղվող պայքարում։
5. Բանվոր դասակարգը որպես Հոկտեմբերյան Սոցիալիստական ռևոլյուցիայի հեգեմոն։
6. Կոմունիստական պարտիայի ստրատեգիան և տակտիկան սոցիալիստական ռևոլյուցիայում։
7. Վ. Ի. Լենինի Ապրիլյան թեզիսները՝ որպես սոցիալիստական ռևոլյուցիայի ուղենիշ։
8. Լենինի «Պետություն և ռևոլյուցիա» աշխատությունը և նրա դերը Հոկտեմբերի գաղափարական նախապատրաստման գործում։
9. Բոլշևիկյան պարտիայի վեցերորդ համագումարը և նրա դերը Հոկտեմբերյան զինված ապստամբության նախապատրաստման գործում։
10. Բոլշևիկների պարտիան որպես Հոկտեմբերյան զինված ապստամբության ղեկավար։
11. Հոկտեմբերի հաղթանակը սոցիալիստական ռևոլյուցիայի լենինյան թեորիայի հաղթությունն է։
12. Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի միջազգային նշանակությունը։
13. Հոկտեմբերյան Սոցիալիստական ռևոլյուցիայի ազդեցությունը ժողովուրդների պատմական բախտի վրա։
14. Ինչ տվեց Հոկտեմբերյան ռևոլյուցիան մեր երկրի աշխատավորներին։
15. Հոկտեմբերյան Սոցիալիստական ռևոլյուցիան և ազգային հարցի լուծումը ՍՍՌՄ-ում։
16. Հոկտեմբերյան Սոցիալիստական ռևոլյուցիան և կանանց ազատագրումը։
17. Ինչ տվեց Հոկտեմբերյան Սոցիալիստական ռևոլյուցիան մեր երկրի երիտասարդությանը։
18. Բանվոր դասակարգի և գյուղացիության դաշինքը պրոլետարիատի

դիկտատուրայի համար մղվող պայքարի, սոցիալիզմի, կոմունիզմի կառուցման վճռական ուժն է։

19. Պրոլետարիատի դիկտատուրայի նվաճումը և ամրապնդումը սոցիալիզմի ու կոմունիզմի կառուցման անհրաժեշտ պայմանն է։

20. Պրոլետարիատի դիկտատուրան դեմոկրատիայի բարձրագույն ձևն է։

21. Մարքսիզմ-լենինիզմը դասակարգերի և դասակարգային պայքարի մասին կապիտալիզմից սոցիալիզմին անցման ժամանակաշրջանում։

22. Պրոլետարական պետության դերը սոցիալիզմի և կոմունիզմի կառուցման համար մղվող պայքարում։

23. Սովետական ժողովրդի պայքարը սոցիալիզմի և կոմունիզմի կառուցման լենինյան պլանի կենսագործման համար։

24. ՍՍՌՄ-ի հզոր ինդուստրիալ պետություն դառնալը՝ սովետական ժողովրդի մեծ սխրագործությունն է։

25. Հոկտեմբերը և գյուղատնտեսության սոցիալիստական վերակառուցումը։

26. Կուլտուրական ռևոլյուցիան ՍՍՌՄ-ում։

27. Սոցիալիզմի հաղթանակը ՍՍՌՄ-ում՝ Կոմունիստական պարտիայի կողմից ղեկավարվող սովետական ժողովրդի հերոսական պայքարի արդյունքն է։

28. Կոմունիստական պարտիայի գաղափարական և կազմակերպական միասնությունը սոցիալիզմի կառուցման կարևորագույն պայմանն է։

29. Մարքսիզմ-լենինիզմը աշխատավորության գաղափարական զենքն է հասարակության սոցիալիստական վերափոխման համար մղվող պայքարում։

30. ՍՍՌՄ-ում սոցիալիզմի կառուցման փորձի միջազգային նշանակությունը։

31. ՍՄԿՊ XX համագումարի որոշումները սոցիալիզմի և կոմունիզմի կառուցման մասին լենինյան գաղափարների հետագա ստեղծագործական զարգացումն է։

32. ՍՍՌՄ-ի արդյունաբերությունը 40 տարում (ամբողջությամբ, առանձին ճյուղերով)։

33. ՍՍՌՄ-ի գյուղատնտեսությունը 40 տարում (ամբողջությամբ, առանձին ճյուղերով)։

34. Սովետական գիտությունը 40 տարում (ամբողջությամբ, առանձին ճյուղերով)։

35. Ժողովուրդների բարեկամությունը՝ Հոկտեմբերի մեծ նվաճումն է, լենինիզմի գաղափարների մարմնացումը։

36. Սովետական Զինված Ուժերը Հոկտեմբերի նվաճումների պահապանն են։

37. Սովետական ժողովուրդը ՍՄԿՊ XX համագումարի պատմական որոշումների կենսագործման համար մղվող պայքարում։

38. Տարբեր հասարակական կարգ ունեցող պետությունների խաղաղ գոյակցությունը՝ Սովետական պետության արտաքին քաղաքականության գլխավոր գիծն է։

39. Դեմոկրատական ցենտրալիզմի լենինյան սկզբունքը ժողովրդական տնտեսության կառավարման գործում։



40. Հոկտեմբերյան Սոցիալիստական ռևոլյուցիան և միջազգային բանվորական շարժման զարգացումը։

41. Հոկտեմբերյան Սոցիալիստական ռևոլյուցիայի առաջավոր գաղափարների տարածումը ամբողջ աշխարհում։

42. Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի հաղթանակը՝ մարքսիզմ-լենինիզմի գաղափարների հաղթանակն է։

43. Հոկտեմբերյան Սոցիալիստական ռևոլյուցիան և կապիտալիզմի ընդհանուր ճգնաժամը։

44. Հոկտեմբերյան Սոցիալիստական ռևոլյուցիայի ազդեցությունը գաղութներում և կախյալ երկրներում ազգային-ազատագրական շարժման զարգացման վրա։

45. Սոցիալիզմի կառուցման ընդհանուր օրինաչափությունները և առանձնահատկությունները ժողովրդական դեմոկրատիայի երկրներում։

46. Հոկտեմբերյան ռևոլյուցիայի նշանակությունը համաշխարհային սոցիալիստական սիստեմի ծագման և ամրապնդման գործում։

47. Ժողովրդական դեմոկրատիայի երկրների հաջողությունները սոցիալիզմի կառուցման գործում։

48. Պրոլետարական ինտերնացիոնալիզմը սոցիալիստական լագերի երկրների և ամբողջ աշխարհի աշխատավորության միասնության գաղափարական հիմքն է։

49. Սոցիալիստական երկրների մեծ համագործակցությունը խաղաղության և ժողովուրդների անվտանգության անխորտակելի ամրոցն է։

50. Կոմունիստական և բանվորական պարտիաները խաղաղության, դեմոկրատիայի և սոցիալիզմի համար ժողովուրդների պայքարի ավանգարդում։

51. Կոմունիստական և բանվորական պարտիաների պայքարը ռևիզիոնիզմի դեմ, մարքս-լենինյան գաղափարախոսության հիման վրա՝ հանուն սոցիալիզմի բոլոր ուժերի համախմբման։

52. Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիան և հայ ժողովրդի ազատագրումը։

53. Ինչ տվեց Հոկտեմբերյան ռևոլյուցիան հայ ժողովրդին։

54. Կոմունիստական պարտիայի պայքարն Անդրկովկասում սովետական իշխանության հաստատման համար։

55. Բաքվի հերոսական Կոմունան։

56. Վ. Ի. Լենինի դիրեկտիվ նամակը (1921 թ. ապրիլ) Կովկասի կոմունիստներին և նրա կենսագործումը։

57. Կոմունիստական պարտիայի պայքարը անդրկովկասյան ժողովուրդների բարեկամության ամրապնդման համար։

58. Հայաստանի արդյունաբերության նվաճումները և նրա զարգացման հեռանկարները։

59. Հայկական ՍՍՌ գյուղատնտեսությունը և նրա հետագա զարգացման խնդիրները։

60. Կուլտուրական ռևոլյուցիայի իրականացումը Հայկական ՍՍՌ-ում։

61. Գիտության և կուլտուրայի զարգացումը Հայկական ՍՍՌ-ում սովետական իշխանության տարիներին։

62. Սովետական Հայաստանը վեցերորդ հնգամյակում։

# ՊԱՐՏԻԱԿԱՆ ԿՈՄԻՏԵՆ ԵՎ ՆՐԱ ՏՊԱԳԻՐ ՕՐԳԱՆԸ

Մեր մամուլը, այդ թվում քաղաքային, շրջանային ու բազմատիրաժ թերթերը հանդիսանում են պրոպագանդայի, ագիտացիայի ու մասսաների կազմակերպման, նրանց վրա պարտիայի գաղափարական ներգործման կարևոր լծակներ։ Նրանք կոչված են օգնելու պարտիային ու ժողովրդին՝ հաջողությամբ լուծելու տնտեսական և կուլտուրական շինարարության հոյակապ խնդիրները, դաստիարակելու աշխատավորներին մարքսիզմ-լենինիզմի գաղափարներով։

Շրջանային և քաղաքային թերթերը իրենց խնդիրները հաջողությամբ կլուծեն այն ժամանակ, երբ նրանց շուրջ համախմբված կլինի բանգյուղթղթակցական ամենալայն ակտիվ, երբ նրանք ամուր թելերով կապված կլինեն հանրային բարիք ստեղծող մարդկանց հետ։ Դա հնարավորություն կընձեռնի խմբագրություններին ավելի գունեղ ու բազմակողմանիորեն լուսաբանել տեղական կյանքը, ժամանակին պատասխան տալ աշխատավորներին հուզող հարցերին, հաղթահարել ֆորմալիզմն ու շաբլոնը գրական աշխատանքում։ Պրոպագանդելով նորը, առաջավորը, կազմակերպելով մասսաներին, թերթերը պետք է իրենց էջերում միաժամանակ համարձակորեն բացահայտեն մեր աշխատանքի ստվերոտ կողմերը, ինչպես նաև հանդես գան թերությունների քննադատության անվան տակ մեր իրականությունը և հաջողությունները նսեմացնելու ամեն տեսակի փորձերի դեմ։

Թերթերի հաջող գործունեության երաշխիքը, նրանց ներգործության ուժը՝ պարտիական ղեկավարության մեջ է։ Մամուլը համընդհանուր պարտիական աշխատանքի անխզելի, բաղկացուցիչ մասն է, իդեոլոգիական աշխատանքի կարևորագույն բնագավառը։ Թերթերի աշխատանքի հաջողությունը կախված է նրանից, թե պարտիայի քաղկոմ-շրջկոմները, ֆաբրիկա-գործարանային կոմիտեները ինչպես են կազմակերպում և ուղղություն տալիս իրենց տպագիր օրգանների աշխատանքին։

Այդ կարելի է ցույց տալ թեկուզ ՀԿՊ Շամշադինի շրջկոմի օրինակով։ «Շամշադինի կոլտնտեսական» թերթը իր էջերում լայնորեն լուսաբանում է շրջանի տնտեսական ու կուլտուրական կյանքը, պարտիական և սովետական կազմակերպությունների գործունեությունը. մեծ տեղ հատկացնելով գյուղատնտեսության առաջավոր փորձի տարածմանը՝ նա նշում է նաև աշխատանքում եղած թերությունները, խարազանում է բյուրոկրատներին, այն մարդկանց, որոնք թերանում են իրենց պարտականությունների մեջ։ Շրջանային թերթի աշխատանքում, իհարկե, կան և բացեր ու վրիպումներ։ Բայց կարևորն այն է, որ թերթը կանգնած է ճիշտ ուղու վրա և ջանքեր է գործադրում համընթաց գնալու կյանքի հետ։ Դրանում, անշուշտ, խոշոր է պարտշրջկոմի դերը։ Շրջկոմի բյուրոյի նիստերում և պլենումներում հաճախակի քննարկվում են թերթի աշխատանքի բարելավման հարցերը։ Շրջկոմի բյուրոն սիստեմատիկաբար հաստատում է թերթի թեմատիկ պլանները և հաճախ լուրջ ուղղումներ է մտցնում նրանց մեջ։

Իր տպագիր օրգանի նկատմամբ Շամշադինի շրջկոմի հետաքրքրությունը սրանով չի սահմանափակվում։ Ամենից առաջ շրջկոմի ղեկավարությունը թերթի խմբագրությունն ամրապնդել է գրագետ, մամուլի աշխատանքը սիրող և ձեռներեց աշխատողներով, որոնց մշտապես օգնում է իր խորհուրդներով, ժամանակին շտկում նրանց վրիպումները։ Այսպես, անցյալ տարի շրջանային թերթը լավ չէր լուսաբանում բերքահավաքի ընթացքը։ Քանի որ շրջկոմի ընկերները մշտապես հետևում էին իրենց թերթին, սերտորեն կապված էին նրա հետ, անմիջապես նկատեցին խմբագրության թերացումն այդ հարցում և օգնեցին վերացնելու այդ բացը։

Թղթակիցների հետ կատարվող աշխատանքն ուժեղացնելու նպատակով շրջկոմի նախաձեռնությամբ ինչպես անցյալ, այնպես էլ այս տարի հրավիրվել են ընթերցողների և թղթակիցների մի շարք ժողովներ, խորհրդակցություններ։ Շրջկոմն աշխատում է ամեն կերպ պաշտպանել թերթի նախաձեռնությունը, հետևում է, որպեսզի նրա քննադատական ելույթները չմնան անհետևանք։ Շրջկոմի ապարատի աշխատողների սիստեմատիկ աշխատակցությունը թերթին՝ զգալիորեն բարձրացրել է «Շամշադինի կոլտնտեսական»-ի հեղինակությունը։ Բացի առանձին նյութերից, ընթացիկ տարում շրջկոմի քարտուղարներ Ա. Փոլադյանը, Ա. Զաքարյանը և Ս. Մարտիրոսյանը երկուական առաջնորդող հոդվածներ են գրել թերթի համար։

Շամշադինի պարտշրջկոմի օրինակը եզակի չէ, նման օրինակներ կարելի է բերել նաև ռեսպուբլիկայի մյուս քաղկոմ-շրջկոմների աշխատանքի պրակտիկայից։ Այնտեղ, որտեղ կոնկրետ ու գործնական է պարտիական ղեկավարությունը մամուլի նկատմամբ, պարտիական կոմիտեն մշտապես հետաքրքրվում ու զբաղվում է իր տպագիր օրգանի աշխատանքով, այնտեղ բովանդակալից ու նպատակասլաց է թերթը։

Ապահովել պարտիական ղեկավարությունը թերթերի նկատմամբ՝ ամենից առաջ նշանակում է մտածել խմբագրական կադրերի ընտրության ու դաստիարակության մասին, թերթում աշխատանքի ներգրավել քաղաքականապես հասուն, գրագետ, աշխատունակ մարդկանց։ Պարտիական կոմիտեն պետք է հոգա, որ թերթի աշխատողը մշտապես աճի, բարձրացնի իր գրական վարպետությունը, լինի շիտակ և սկզբունքային։

Բայց կան առանձին պարտիական կոմիտեներ, որոնք քիչ ուշադրություն են դարձնում խմբագրական կադրերի ընտրության ու դաստիարակության գործին, մոռանալով, որ մամուլը շատ կարևոր բնագավառ է, և այդ բնագավառում աշխատողը արժանի է լուրջ ուշադրության։ Մի քանի ամիս առաջ ՀԿՊ Կալինինոյի շրջկոմը թերթի խմբագիր էր նշանակել մի ընկերոջ, որն անձեռնհաս էր այդ գործում, և ի վերջո շրջկոմն ստիպված եղավ ազատել նրան աշխատանքից։ Ղուկասյանի շրջանային թերթը ոչ միայն դժգույն է, վատ է լուսաբանում տեղական կյանքը, այլև լույս է տեսնում լեզվական ու ոճական արտառոց սխալներով։ Դրա պատճառն այն է, որ շրջկոմը քիչ է օգնում խմբագրին, պահանջկոտ չի նրա նկատմամբ. խմբագրությունը չունի իր պատասխանատու քարտուղարը։ Կամ մի՞թե, ասենք, նորմալ երևույթ է, որ անցած մեկ տարում Կիրովականի շրջանային թերթի խմբագրությունում փոխվել է երեք պատասխանատու քարտուղար։

Մամուլի նկատմամբ պարտիական ղեկավարությունն ու վերահսկողությունը իրականացվում է բազմազան ձևերով ու մեթոդներով։ Քաղկոմ-շրջկոմների պլենումներում, բյուրոյի նիստերում, ընթերցողների և թղթակիցների ժողովներում հաճախակի քննարկվում են թերթերի աշխատանքի բարելավման հարցերը, խմբագրության հաշվետվությունները։ Պարտիական կոմիտեների բյուրոներում սիստեմատիկաբար քննվում ու հաստատվում են խմբագրական աշխատանքի թեմատիկ պլանները և այլն։

Այդ ամենը, անկասկած, անհրաժեշտ են, լավ են։

Սակայն, մամուլի նկատմամբ պարտիական ամենօրյա գործնական ղեկավարությունը չի կարելի փոխարինել բազմաթիվ ու մեծածավալ որոշումներով, բանաձևերով, նիստերով ու խորհրդակցություններով։ Մամուլը կենդանի գործ է, օպերատիվ աշխատանք, հետևապես պահանջվում է ամենօրյա օգնություն, ճկուն ղեկավարություն նրա նկատմամբ։ Քաղկոմ-շրջկոմը ապահովում է քաղաքական ղեկավարությունը իր թերթի նկատմամբ, լուծում է նրա գործունեության արմատական հարցերը։ Բայց թերթի նկատմամբ ամենօրյա հսկողությունն ու ղեկավարությունն իրականացնում է շրջկոմի կամ քաղկոմի առաջին քարտուղարն անձամբ։

Պարտիայի Կենտրոնական Կոմիտեի 1940 թվականի հուլիսի 13-ի՝ «Շրջանային թերթերի մասին» որոշման մեջ ասված է.

«Պարտավորեցնել ՀամԿ(բ)Պ շրջկոմների ու քաղկոմների առաջին քարտուղարներին՝ անձամբ ղեկավարել իրենց տեղական թերթը, ամեն օր հետևել նրա բովանդակությանը և թերթին նպատակամղել շրջանի առջև կանգնած քաղաքական ու տնտեսական հերթական խնդիրների լուծման կողմը»։

Պարտիական կոմիտեի անունից նրա առաջին քարտուղարն անձամբ հետևում ու ղեկավարում է թերթի աշխատանքը և նրա գործունեության համար պատասխանատու է կոմիտեի առաջ։ Անհրաժեշտ է, որ շրջկոմի քարտուղարը մշտական շփում ունենա խմբագրության աշխատողների հետ, նրանց գործնական խորհուրդներ, ցուցումներ տա, հանձնարարություններ անի, ժամանակին հրահանգավորի, դիտողություններ անի թերթում տպագրված նյութերի վերաբերյալ և այլն։ Անտարակույս, այս ամենը մեծապես կնպաստեն լավացնելու խմբագրության աշխատանքը, բովանդակալից ու հետաքրքրական դարձնելու թերթի յուրաքանչյուր համարը։

Սակայն սա ամենևին չի նշանակում, թե շրջկոմի առաջին քարտուղարը պետք է խնամակալի խմբագրությանը, ամեն քայլափոխում միջամտի նրա աշխատանքի ներքին մանրուքներին։ Դեռևս 1921 թվականին ՌԿ(բ)Պ Կենտկոմը մատնանշել է, որ «խմբագրությանը գործարար ինքնավարություն ընձեռելով, խմբագրական ամենօրյա աշխատանքի մանրուքներին չխառնվելով, պարտիական կոմիտեն պետք է քաղաքականապես ղեկավարի իր թերթը»։

Թերթի խմբագիրը պարտիական ղեկավար աշխատող է, որպես կանոն քաղկոմ-շրջկոմի անդամ. պարտիական կոմիտեն այս կամ այն կոմունիստի առաջ քաշելով խմբագրի պաշտոնում, պետք է լիովին վստահ լինի, որ նա ճշտորեն կիրականացնի պարտիայի գիծը, պատվով կկատարի հանձնարարված պարտականությունը։ Իր ամբողջ գործունեության համար խմբագիրը

լիովին պատասխանատու է շրջկոմի, քաղկոմի առաջ։ Սակայն, խմբագրությունը ինքնուրույն է կատարում իր պարտականությունները։ Եթե խմբագրությունը սխալվում է, թերթը խոտորվում է ուղիղ ճանապարհից, ապա պարտիական կոմիտեն պետք է անմիջապես ուղղի, շտկի այն։

Մենք ունենք առանձին պարտիական կոմիտեներ, որոնք մոտիկից չեն ղեկավարում իրենց տպագիր օրգանների աշխատանքը։ Այսպես, Կրասնոսելսկի շրջանային թերթը վատ էր լուսաբանում տնտեսության կարևոր հարցերը, թույլ էր քննադատական խոսքը թերթում, կոպիտ կերպով խախտվում էր թերթի հրատարակման գրաֆիկը, որի հետևանքով մեկ տարվա ընթացքում 13 համար պակաս էր լույս տեսել։ Եվ այս ամենը կատարվել էր շրջկոմի և նրա ղեկավարների աչքի առաջ։ Բայց քանի որ շրջկոմը քիչ էր հետաքրքրվում իր թերթով, ինքնահոսի էր թողել խմբագրության աշխատանքը, ժամանակին չէր նկատել այդ ամենը։ Այլ կարգի փաստեր կարելի է բերել նաև Ապարանի և Նոյեմբերյանի շրջաններից։

Երևանի Հայէլեկտրո գործարանի «Էլեկտրոմեքենաշինարար» բազմատիրաժ թերթը լավ է լուսաբանում ձեռնարկության կոլեկտիվի առօրյան. նրա էջերում բարձրացվում են ակտուալ հարցեր։ Սակայն թերթի գործունեությունն ավելի արդյունավետ կլիներ, նրա աշխատանքում վրիպումներ չէին լինի, եթե գործարանային կոմիտեն լրջորեն մտահոգվեր նրա առօրյա աշխատանքով։ Որպես կանոն բազմատիրաժ թերթի խմբագրական կոլեգիան ընտրվում է ընթերցողների և թղթակիցների ժողովում, կոլեգիան է ղեկավարում ու կազմակերպում թերթի հրատարակությունը և իր գործունեության համար սիստեմատիկաբար հաշիվ է տալիս իր ընտրողների առաջ։ Այս կարգը համապատասխանում է մեր մամուլի դեմոկրատական ոգուն, աշխատավորների նախաձեռնության զարգացմանը։ Բայց Հայէլեկտրո գործարանի թերթի խմբագրական կոլեգիան չի ընտրվել, այլ կազմվել ու հաստատվել է պարտկոմի կողմից. Նրա կազմում չկան բանթղթակիցներ, առաջավոր բանվորներ։ Թերթում զետեղված սկզբունքային, քննադատական լուրջ հոդվածները կոլեգիայի քննարկմանը չեն դրվում և կամ մինչև նրանց տպագրումը չեն համաձայնեցվում խմբկոլի բոլոր անդամների հետ։

«Էլեկտրամեքենաշինարար»-ում տպագրվել են բազմաթիվ քննադատական նյութեր, ուր բացահայտվել են ձեռնարկության այս կամ այն օղակում եղած թերությունները։ Սակայն ցեխային և գործարանային կազմակերպությունները լռությամբ են անցնում թերթի քննադատական ելույթների կողքով, չեն պատասխանում նրանց։ Գործարանի պարտիական կոմիտեն հիրավի ծանոթ է ստեղծված վիճակին, սակայն գործնական միջոցներ չի ձեռնարկում վերացնելու այս աննորմալ վիճակը և թերթի էջերում լայնորեն ծավալելու թերությունների սուր, սկզբունքային քննադատություն։

Անցած երկու տարում պարտիական կոմիտեն թերթի գործունեությանն անդրադարձել է հիմնականում այն ժամանակ, երբ նրա էջերում տպագրվել է քննադատական սուր բնույթ կրող որևէ հոդված, որն «աղմուկ» է հանել։ Նման դեպքերում կոմիտեն և նրա քարտուղարը ավելի շատ մտահոգվել են մի հարցով՝ որոշել հրապարակված նյութի ճշտության չափը, փաստեր ու փաստարկներ գտնել վիճարկելու տպագրված նյութի ճշգրտությունը։ Իր տպագիր օրգանի նկատմամբ նման ղեկավարությունը գործին երբեք օգուտ տալ չի կարող։ Եվ տարօրինակ չէ, որ նման պայմաններում խմբագիրը երբեմն թերթում տպագրում է ծանրակշիռ նյութեր՝ առանց լուրջ նախապատրաստման, առանց խորհրդակցելու խմբագրական կոլեգիայի և կոմիտեի հետ, երբեմն ծայրահեղ լինելով եզրակացությունների մեջ, հարկի ու անհարկի կրակի տակ առնելով գործարանի ղեկավարությանը։

Գործարանի յուրաքանչյուր աշխատող, յուրաքանչյուր կոմունիստ կարող է քննադատել գործարանի ղեկավարությանը, պարտկոմիտեի անդամներին։ Դա նրանց իրավունքն է։ Այդ բանը կարող են անել նաև թերթի էջերում։ Բայց բազմատիրաժ թերթը, որը պարտիական կոմիտեի օրգանն է, գործում է նրա ղեկավարությամբ, չի կարող դեմ գնալ նրա որոշումներին, անտեսել նրա ղեկավարությունը։ Եվ եթե առանձին տեղերում նկատվում են այդպիսի երևույթներ, ապա այդ գործում մեղավոր են առաջին հերթին պարտիական կոմիտեները։

Մամուլի աշխատանքի համար կարևոր նշանակություն ունի պարտիական ակտիվի սիստեմատիկ աշխատակցությունը տեղական թերթին։ Պարտիական աշխատողը քաղաքական գործիչ է, մասսաների կազմակերպիչ, և որպես այդպիսին, նա հանդես է գալիս աշխատավորների առաջ։ Սակայն ոչ մի լսարան, անգամ բազմամարդ, չի կարելի համեմատել թերթի ընթերցողների լայն լսարանի հետ։ Պարտիական աշխատողի մոտ օրգանական պահանջ պետք է դառնա անձնապես մասնակցել թերթին, օրվա այրող հարցերի շուրջը հոդվածներ գրել. դա պետք է դառնա նրա անմիջական աշխատանքի ուղղակի շարունակությունը։ ՌԿ(բ)Պ Կենտկոմը 1922 թվականին իր շրջաբերականում պարտավորեցրել էր թերթին աշխատակցելու գործում



«պարտիական կարգապահության կարգով ներգրավել տեղական բոլոր պատասխանատու պարտիական, սովետական աշխատողներին»։ Այդ նույնը բազմիցս Կենտկոմը նշել է իր հետագա որոշումներում։

Այնինչ կարելի է նշել, որ տեղ-տեղ պարտիական և սովետական ղեկավար աշխատողներ միայն հազվադեպ են հանդես գալիս տեղական թերթերում, կամ այդ ղեկավարների անունով նյութեր են գրում խմբագրության աշխատողները։ Այսպես, օրինակ, անցած մեկ տարում ՀԿՊ Ալավերդու և Գորիսի շրջկոմների առաջին քարտուղարները բոլորովին հանդես չեն եկել շրջանային թերթերում։

Պարտիական կազմակերպությունների և նրանց կոմիտեների կարևորագույն խնդիրն է՝ ամեն կերպ օգնել, նպաստել ծավալելու աշխատանքում տեղ գտած թերությունների քննադատությունը թերթի էջերում, կրակն ուղղել տնտեսավարման բացերը վերացնելու, արտադրական պլանները գերակատարելու գծով։ Հասկանալի է, որ այստեղ խոսքը վերաբերում է պարտիական սկզբունքային, սուր քննադատությանը։ Պարտիական կոմիտեները պետք է ամեն կերպ պաշտպանեն իրենց տպագիր օրգանների քննադատական ճիշտ, առողջ ելույթները, որը հանդիսանում է մամուլի նկատմամբ պարտիական ղեկավարության վառ արտահայտությունը։

Կոտայքի շրջանային «Սոցիալիստական տեմպով» թերթում դեռևս քիչ են տպագրվում քննադատական ծանրակշիռ նյութեր շրջանի տնտեսության, պարտիական և սովետական կազմակերպությունների աշխատանքի թերությունների մասին։ Այնինչ պարտշրջկոմը չի տեսնում այդ թերացումը։ Ավելին, նա վճռական միջոցառումներ ձեռք չի առնում այն մարդկանց դեմ, որոնք փորձում են խլացնել քննադատությունը, անտեսել թերթի քննադատական ելույթները։ Անցյալ տարի թերթում տպագրվեցին մի շարք հոդվածներ, թղթակցություններ, ուր բացահայտված էր ՄՏ կայանների, Հացավանի, Գառնիի, Մայակովսկու և այլ կոլտնտեսությունների աշխատանքում եղած թերությունները։ Սակայն այդ կազմակերպությունների ղեկավարները բարվոք համարեցին անտեսել մամուլի ահազանգները, լռությամբ անցնել այդ նյութերի կողքով։

«Սոցիալիստական տեմպով» թերթի խմբագրությունը ստիպված էր 1956 թվականի օգոստոսի 12-ին հանդես գալ «Մեր շրջանի լռակյացների մասին» ընդարձակ խմբագրական հոդվածով, ուր ցույց էր տրված թե ովքեր են լռում ու չեն ունկնդրում մամուլի ահազանգներին։ ՀԿՊ Կոտայքի շրջկոմի բյուրոն քննելով այդ հոդվածը, պարտավորեցրեց պարտիական կազմակերպություններին՝ ուշադիր լինել, ժամանակին ընթացք տալ շրջանային թերթի քննադատական ելույթներին։ Մի այլ առիթով շրջկոմի բյուրոն 1957 թվականի փետրվարի 12-ի իր որոշման մեջ նշեց. «Պարտավորեցնել պարտիական, սովետական, տնտեսական և դատաքննչական օրգաններին՝ ժամանակին արձագանքել մամուլում եղած քննադատական դիտողություններին՝ բացահայտված թերությունները վերացնելու համար, ամեն կերպ պաշտպանել արդարացի քննադատությամբ հանդես եկող թղթակիցներին, ձեռք առնել խիստ միջոցառումներ քննադատությունը ճնշողների, ինչպես նաև քննադատության համար հետապնդողների նկատմամբ»։

Այս ամենից հետո էլ, դժբախտաբար, առանձին հիմնարկների ու կազմակերպությունների ղեկավարներ դեռևս գործնական հետևություններ չեն անում մամուլի քննադատությունից, խմբագրությանը ձևական-բյուրոկրատական մի գրություն հղում այն մասին, որ «թղթակցությունը համապատասխանում է իրականությանը և ձեռնարկված են համապատասխան միջոցառումներ»։ Այսպես, օրինակ, թերթի մարտ-ապրիլ ամիսների համարներում տպագրված թղթակցություններում քննադատվել էր Կապուտանի, Առինջի, Զորաղբյուրի գյուղկոոպի խանութների, շրջկենտրոնի ճաշարանի աշխատանքը։ Այդ առթիվ խմբագրությունը ստացել է շրջսպառկոոպմիության վարչության նախագահ Ա. Մարգարյանի պատասխանները, ուր փորձ է արված շրջանցել թերթի կողմից բարձրացված հարցերը, կոծկել թերությունները։

Պարտիական կոմիտեները պետք է հոգ տանեն նաև թերթերի պոլիգրաֆիական կատարման ու ձևավորման բարելավման, խմբագրությունների կարիքների ու պահանջների բավարարման մասին։ Այդ նպատակով հարկավոր է կարգավորել շրջանային տպարանների աշխատանքը, ապահովել տպարաններն անհրաժեշտ սարքավորումներով ու մեքենաներով, հարստացնել տառատեսակները։

Մեծագույն խնդիրներ են ծառացած շրջանային, քաղաքային, ինչպես նաև ֆաբրիկա-գործարանային, կոլտնտեսային տպագիր թերթերի առջև։ Այդ խնդիրները հաջողությամբ կատարելու համար պահանջվում է ամեն կերպ ուժեղացնել պարտիական ղեկավարությունը թերթի նկատմամբ, բարձրացնել նրանց դերը տընտեսական և կուլտուրական շինարարության հարցերի լուծման գործում։

Վ. ՍԱՐԳՍՅԱՆ

# ՔՆՆԱՐԿՈՒԹՅՈՒՆ ԵՎ ՎԻՃԱԲԱՆՈՒԹՅՈՒՆ

## ՔՆՆԱԴԱՏՈՒԹՅՈՒՆԸ ՊԵՏՔ Է ԾԱՌԱՅԻ ԳԻՏՈՒԹՅԱՆԸ

Հայ փիլիսոփայական մտքի պատմությունը մեր ժողովրդի բազմահարուստ հոգևոր կուլտուրայի բնագավառներից մեկի պատմությունն է։ Հազարամյակների ընթացքում նա ստեղծել է ոչ միայն պատմագրական, գրական, արվեստի, այլև փիլիսոփայական արժեքներ, որոնց վերհանումն ու մարքսիստական մեկնաբանումը այսօր էլ մեր գիտական աշխատողների հերթական խնդիրներից մեկն է։ Այդ մեծ գործում հնարավոր են երկու ծայրահեղություններ՝ դրանց գերագնահատում, այլ կերպ ասած ազգային սնապարծություն և թերագնահատում, կամ ազգային նիհիլիզմ։ Այդ երկու ծայրահեղություններն էլ իմացաբանական միևնույն ակունքն ունեն՝ խնդիրների միակողմանի մոտեցում, այդ պատճառով էլ մեկից մյուսին անցնելը շատ հեշտ է։ Կանխելու համար հիշյալ շեղումները անհրաժեշտ է երկու բան՝ նախ իմանալ թե պատմական զարգացման տարբեր շրջաններում փիլիսոփայությունը, որպես գիտություն, ինչպես է հանդես եկել և, երկրորդ, հայ հասարակական կյանքի ու փիլիսոփայական մտքի պատմության փաստերին քաջատեղյակ լինել, չխեղաթյուրել այդպիսիք։ Մի ժամանակ Վ. Չալոյանը իր ուսումնասիրած վաղ միջնադարյան հեղինակներին մատերիալիստ էր հայտարարում։ Նա գրել է երկու մտածողների՝ Եզնիկի և Դ. Անհաղթի մասին։ Առաջինին նա 18-րդ դարի ֆրանսիական աթեիստ Պոլ Հոլբախից վեր է դասել, հայտարարելով՝ «Եթե համեմատելու լինենք մատերիայի սահմանումը Եզնիկի կողմից Պոլ Հոլբախի սահմանման հետ», որպես թե կարելի կլինի «մտածել որ ֆրանսիական աթեիստը մատերիայի իր սահմանումը արտագրել է հայ թեոլոգ Եզնիկի աշխատությունից»[1]։ Իսկ երկրորդի մասին գրել է, որպես թե Դ. Անհաղթը «Ընդունում է մարդկային մտածողությունից անկախ գոյություն ունեցող ռեալ իրականություն», այսինքն՝ մատերիալիստ է և ընդհանուր հասկացողությունների առաջացման ակունքների բացահայտման հարցում նրան համեմատել է Մարքսի հետ, հայտարարելով, որ «Կ. Մարքսը չի կրկնում Դավթին»[2]։ Այսօր նա հակառակ ծայրերն է անցել՝ վաղ միջնադարի հայ հեղինակների բացարձակ մեծամասնությանը ռեակցիայի է տալիս, հայտարարելով նրանց զուտ աստվածաբաններ։ Այս երկու շեղումներն էլ հավասարաչափ վտանգավոր են և անընդունելի գիտության համար և հայ փիլիսոփայության մտքի պատմությանը նվիրված մեր աշխատությունն ամբողջությամբ հիշյալ ծայրահեղությունների դեմ է ուղղված։

Մեր աշխատության՝ «Հայ փիլիսոփայական մտքի պատմություն» I հատորի մասին գրած իր գրախոսականում, Վ. Չալոյանը մեզ երկու կարգի մեղադրանք է ներկայացնում՝ առաջին, որ իր ուսումնասիրած հեղինակներին մենք մատերիալիստներ չենք հայտարարում, որ մենք «Եզնիկին ներկայացնում ենք որպես քրիստոնեական կրոնի ջատագով» և գտնում ենք, որ Դ. Անհաղթը «Փիլիսոփայության հիմնական հարցը իդեալիստորեն լուծելուց հետո իմացաբանության բնագավառում մատերիալիստ լինել չէր կարող» և, երկրորդ, որ իր չուսումնասիրած հեղինակների մոտ ևս մենք գրական բան ենք գտնում ու նրանց զուտ աստվածաբանների փոխարեն փիլիսոփա մտածողներ ենք համարում։ Այս երկու մեղադրանքներն էլ տրամաբանորեն բխում են Վ. Չալոյանի արտասովոր մեթոդից, այսինքն հարցերին միակողմանի, ոչ պատմական մոտեցում ունենալուց։

Պատմականությունը պահանջում է երևույթները վերցնել իրենց ներքին կապակցությունների և օրինաչափ զարգացման պրոցեսի մեջ։ Մեղանչելով գիտության այս պահանջի դեմ, դեռ 18-րդ դարի լուսավորիչները «միջին դարերը դիտում էին որպես պատմության ընթացքի պարզ ընդհատում... Ոչ ոք ուշադրություն չէր դարձնում առաջադիմության մեծ քայլերի վրա, որ արվել էին միջին դարերի ընթացքում...»[3]։ Չնայած, որ 100 տարուց ավել է ինչ խնդիրների այս կարգի լուսաբանումը փոխարինվել է դիալեկտիկական մատերիալիզմով, բայց և այնպես Վ. Չալոյանը շարունակում է հայ փիլիսոփայության մտքի պատմության հարցերը լուծել

———

[1]) Վ. Չալոյան, «5-րդ դարի հայ փիլիսոփա Եզնիկ Կողբացու ուսմունքի հարցի շուրջը», 1940 թ., էջ 32 (ռուս.)։

[2]) Վ. Կ. Չալոյան, «Դավիթ Անհաղթի փիլիսոփայությունը», 1946 թ.։

[3]) Մարքս և Էնգելս, հ. 14, էջ 647—648։



առաջնորդվելով իր դարն ապրած մեթոդով։ Նա կարծում է, որ եթե միջնադարի հեղինակներից մեկն ու մեկը հոգևորական է եղել և խոսել է աստծո մասին, որպես տիեզերքի արարչի, ապա ուրեմն նա ռեակցիոներ է, մաքուր աստվածաբան, որով հարկ չկա զբաղվել։ Այդ սկզբունքով ղեկավարվելով նա Ագաթանգեղոսին, Մ. Մաշտոցին, Դ. Հարքացուն, Հ. Մայրավանեցուն, Հ. Օձնեցուն, Մ. Վերծանողին, Հ. Մանդակունուն, Պ. Սյունեցուն և Ս. Սյունեցուն անվերապահորեն աստվածաբաններ է հայտարարում և այդ հիման վրա էլ հավատացնում է, որպես թե «Հ. Գաբրիելյանի աշխատության երեք քառորդից ավելին նվիրված է հայկական աստվածաբանությանը»։ Իրողությունն այն է, որ մեր գրքում ընդգրկված են վաղ միջնադարի մեր լավագույն մտածողները։

Ուստի իր հիշյալ հարցադրումով Վ. Չալոյանը փաստորեն սև գիծ է քաշում մեր ժողովրդի անցյալի վրա, գրչի մի հարվածով ռեակցիային տալով հայ կուլտուրայի այնպիսի խոշոր դեմքեր, ինչպիսին, օրինակ, Մեսրոպ Մաշտոցն է։

Բայց գուցե իրոք Վ. Չալոյանը ճիշտ է, իրոք որ վերոհիշյալ հեղինակներն աստվածաբաններ են և Հ. Գաբրիելյանի գրքի երեք քառորդն էլ աստվածաբանություն է։ Նախ փաստացի մի ուղղում. գիրքը 559 էջ է։ Վ. Չալոյանի կողմից աստվածաբանություն համարվող 1, 4, 5, 8 և 10 գլուխներից միայն 23 էջ է նվիրված դրանցում քննվող հեղինակների աստվածաբանական հարցադրումների քննադատական վերլուծմանը, մնացած էջերի վրա շարադրվում է նրանց ուսմունքը նյութի ու դրա շարժման, բնական երևույթների առաջացման և մարդու կյանքում երևույթների խաղացած դերի, հեթանոսական կրոնության խաղացած դերի, հեթանոսական կրոնի քննադատության, զգացության և բանականության դերի մասին իմացության մեջ, կամքի ազատության, էթիկայի, վաշխառուական կապիտալի դերի մասին և այլն։ Իհարկե յուրաքանչյուր մարդ կասի, որ 23-ը 559-ի երեք քառորդը կազմել չի կարող։ Բայց սա ի միջի այլոց, կարևորն այն է, որ Վ. Չալոյանը անվերապահորեն զուտ աստվածաբաններ է համարում և առաջարկում է հայ փիլիսոփայության պատմությունից դուրս հանել մեր ընտրած 14 հեղինակներից 9-ը, այսինքն երկու երրորդը։ Բայց սա Վ. Չալոյանի տեսակետն է 1957 թ., իսկ 1950 թ. նա և Վերծանողին, և Մանդակունուն, և Հարքացուն, և Սյունեցուն և Մայրավանեցուն հայ «մեծ փիլիսոփաներ» է համարել[1])։ 1954 թ. Հայաստանի Գիտությունների ակադեմիայի Փիլիսոփայության սեկտորին ներկայացրած հայ փիլիսոփայության պատմության իր նախագծում մտցրել էր նաև Մաշտոցի, Օձնեցու և մյուսների անունները։ Անշուշտ, բացառված չէ, որ տարիներ հետո Վ. Չալոյանը ծանոթանալով փաստական նյութի հետ հակառակ եզրակացության գար։ Բայց արդյո՞ք այդ այդպես է, որովհետև փաստերը նրա «նոր կոնցեպցիայի» ճիշտ հակառակն են ապացուցում։ Եվ իրոք։ Մինչև օրս Ագաթանգեղոսը հայտնի է եղել որպես պատմաբան և ոչ ոք նրան աստվածաբան չի համարել։ Մաշտոցին բոլորը գիտեն որպես հայ կուլտուրայի լավագույն ներկայացուցիչներից մեկի, իսկ Վ. Չալոյանը նրան ամբողջությամբ աստվածաբանությանն է տալիս։ Վերծանողի մասին Ասողիկը գրում է, որ նա Խորենացուց և Դ. Անհաղթից հետո ժամանակի երրորդ խոշոր փիլիսոփան է եղել։ Դավիթ Հարքացուն Վարդան Պատմիչը մեծ և անհաղթ փիլիսոփա է համարում։ Պետրոս Սյունեցուն Օրբելյանը Խորենացու աշակերտների շարքին է դասում, այսինքն այն մարդու, որին Վ. Չալոյանը իրավացիորեն աստվածաբան չի համարում։ Մայրավանեցին հալածվել է հայ եկեղեցու կողմից, մեղադրվելով հերետիկոսության մեջ։ Նման տեղեկություններ են տալիս նրա մասին Օրբելյանը, Գանձակեցին և Ասողիկը։ Նույն պատմիչները հաստատում են, որ Օձնեցին ևս ժամանակի «հռետորական ուսման ու փիլիսոփայական արվեստների գիտության մեջ հանճարեղ» մի անձնավորություն էր։ Ինչ վերաբերում է Ս. Սյունեցուն, ապա նրա մասին Օրբելյանի մոտ կարդում ենք, որ սա ուսումնասիրել էր «օտար գիտություններ», «հոռմական ու լատին գիր ու լեզուն» և «վարժվում էր... արվեստների մեջ փիլիսոփայական ոճի համապատասխան»։ Այս ամենի ճշտությունը մենք ցույց ենք տվել հիշյալ հեղինակների երկերի քննադատական վերլուծման հիման վրա։ Այս է իրողությունը։

Արդ՝ ո՞ւմ հավատալ՝ Վ. Չալոյանի՞ն, թե փաստերին։

Մեր աշխատության I հատորը ընդգրկում է հայ փիլիսոփայական մտքի այն շրջանը, երբ իշխողը քրիստոնեությունն էր և ժամանակակից ինտելիգենցիան՝ հոգևորականությունը։ Կարո՞ղ էին արդյոք այդ մարդիկ գիտությամբ զբաղվելով ամբողջությամբ վերանալ տիրապետող իդեոլոգիայից։ Ոչ միայն հայ, այլև աշխարհի բոլոր ժողովուրդների հիշյալ շրջանի տեսական մտքի պատմությունը այդ հարցին բացասական պատասխան է տալիս և մարքսիստները միշտ էլ այն կարծիքին են եղել, որ միջնադարի մասին գրելիս անհրաժեշտ է այդ շրջանի հեղինակների մոտ եղած գրականը ցույց տալով մեկտեղ, չմոռանալ, որ նրանք կրոնի հետևորդներ են եղել, ուստի աստծո տված նրանց սահմանման մեջ պետք է բացահայտել փիլիսոփայության հիմնա-

———

[1]) Տես Հայկական ՍՍՌ ԳԱ «Աշխատություններ», 1950 թ., հ. 1, էջ 116—117։

կան հարցի լուծումը նրանց կողմից։ Մենք այդպես էլ վարվել ենք։ Վ. Չալոյանը գտնում է, որ դա աստվածաբանություն է։ Բայց թող ների նա մեզ, եթե մենքասենք, որ դա ոչ թե մեր, այլ Էնգելսի տեսակետն է։ Էնգելսը գրում է. «Մտածողության և կեցության հարաբերության հարցը,— այն հարցը, թե ինչն է առաջնայինը՝ ոգի՞ն, թե բնությունը,— այս հարցը, որը, ասենք մեծ դեր է խաղացել նաև միջնադարյան սխոլաստիկայում, ի հեճուկս եկեղեցու ստացավ ավելի սուր ձև՝ արդյոք աստվա՞ծն է ստեղծել աշխարհին, թե նա գոյություն ունի սկզբից ևեթ» (Ընտ. երկ., հ. II, էջ 350, ռուս.)։

Մենք հետևել ենք Էնգելսի այս դրույթին և հայ հեղինակների ասածում տված սահմանումների մեջ բացահայտել ենք փիլիսոփայության հիմնական հարցի լուծումը նրանց կողմից, վեր ենք հանել նրանց և կրոնական իդեալիզմը, և այդ իդեալիզմից կատարած շեղումները, այլ կերպ ասած պատկերել ենք մատերիալիզմի և իդեալիզմի պայքարն իր առանձնահատկություններով վաղ միջնադարի Հայաստանում։ Ի դեպ ասած մենք առաջինը չենք, որ այդ կերպ ենք վարվել։ Շատ հեռուն չգնալու համար նշենք, որ 1940 թ. հրապարակված «Փիլիսոփայության պատմություն» I հատորի մեջ սովետական գիտնականները խոսելով միջնադարի մասին՝ ասած, սուրբ երրորդություն և այլ կրոնական հասկացողությունները մարքսիստական վերլուծման են ենթարկում, բացահայտելով դրանց մեջ փիլիսոփայության այս կամ այն հարցի լուծումը։

Իր տեսակետը հիմնավորելու համար Վ. Չալոյանը «օրինակներ» է բերում։ Այդ «օրինակներից» վերցնենք մեկը, որովհետև բոլորն էլ նույն անթույլատրելի ձևով են կառուցված։

Ցույց տալու համար, թե Ագաթանգեղոսը ինչ տեղ է տալիս ջրին մենք նրանից հետևյալ մեջբերումն ենք անում. «Ջրով պարուրված (սնված, գիրացած)՝ բոլոր բույսերը, ղեռները, գազանները, անասունները և թռչունները ջրերի դալար պահելու հետևանքով բխեցին (ծնվեցին) երկրից... Այս ձևով դալար դարձրեց ջրերի ծննդական արգանդը՝ մկրտությամբ, սրբեց ջրերով և նորոգեց հին, մաշված հողեղեն նյութը... և նրանից (ջրից) արարածների կազմությունը հորինեց, արարածների լինելու համար հրամայում էր հաստանալ։ Նաև երկնքի հաստատուն լինելը՝ հրեղեն հրեշտակների բնակության համար, որ երևում է մեզ ջրեղեն (երկնքի հաստատունությունը), հրամայեց հաստանալ» (էջ 113—114)։

Այս իրապես հետաքրքիր քաղվածքից Վ. Չալոյանը վերցրել է միայն չորս բառ՝ «հրեղեն հրեշտակների բնակության համար» և հայտարարում, որ սա «աստվածաբանական ուսմունք է»։ Նախ այդ բառերը դեռ նախադասություն չեն կազմում, որովհետև չկա բայը, չկա ենթական, դրանք ավելացված են Վ. Չալոյանի կողմից։ Երկրորդ, այս մեջբերումից պարզ երևում է, որ ըստ Ագաթանգեղոսի ամեն բան ջրից է առաջացել՝ անգամ «հրեղեն հրեշտակների բնակության համար» ստեղծված երկինքը։ Այլ կերպ ասած՝ այս դեպքում մենք գործ ունենք հենց այն փաստի հետ, երբ կրոնական դանավորումով, բայց ըստ էության տիեզերքում ջրի խաղացած դերի հարցն է դրվում, որոշակիորեն արտահայտելով Թալեսի ազդեցությունը։ Այս ձևով խեղաթյուրելով ինչպես սկզբնաղբյուրները, այնպես էլ մեր ասածները, Վ. Չալոյանը «օրինակներ» է հորինում ու դրանց հիման վրա հայ մտածողների երկու երրորդին հայտարարում մաքուր աստվածաբաններ։ Իսկ ո՞րտեղ մնաց գիտությունը։

Վ. Չալոյանը գիտությանը մոտենում է որպես տոնական վերնազգեստի, ու գործում ըստ հավուր պատշաճի։ Հոդվածի սկզբում նա հայտարարում է, որ Հ. Գաբրիելյանը իրավունք չունի գնոստիցիզմն ու ապոլոգետիկան մցնել փիլիսոփայության պատմության մեջ, որովհետև դրանք «քրիստոնեական գաղափարախոսություններ» են, իսկ վերջում տալով հայ փիլիսոփայության պատմության իր պարբերացումը, առանձնացնում է մի ամբողջ՝ «քրիստոնեական ուղղություն»։ Հետաքրքիր է, թե ինչի՞ մասին պիտի գրի Վ. Չալոյանը «քրիստոնեական ուղղությունը» շարադրելիս, եթե գնոստիցիզմը, ապոլոգետիկան ու նման ուսմունքները փիլիսոփայության պատմությունից հանվեն, որովհետև պետք է, որ նրան քաջ հայտնի լինի, որ չկա փիլիսոփայության պատմության նվիրված որևէ լուրջ մի աշխատություն, որը խոսելով միջնադարի մասին, անտեսի գնոստիցիզմն ու ապոլոգետիկան։

Մի՞թե սկզբունքայնություն է այն, որ նա մի կողմից մեզ աստվածաբանասիրության մեջ է մեղադրում, մյուս կողմից էլ պարսավում է այն բանի համար, որ մենք «չենք թափանցում դոգմատիկական վեճերի էության մեջ»։ Բայց չէ որ աստվածաբանությունը հենց դոգմատիկական վեճերն են։ Եթե մենք դրանց էության մեջ չենք ներթափանցել, ապա ուրեմն մեր գիրքը աստվածաբանության պատմություն չէ։ Եվ դա ճիշտ է։

Սխալ է կարծել, թե Վ. Չալոյանը աստվածաբանության հակառակորդ է, ընդհակառակը, նա բողոքում է հենց այն բանի դեմ, որ մենք աստվածաբանությունը զատել ենք փիլիսոփայությունից ու մերկացրել դրա ռեակցիոն էությունը, հիմնավորել, օրինակ, որ «լինելիության սկզբունքով առաջնորդվելով Քրիստոսի գոյությունն ապացուցել հնարավոր չէ», որ «սուրբ երրորդությունը ոչ եղել է և ոչ էլ կարող է լինել», որ «Մանդակունու մոտ իրական մոնիզմ չկա» և այլն։

Վ. Չալոյանի հարցադրումների հիմնական արատն այն է, որ դրանք ոչ թե փաստերի ուսումնասիրությունից են բխում, այլ պարզապես մտացածին սխեմաներ են։ Նա հնարել է մի «թեորիա», ըստ որի աշխարհի միասնության մարքսիստական ուսմունքից իբր թե հետևում է, որ կա «համընդհանուր կամ համաշխարհային իդեոլոգիա» և առաջարկում է հայ փիլիսոփայության պատմությունը ևս դնել այդ «միասնության» գդակի տակ։ Նա մոռանում է, որ աշխարհի միասնության մարքսիստական սկզբունքը վերաբերում է մատերիայի գոյավիճակների անխզելի կապին և կիրառելի չէ հասարակության նկատմամբ։ Հայտնի է պատմությունից, որ բոլոր երկրներն էլ իրենց զարգացման ինքնուրույն ուղիներն են ունեցել, այդ պատճառով էլ նրանց փիլիսոփայությունների պատմությունները պետք է շարադրվեն նրանց պատմության հետ սերտորեն կապելով։ Այդ վերաբերում է նաև հայ ժողովրդին։ Չընդունելով այդ, Վ. Չալոյանը դժգոհ է մեզանից այն բանի համար, որ մենք հայ փիլիսոփայական մտքի պատմությունը շարադրել ենք հայ ժողովրդի պատմության ֆոնի վրա, այլ կերպ ասած նա համաձայն չէ մարքսիստական հանրահայտ դրույթի հետ այն մասին, որ իդեոլոգիաների պատմությունը գիտական է միայն այն ժամանակ, երբ դա շարադրվում է հիմք ունենալով դրանք ծնող սոցիալ-պատմական միջավայրը։

Վ. Չալոյանը սխալ է համարում այն, որ մենք մինչ ֆեոդալական շրջանը Հայաստանում անվանել ենք անտիկ և հավատացնում է, որ դա գիտական աշխարհին անծանոթ մի բան է։ Ուրեմն նա այդ աշխարհի հետ վատ է ծանոթ, որովհետև, օրինակ, վրաց արդի գիտնական Մ. Կալանդարաշվիլին իր «Տրամաբանության պատմության ուրվագծերը Վրաստանում» աշխատության 1 գլ. վերնագրել է «Անտիկ շրջան»։ Մեր գրքում մինչ ֆեոդալական Հայաստանի անտեսակարգի մասին ասված է, որ «մանք ժխտում են ստրկատիրական ֆորմացիան Հայաստանում, իսկ Ս. Երեմյանը գտնում է, որ նման ֆորմացիա մեզանում եղել է և ավելացնում ենք՝ «Ստրուկների գոյությունն այդ շրջանի Հայաստանում փաստ է, իսկ հատուկ ֆորմացիայի գոյությունն ապացուցող բավականաչափ փաստեր չկան» (էջ 28)։

Այս նշանակում է, որ մինչ ֆեոդալական շրջանը մենք համարում ենք մի վիճակ, որը Մարքսը բնորոշում է որպես ասիական տիպի արտադրաեղանակ, որն ըստ էության համայնատիրությունից ֆեոդալիզմին անցնելու մի այնպիսի ձև է, երբ առաջինի ընդերքում առաջացած ստրկատիրությունը դեռ տիրապետող սիստեմ չդարձած երկիրը մտնում է ֆեոդալական շրջապտույտի մեջ։ «Մենք տեսանք,— ասված է մեր գրքում,— որ իրերի պատմական բերումով Հայաստանը կլասիկ ստրկատիրական երկիր չդարձավ, իսկ մեր թվականության 1-ին դարում սկսվեցին երկրում առաջանալ և արմատավորվել ֆեոդալական հարաբերությունները» (էջ 70)։ Արևելյան երկրների զարգացման այս յուրահատկությունը ապացուցելու համար մենք Էնգելսից համապատասխան մեջբերումներ ենք անում (էջ 28—29)։ Վ. Չալոյանը փաստերի նման կոնկրետ վերլուծմանը սովոր չէ, նա դատում է պատրաստի սխեմաներով և այն ինչ որ այդ սխեմաների մեջ չի տեղավորվում, նա հրաժարվում է ընդունել։ Բայց չէ որ սխեմատիզմը արատավոր մեթոդ է և գիտության հետ առնչություն չունի։

Խոսելով անտիկ շրջանի հայ փիլիսոփայական մտքի մեր շարադրության մասին Վ. Չալոյանը մերժում է մեր ենթադրությունը մատերիալիստական փիլիսոփայության գոյության մասին, իսկ իդեալիզմի վերաբերյալ՝ լռում է։

Ուրեմն Վ. Չալոյանը գտնում է, որ հայերը իդեալիստներ կարող էին լինել, իսկ մատերիալիստներ՝ ոչ։ Բայց ինչի՞ հիման վրա։ Նրա հիմնական առարկությունն այն է, որ «չի կարելի 7-րդ և 10-րդ դարերի գործիչների արտահայտություններով բնորոշել անտիկ շրջանի «փիլիսոփայության բնույթը»։ Նախ Ագաթանգեղոսը, Մաշտոցը և Եզնիկը 7-րդ կամ 10-րդ դարերի հեղինակներ չեն, իսկ մենք մեր ենթադրությունը հիմնում ենք ամենից առաջ դրանց և անտիկ շրջանի կուլտուրայի վերլուծման և ոչ թե Թովմա Արծրունու ասածների վրա։ Վերջինի վկայությունները բերում ենք որպես լրացուցիչ մատերիալ։ Երկրորդ, ինչո՞ւ չի կարելի մատերիալիզմի հակառակորդների ասածների հիման վրա բնորոշել դրանց ուսմունքի բնույթը։ Ինչո՞ւ պավլիկյանների և թոնդրակեցիների հակառակորդների ասածների հիման վրա կարելի է գաղափար կազմել վերջինների աշխարհայացքի մասին, իսկ նույնը մատերիալիզմի վերաբերյալ անելն արգելվում է։ Հնդիկ գիտնականներ Ս. Ռադխակրիշնանը, Ս. Չատրջին և Դ. Դատտան հին հնդկական մատերիալիզմը շարադրում են հենվելով մատերիալիզմի հակառակորդների ասածների վրա, որովհետև նրանք ևս մեզ նման և ոչ մի մատերիալիստի երկ չունեն իրենց տրամադրության տակ։ Արդ՝ ինչո՞ւ հնդիկ գիտնականների այդ քայլն արատավոր չէ, իսկ Հ. Գաբրիելյանի համար դա միանգամայն անթույլատրելի է։ Ո՞րն է հարցի գիտական լուծման չափանիշը։

վուրդները որպես թե ինքնուրույն ստեղծագործության անընդունակ են, նրանք կարող են միայն ընդօրինակել։ Ասել թե այն, ինչ որ դրական է Եզնիկի, Խորենացու, Շիրակացու, Հ. Իմաստասերի կամ Գր. Մագիստրոսի մոտ, վերցված է հույներից, նշանակում է ընդունել, որ այդ մտածողները միայն էպիգոններ են եղել չստեղծելով ոչինչ ինքնուրույն։ Իսկ դա ճիշտ չէ, հակասում է պատմական իրողությանը։

Արհամարհելով փաստը, Վ. Չալոյանը հավատացնում է որպես թե գոյություն է ունեցել «հելլենիստական Հայաստանի աշխարհայեցողություն»։ Մարքսիզմի հանդես գալուց հետո հայտնի դարձավ, որ դասակարգային հասարակության մեջ ամբողջ երկրներ կամ ժողովուրդներ մի միասնական աշխարհայեցողություն չեն ունեցել։ Իր հոդվածը Վ. Չալոյանը վերնագրում է հակառակ այդ սկզբունքի[1], բայց երբ անցնում է հարցի ըստ էության քննությանը, հարկադրված է լինում ընդունել, որ «հելլենիստական Հայաստանի աշխարհայեցողությունը» բաղկացած է եղել տիրողների և աշխատավորների աշխարհայեցողություններից, այսինքն ժխտել է ինքն իրեն։ Հելլենիստական աշխարհայեցողությունը՝ դա ստոիցիզմն է, էպիկուրիզմը, նեոպլատոնիզմը և առհասարակ հին հունական փիլիսոփայական ուղղությունները, հավատացնում է Վ. Չալոյանը, իսկ աշխատավորականը՝ դա կրոնական միֆալոգիան է, Արա Գեղեցիկի, Վահագնի և այդ կարգի առասպելաբանությունները։ Նա չի հասկանում, որ էպիկուրիզմն ու նեոպլատոնիզմը միևնույն սիստեմի մեջ տեղավորել հնարավոր չէ, որովհետև առաջինը աթեիզմ է քարոզում, իսկ երկրորդը՝ կրոնական միստիցիզմ, կամ լավագույն դեպքում, պլատոնյան իդեալիզմ։ Ինչ վերաբերում է «աշխատավորական ուղղությանը» փիլիսոփայության մեջ, ապա դա պարզապես Վ. Չալոյանի հնարամտությունն է, որովհետև նման ուղղություն պատմության մեջ չի եղել ու չկա։ Առասպելաբանությունը, որի վրա մատնանիշ է անում մեր հեղինակը, փիլիսոփայություն չէ։ Պատմության մեջ եղել են և կան մատերիալիզմ և իդեալիզմ, որոնք պատմական տարբեր շրջաններում տարբեր դասակարգերի են ծառայել։

Այսպիսով, Վ. Չալոյանի փորձը՝ գիտությունը հարստացնել ինչ որ նորամուծություններով, անհաջող դուրս եկավ։ Գիտությունը հենվում է փաստերի վրա և առաջնորդվում է մարքս-լենինյան թեորիայով։ Վ. Չալոյանը չի ուզում հաշվի նստել ոչ մեկի և ոչ մյուսի հետ։ Դեռ մեր ականավոր գիտնական հանգուցյալ Մանուկ Աբեղյանը բացահայտելով Եզնիկի հարցում Վ. Չալոյանի կատարած սխալների և խեղաթյուրումների պատճառները, գրել է. «Այսպիսի անհիմն կարծիքներ բաց թողնելը պատահում է... հին հայերենը լավ չիմանալուց և նյութը հիմնովին չուսումնասիրելուց» («Հայ հին գրականության պատմություն» հ. 1, էջ 127)։

ՀԵՆՐԻ ԳԱԲՐԻԵԼՅԱՆ

---

[1] «Սովետական գրականություն», 1957 թ. № 4։

Խմբագրության հասցեն՝
Երևան, ՀԿՊ Կենտկոմի շենք,
Հեռ. 2—03—18, 2—56—92, 2—04—66.
Адрес редакции: Ереван, здание
ЦК КП Армении. тел. 2—03—18,
2—56—92, 2—04—66.



ՎՖ 06847 Պատվեր 1510 Տիրաժ 6500

Տպ. 8 մամուլ, մամուլում 63.840 նիշ։ Ստորագրված է տպագրության 15/VI 1957 թ.։

ՀՍՍՌ Կուլտուրայի մինիստրության Գլխհրատի № 6 տպարան, Երևան, Լենինի պող. № 51։

ԳԻՆԸ 2 Ռ. 50 Կ.



# ԲԱՑՎԱԾ Է

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՊ ԿԵՆՏԿՈՄԻ

# „ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ"

ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳՐԻ

## ԲԱԺԱՆՈՐԴԱԳՐՈՒԹՅՈՒՆԸ

ԲԱԺԱՆՈՐԴԱԳՐՈՒԹՅԱՆ ՊԱՅՄԱՆՆԵՐՆ ԵՆ՝

Վեց ամիսը—15 ռուբլի, երեք ամիսը—7 ռ. 50 կ.։

**ԲԱԺԱՆՈՐԴԱԳՐՈՒԹՅՈՒՆՆ ԸՆԴՈՒՆՎՈՒՄ Է՝**

ԿԱՊԻ ԲՈԼՈՐ ԳՐԱՍԵՆՅԱԿՆԵՐՈՒՄ, ԲԱԺԱՆՄՈՒՆՔՆԵՐՈՒՄ, ԳՈՐԾԱԿԱԼՈՒԹՅՈՒՆՆԵՐՈՒՄ, «ՍՈՅՈՒԶՊԵՉԱՏ»-Ի ՔԱՂԱՔԱՅԻՆ ԲԱԺԱՆՄՈՒՆՔՆԵՐՈՒՄ, ԳՈՐԾԱՐԱՆՆԵՐՈՒՄ, ՖԱԲՐԻԿԱՆԵՐՈՒՄ, ՀԻՄՆԱՐԿՈՒԹՅՈՒՆՆԵՐՈՒՄ, ՈՒՍՈՒՄՆԱԿԱՆ ՀԱՍՏԱՏՈՒԹՅՈՒՆՆԵՐՈՒՄ, ԿՈԼՏՆՏԵՍՈՒԹՅՈՒՆՆԵՐՈՒՄ, ՍՈՎԽՈԶՆԵՐՈՒՄ, ՄՏ ԿԱՅԱՆՆԵՐՈՒՄ՝ ՄԱՄՈՒԼԻ ՀԱՍԱՐԱԿԱԿԱՆ ԼԻԱԶՈՐՆԵՐԻ ՄԻՋՈՑՈՎ։

«ՍՈՅՈՒԶՊԵՉԱՏ»